# ԲԱՆԿԱՅԻՆ ԻՐԱՎՈՒՆՔ

Ուսումնական ձեռնարկ բուհերի ուսանողության համար

ԵՐԵՎԱՆ 2008

*Հրատարակության է երաշխավորվել*
*Հայաստանի պետական տնտեսագիտական*
*համալսարանի ֆինանսական ֆակուլտետի խորհուրդը*

*Պատասխանատու խմբագիր*՝ պրոֆ. Կ.Հ. Աբգարյան

**Բանկային իրավունք,** ուս. ձեռնարկ, Եր.; 2008.- 270 էջ:

Ներկայացված են ՀՀ-ում գործող բանկային համակարգը և բանկային գործունեության իրավական կարգավորումը:

Նախատեսված է բուհերի իրավաբանական և տնտեսագիտական մասնագիտությունների ուսանողների համար:

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

*Ուսումնական ձեռնարկը նվիրում եմ եղբորս՝*
*Սևադա Գառնիկի Սուքիասյանի հիշատակին*

# Ն Ե Ր Ա Ծ ՈՒ Թ Յ ՈՒ Ն

Անկախության հռչակումից հետո ՀՀ-ում կատարված ամենամեծ փոփոխություններից մեկը շուկայական հարաբերություններին ներհատուկ բանկային համակարգի ձևավորումն էր, որի կայունությամբ և բանկային գործունեության արդյունավետության աստիճանով է պայմանավորված մեր հանրապետության տնտեսական ինքնիշխանությունը և անվտանգությունը ինչպես ներտնտեսական, այնպես էլ միջազգային տնտեսական համագործակցության փոխհարաբերություններում: Բովանդակային առումով հանրապետությունում ձևավորված բանկային համակարգը հանրապետության միասնական ֆինանսական համակարգի ամենակողմնորոշված օղակներից մեկն է, որի առանցքը գործող բանկային օրենսդրությունն է:

Բանկային օրենսդրության ձևավորումը և ներկա զարգացման տեմպերը հրամայաբար պահանջ են առաջադրում առաջին պլանում տեսնել բանկային իրավունքի այնպիսի ինստիտուտներ, ինչպիսիք են բանկային գործունեությունը, գործառույթները, գործառնությունները, ինչպես նաև բանկային կարգավորումը և պատասխանատվությունը, որոնց իրավական-տեսական մշակումները կհարստացնեն ոչ միայն բանկային իրավունքի տեսությունը, այլև կնպաստեն բանկային օրենսդրության կատարելագործմանը և բանկային ու վարկային համակարգի զարգացման կանխատեսումների ձևավորմանը:

Բանկային գործունեության իրավական կարգավորումը դեռևս չլուծված խնդիր է, որի ինչպես իրավական-տեսական, այնպես էլ գործնական խնդիրների, նրա սահմանների, ծավալների և հատկապես գործառույթների ու գործառնությունների, համակարգի վերին և ստորին օղակների իրավասության և լիազորությունների շրջանակների լուսաբանումը կնպաստեն ճիշտ հասկանալու և գնահատելու բանկային համակարգի էությունը, նրա դերը և նշանակությունը տվյալ հասարակության պետական անվտանգության ապահովման բնագավառում: Հիշատակված հարցադրումները վկայում են բանկային իրավունքի արդիականության և լուծումներ որոնելու հրատապության մասին, որոնցով պայմանավորված է բանկային իրավունքի, որպես համալիր իրավունքի ճյուղի գիտական ուսումնասիրության և վերլուծության անհրաժեշտությունը:

Ինչպես տնտեսագիտական, այնպես էլ իրավաբանական գրականության և գործող օրենսդրության մեջ հատկապես բանկային իրավունքին նվիրված սակավաթիվ ուսումնասիրություններում անհրաժեշտ խորությամբ չեն վերլուծվել բանկային գործունեության, նրա բովանդակության և հասկացության իրավական գնահատման հարցերը:

Այսօր բանկային իրավական ինստիտուտները կարգավորող հիմնական օրենքներից հանրապետությունում ընդունվել են «Բանկերի և բանկային գործունեության մասին», «Հայաստանի Հանրապետության կենտրոնական բանկի մասին», «Բանկային գաղտնիքի» և «Բանկերի և վարկային կազմակերպությունների սնանկության» մասին օրենքները և մի շարք ենթաօրենսդրական իրավական ակտեր:

Բանկային իրավունքի, որպես համալիր իրավունքի ճյուղի արդիական ընթացքը, առաջին հերթին պահանջում է բավարար լուծումներ գտնել բանկային համակարգի, նրա կազմակերպման և գործունեության սկզբունքների, գործառույթների, իրավասության և լիազորությունների բաշխման, գործունեության ձևերի և մեթոդների իրականացման, ինչպես նաև բանկային իրավահարաբերությունների մասնակիցների շահերի պաշտպանության և պատասխանատվության կիրառման հարաբերություններում:

Այսօր Հայաստանի Հանրապետության բանկային քաղաքականության հիմնական նպատակը ազգային դրամի կայունացումն է, սղաճի տեմպի նվազեցումը և վերահսկումը:

Սղաճի վերահսկման, ազգային դրամի կայունացման գործում կարևոր նշանակություն ունի Հայաստանի Հանրապետության Կենտրոնական բանկի կողմից տարվող դրամավարկային քաղաքականությունը: Այն ենթադրում է` դրամական էմիսիայի ծավալնե-

րի օրենսդրական սահմանում, Կենտրոնական բանկի կողմից բյուջեի դեֆիցիտի ծածկման համար վարկերի սահմանափակումների հաստատում Հայաստանի Հանրապետության ԱԺ կողմից, առևտրային բանկերի գործունեության կարգավորման և վերահսկման համակարգի մշակում, արժութային կարգավորման և վերահսկման կարգի ձևավորում:

Դրամավարկային քաղաքականությունն առաջին հերթին պետք է արտացոլի բանկային համակարգի և ֆինանսական շուկայի զարգացման հեռանկարները: Այդ նպատակով անհրաժեշտ է ձևավորել երկմակարդակ ֆինանսական համակարգ՝ ժամանակակից բանկերով, ինվեստիցիոն ֆոնդերով, ապահովագրական ընկերություններով, ստեղծել դրանց գործունեությունը կարգավորող իրավական հիմքեր:

Ազգային դրամի կայունացմանը, դրամաշրջանառության կարգավորմանը, տնտեսական աճին նպաստելու կարևորագույն խնդիրը վարկային շուկայի ընդլայնման բնագավառում ճիշտ քաղաքականություն վարելն է:

Դրամաշրջանառության կարգավորման քաղաքականության կարևորագույն նպատակն է անկանխիկ դրամի շրջանառության ոլորտների և տեսակարար կշռի էական ընդլայնումը: Այդ նպատակին անհրաժեշտ է հասնել կանխիկ շրջանառության վրա դրված սահմանափակումները վերացնելու միջոցառումների համալիր իրականացմամբ:

Բանկերի գործունեությունն ըստ էության իրավական միջնորդություն է ֆինանսական գործառնությունների ոլորտում: Հայաստանի ժամանակակից բանկային համակարգը և դրա կառուցվածքային ստորաբաժանումները հստակորեն արտացոլում են պետության և շուկայական հարաբերությունների վիճակը, որոնց համակարգում գործում են այդ բանկերը: Բանկերի իրավասության շրջանակը ամրագրված է բանկային օրենսդրությամբ: Ընդ որում, իրավական կարգավորման առարկան հենց բանկերի կամ էլ դրանց հաճախորդների գործունեությունն է: Բանկային հիմնարկների գործունեության նկատմամբ իրավաստեղծ մարմինների ուշադրությունը



բացատրվում է այն մեծ դերով, որ հասարակության կյանքում խաղում են ֆինանսներն ու բանկերը: Ընդհանուր առմամբ բանկային գործի յուրահատկությունը և դրա նշանակությունը երկրի էկոնոմիկայի և քաղաքացիների համար ենթադրում են այնպիսի իրավական կարգավորում, որին բնորոշ է հստակությունն ու բանկային գործունեության մշակվածությունը:

Բանկն այսօր դարձել է կենսական անհրաժեշտություն, այն կարևորագույն գործիքներից մեկը, որն ապահովում է ապրանք-դրամական հարաբերությունների բնական ընդգրկումը էկոնոմիկայի կառավարման, նրա արդյունավետության բարձրացման մեխանիզմի մեջ:

Բանկային գործունեության օբյեկտները, ինչպես վկայում է բանկային իրավունքը, հանդիսանում են վարկային մարմինները, առևտրային բանկերի մասնաճյուղերը և ներկայացուցչությունները, ինչպես նաև օտարերկրյա բանկերի ներկայացուցչությունները, որոնք իրականացնում են բանկային գործունեություն:

Բանկային գործունեության իրավական կարգավորման գիտական վերլուծությունների անհրաժեշտությունը պայմանավորված է նաև բանկային համակարգի կայունության ապահովմանն ուղղված գիտական նոր միջոցառումների մշակմամբ, գործունեության ձևերի և մեթոդների կատարելագործմամբ, ինչպես նաև ավանդատուների և վարկառուների շահերի պաշտպանության ժամանակակից ձևերի ու եղանակների կատարելագործմամբ: Ավելին, գործող օրենսդրությամբ հստակեցված չէ, թե որ ավանդատուների, վարկառուների մասին է խոսվում: Միայն կարելի է ենթադրել, որ խոսքը առաջին հերթին վերաբերում է ավանդատու և վարկառու ֆիզիկական անձանց, որոնք օգտվում են վարկային մարմինների ծառայություններից:

Բանկային իրավունքի, նրա առանձին ինստիտուտների իրավական, գիտական հետազոտման անհրաժեշտությունը թելադրում է, որ իրավական կարգավորման ճանապարհով լուծումներ տրվեն հատկապես իրավաբանական անձանց, որպես բանկային ամենատարբեր իրավական հարաբերությունների մասնակիցների շահերի

պաշտպանությանը: Բանկային իրավահարաբերություններում իրավաբանական անձանց շահերի պաշտպանության բարդությունը առաջին հերթին կապված է բանկային օրենսդրության անկատարության հետ: Այսպես, եթե ֆիզիկական անձինք բանկային մարմինների ծառայություններից կարող են օգտվել միայն սեփական նախաձեռնությամբ և ցանկությամբ, ապա նույնը չի կարելի ասել իրավաբանական անձանց մասին, քանի որ օրենքի ուժով նրանք պարտավորված են իրենց դրամական միջոցները պահել բանկային մարմիններում, նրանց միջոցով բացել անկանխիկ այս կամ այն հաշվի ձևը և հաշվարկներ կատարել միայն բանկային մարմինների միջոցով:

«Բանկերի և բանկային գործունեության մասին» Հայաստանի Հանրապետության օրենքը հանրապետության բանկային համակարգի մեջ է ներառում Հայաստանի Հանրապետության տարածքում գործող բանկերը, նրանց մասնաճյուղերը, ներկայացուցչությունները, ինչպես նաև օտարերկրյա բանկերի՝ Հայաստանի Հանրապետության տարածքում գործող մասնաճյուղերն ու ներկայացուցչությունները:

Հատկապես կարևոր նշանակություն ունի այն փաստը, որ Հայաստանի բանկերն իրենց գործունեության մեջ անկախ են օրենսդիր և գործադիր մարմիններից: Բանկերի ինքնուրույնությունը փաստվում է նաև այն հանգամանքով, որ նրանք պատասխանատու չեն Հայաստանի Հանրապետության կառավարության պարտավորությունների համար և, հակառակը, կառավարությունը պատասխանատվություն չի կրում բանկերի պարտավորությունների համար, բացի այն դեպքերից, երբ բանկը կամ կառավարությունը դրանք ստանձնել է:

Կարծում ենք, որ բանկային իրավունքի, որպես համալիր իրավունքի ճյուղի հասկացությունը, նրա առարկան, մեթոդը և այդ ճյուղի նորմերով կարգավորվող հասարակական հարաբերությունների բովանդակությունը, իրավական առանձնահատկությունները, ինչպես նաև այդ իրավունքի համակարգում, հատկապես քաղաքացիական, ֆինանսական և այլ միջճյուղային բնույթի համալիր իրա-



վական հարաբերությունների էությունը ճիշտ և անսխալ ըմբռնելու և արժեքավորելու համար ուսանողներին կարող է օգնել «Բանկային իրավունք» առարկայի մայրենի լեզվով շարադրված ներկա ուսումնական ձեռնարկը:

Բնական է, որ ուսումնական ձեռնարկում հնարավորության սահմաններում արտացոլվել են նաև արդի տնտեսագիտության այդ բնագավառի նվաճումները, որոնք ուսանողներին հնարավորություն կընձեռնեն բանկային իրավական կոնկրետ ինստիտուտների գործնական հետազոտության հիման վրա կողմնորոշվելու քննարկվող երևույթների տնտեսական-հիմնարար հարցերում և ըմբռնելու տնտեսական հարաբերությունների վերափոխման գործընթացի իրավական կողմերը:

Գիտության բնագավառում ՀՀ կառավարության քաղաքականությունը նպատակամղված է գիտելիքների բոլոր ճյուղերի դինամիկ առաջադիմության համար նպաստավոր պայմանների ստեղծմանը, առավել հեռանկարային ուղղություններում կադրերի, նյութական ու ֆինանսական ռեսուրսների համակենտրոնացմանը, որոնք կոչված են իրականացնելու տնտեսական ու սոցիալական նախատեսված նպատակները, հասարակության հոգևոր զարգացումը, ապահովելու երկրի հուսալի պաշտպանությունը:

Ներկա ժամանակաշրջանում, երբ մեր երկրի սոցիալ-տնտեսական կյանքում արմատավորվում են սեփականության նոր ձևերը և շուկայական հարաբերությունները, երբ դրվում է գիտության՝ անմիջական արտադրողական ուժի վերածվելու խնդիրը, բանկային հարաբերությունների ուսումնասիրության և հասարակության կարիքների համար դրա կիրառման բնագավառում մեծանում է նաև բանկային իրավունքի գիտության դերը, որի ուսումնասիրության առարկան վարկավորման, վճարահաշվարկային, արժութային և արտարժութային վերաբաշխման գործընթացում ծավալվող հասարակական հարաբերություններն են և դրանք կարգավորող բանկային իրավական նորմերը, որոնք ընդհանրապես հասարակության կարգավորման կարևոր ոլորտներից են:

«Բանկային իրավունք» առարկայի ներկա ուսումնական ձեռնարկում արտացոլված սկզբունքների, խնդիրների ու նպատակների ուսումնասիրությունը, կարծում ենք, ուսանողներին հնարավորություն կտա ճիշտ ընբռնելու անկախ զարգացման ուղի բռնած ինքնիշխան Հայաստանի Հանրապետության բանկային քաղաքականության էությունը և կնպաստի իրենց պրակտիկ գործունեության մեջ հմտորեն կիրառելու այն:

Բանկային իրավունքի ինչպես տեսական, այնպես էլ գործնական պարապմունքների ընթացքում ձեռք բերված գիտելիքները կնպաստեն արագ կողմնորոշվելու բանկային օրենսդրության աղբյուրների բարդ համակարգում և ճիշտ կիրառելու դրանք ակտերի պահանջները, հասարակական կյանքի այս կամ այն ոլորտում ծագած վարկային, հաշվարկային, արժութային հիմնախնդիրները լուծելիս կամ դրա հետ կապվող հարցեր քննարկելիս:

Բանկային իրավունք առարկայի ուսումնական ձեռնարկում տեղ գտած բանկային իրավական ինստիտուտները վերլուծելիս անհրաժեշտություն կառաջանա նաև ծանոթանալու հաշվապահական, հարկային և ֆինանսական բնույթի որոշ փաստաթղթերի ձևերի հետ, որոնք հիմնականում վերաբերում են կազմակերպությունների, նախարարությունների և գերատեսչությունների եկամուտների և ծախսերի ֆինանսական պլաններին, դրանց նախահաշիվներին, շահույթին և կատարվող մասնահանումների տեսակներին, ինչպես նաև գործող հարկերի հաշվարկման և վճարման կարգին: Այդպիսի փաստաթղթերի հետ գործնական ծանոթությունը կարող է նպաստել հետագայում բանկային, հարկային, նաև դատա-քննչական մարմիններում աշխատանքի անցած ուսանողներին արագ և ճիշտ կողմնորոշվելու բանկային իրավական բնույթի հարաբերությունները սահմանազատելիս, ինչպես նաև այդ բնույթի քրեական գործեր քննելիս:

Ուսումնական ձեռնարկի շարադրման հիմքում դրված են արտասահմանյան երկրներում դասավանդվող բանկային իրավունքի գործող պետական ծրագրերը, բանկային իրավունքի վերաբերյալ



օրենսդրական ակտերի ժողովածուները, ինչպես նաև արտերկրներում հրատարակված բանկային իրավունքի դասագրքերը:

Բանկային իրավունք առարկայի ուսումնական ձեռնարկի նպատակն է ուսանողներին կողմնորոշելու բանկային իրավունքի՝ որպես իրավունքի համալիր ճյուղի ուսումնասիրության առարկայի առանձնահատկությունների հարցում: Ձեռնարկի հիմնական խնդիրն է՝ օգնել ուսանողներին, որպեսզի ճիշտ ընկալվեն և լուսաբանվեն բանկային օրենքների ֆինանսական և քաղաքացիաիրավական առանձնահատկությունները, օրենքներ, որոնցով պայմանավորված են գների կայունությունը, ապրանքադրամական հարաբերությունների էությունը, պետական բյուջեն, որոնց արտահայտման ձևերն են հանդիսանում վարկը, հաշվարկները: Վերլուծել ՀՀ Կենտրոնական բանկի բանկային գործունեության ընթացքում բանկային իշխանության կազմակերպման ձևերը և մեթոդները: Ցույց տալ պետության և նրա մարմինների՝ բանկային գործընթացում դրսևորվող իրավական հարաբերությունների առանձնահատկությունները և լուսաբանել այդ հարաբերությունները կարգավորող բանկային իրավական նորմերի բովանդակությունը: Ուսումնասիրել բանկային գործունեությանը բնորոշ վերահսկողության գործառույթները, որոնք իրենց դրսևորումն են ստանում բանկային իրավական ցանկացած ինստիտուտի նորմերի կիրառման ընթացքում:

Ելնելով դասընթացի ուսումնասիրության և իրավունքի ճյուղի կարգավորման առարկայի առանձնահատկություններից՝ էական նշանակություն ունեցող որոշ թեմաներ միավորված են հանրաճանաչ իրավական ինստիտուտների մեջ, իհարկե, բոլոր դեպքերում նման ընդհանրացումների հիմքում ընկած է կարգավորման առարկայի և կարգավորման մեթոդի ընդհանրությունը:

«Բանկային իրավունք» առարկայի ձեռնարկը ՀՀ իրավագիտության բնագավառում մայրենի լեզվով ուսումնական նյութեր նախապատրաստելու առաջին փորձերից մեկն է:

## ԳԼՈՒԽ I

# ԲԱՆԿԱՅԻՆ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅԱՆ ԻՐԱՎԱԿԱՆ ԿԱՐԳԱՎՈՐՈՒՄԸ ՀՀ -ՈՒՄ

## § 1. Բանկային գործունեություն տնտեսական և իրավական հիմքերը

Հայաստանի Հանրապետության «Բանկային իրավունք» առարկայի ուսումնասիրության առանցքը լայն առումով կազմում են վարկային և բանկային մարմինների գործունեության տնտեսական և իրավական հիմքերը, որոնց տեսական և գործնական կիրառման ծավալները վկայում են բանկային և վարկային մարմինների գրաված տեղը պետական մարմինների համակարգում:

ՀՀ դրամական հարաբերությունները ընդգրկում են համախառն ներքին արդյունքի շրջապտույտը տնտեսության բոլոր ճյուղերում: Առանց ֆինանսների և բանկային գործունեության անհնար է ապրանքադրամական հարաբերությունների համակարգում պատկերացնել ազգային եկամտի ձևավորում, նրա բաշխում և օգտագործում: Ֆինանսները պատկանում են ապրանքային արտադրության տնտեսական կատեգորիաների թվին և կպահպանվեն այնքան ժամանակ, որքան գոյություն կունենան ապրանքադրամական հարաբերությունները, որոնց անմիջական իրացումը ապահովվում է բանկային գործունեությամբ:

ՀՀ ֆինանսները տնտեսական դրամական հարաբերություններ են, որոնք երևան են գալիս պետության և նրա վարչաքաղաքական տարածքների դրամական միջոցների կենտրոնացված և ապակենտրոնացված ֆոնդերի ստեղծման, բաշխման և օգտագործման գործընթացում, ապահովում են համախառն ներքին արդյունքի, այդ թվում նաև ազգային եկամտի ծրագրված բաշխումը և վերաբաշխումը հանրապետության ընդլայնված վերարտադրության կարիքները և հասարակության աճող պահանջմունքները բավարարելու համար:



Հանրապետության ֆինանսներ հասկացության սահմանումից պարզ երևում է, որ ֆինանսները առաջին հերթին դրամական հարաբերություններ են, որոնց շրջանառությունը կազմակերպվում է բանկային գործունեության միջոցով:

ՀՀ ներկա շուկայական հարաբերություններում բանկային գործունեության անմիջական օբյեկտներն են դրամը և գույքը, որոնց շուրջ ձևավորվող հարաբերությունները ընդգրկում են տնտեսավարող ամենատարբեր սուբյեկտների: Գործնականում բանկային գործունեությունը արտացոլող հարաբերություններ ծագում են.

1) բանկերի և պետական սեփականության վրա հիմնված նախարարությունների, միավորումների և կազմակերպությունների միջև,
2) բանկերի և կոլեկտիվ սեփականության վրա հիմնված տնտեսական ընկերությունների ու ընկերակցությունների միջև,
3) բանկերի և այլ բնույթի կազմակերպությունների ու դրանց վերադաս մարմինների միջև,
4) բանկերի և գյուղացիական տնտեսությունների, կոոպերատիվ կազմակերպությունների միջև,
5) բանկերի և բնակչության միջև:

Հիշատակված դրամական հարաբերություններն արտահայտում են բանկային գործառույթների իրականացման եղանակով համախառն ներքին արդյունքի, նրա մի մասի, հատկապես զուտ եկամտի բաշխման և վերաբաշխման գործընթացը:

Ֆինանսները պետության արտադրական հարաբերությունների համակարգի տարրերից են, որ դրսևորվում են ոչ թե հասարակության նյութական և աշխատանքային ռեսուրսներում, այլ այսպես կոչված ֆինանսական ռեսուրսներում, որոնք արտահայտվում են դրամի միջոցով, որի կայունության ապահովման երաշխիքը հանրապետությունում ձևավորված բանկային համակարգն է: Ֆինանսները չի կարելի շփոթել դրամ հասկացության հետ: Ֆինանսները դրամ չեն, բայց արտահայտվում են դրամի միջոցով և շրջանառվում հանրապետության Կենտրոնական բանկի անմիջական հսկողությամբ: Դրանք հիմնականում տնտեսական հարաբերություններ

են, որոնք հանդես են գալիս որպես դրամական հարաբերություն-
ների համակարգ, որոնց գործնական շրջանառությունը կազմա-
կերպվում է բանկային մարմինների միջոցով: Ֆինանսները դրամա-
կան հարաբերությունների առանձնացված մասն են, որ ամբողջա-
կան համակարգում զատվում են իրեն յուրահատուկ հատկանիշնե-
րով: Դրամական հարաբերությունները ընդունում են դրսևորման մի
առանձին ձև. նրանք դառնում են բանկային հարաբերություններ:

Այսօր ավելի քան երբևէ արժույթի անհրաժեշտությունն ու էու-
թյունը բնորոշվում են երեք փոխադարձաբար միահյուսված նախա-
դրյալներով` ապրանքադրամական հարաբերություններով, տնտե-
սական օրենքներով և պետության խնդիրներով ու գործառույթնե-
րով: Արժույթի էությունը երևան է գալիս նրա կատարած կոնկրետ
գործառույթում, այն ոլորտում, որտեղ գործում են, այն մեթոդներով
ու ձևով, որոնցով իրագործվում են բանկային գործառնությունները:

Պետության և նրա լիազոր բանկային մարմինների վարկահաշ-
վարկային գործունեության հիմնական բովանդակությունը հանգում
է հասարակության և նրա յուրաքանչյուր անդամի նյութական ու հո-
գևոր պահանջների առավել լրիվ բավարարմանը, որը պայմանա-
վորում է քաղաքացիների նյութական, սոցիալական, կուլտուր-կեն-
ցաղային այնպիսի պահանջների ապահովումը, ինչպիսիք են լու-
սավորության, առողջապահության, գիտության ու մշակույթի ոլորտ-
ների ծառայությունները:

Հասարակության կարիքների բավարարման աղբյուրը համա-
խառն ներքին արդյունքն է, որ ստեղծվում է նյութական արտադրու-
թյան ոլորտում: Անընդմեջ արտադրության ապահովման համար
հասարակական արդյունքի ողջ հանրագումարից առաջին հերթին
որոշակի մաս առանձնացվում է արտադրության գործընթացում
սպառվող արտադրության միջոցների փոխհատուցման, ռեզերվա-
յին, տնտեսական և հասարակական ֆոնդերի ստեղծման համար:

Հասարակությանը անհրաժեշտ դրամական ֆոնդերի ստեղծման
անմիջական աղբյուրը ազգային եկամուտն է: ՀՀ բանկային քաղա-
քականության ոգուն համապատասխան` ազգային եկամուտը բան-
կային իրավական նորմերի ակտիվ աջակցության և կարգավորման



միջոցով սպասարկում է հասարակական սպառման և կուտակման
ֆոնդերի ժամանակին ձևավորմանը, որոնց տոկոսային հարաբե-
րությունը այսօր վկայում է բանկային մարմինների աշխատանքի
արդյունավետության մասին:

Ներկայումս ապրանքային արտադրության գոյության և արժեքի
օրենքի գործողության շնորհիվ ազգային եկամտի բաշխումը հան-
րապետությունում կատարվում է ոչ թե բնամթերքի, այլ դրամական
ձևով: Հետևաբար, պետական շինարարության ընթացքում պետու-
թյան բանկային գործունեությունը նպաստում է լիովին ապահովե-
լու ապրանքադրամական հարաբերություններում ապրանքի գների
կայունությունը, որը հատուկ է շուկայական հարաբերություններին
անցման ժամանակաշրջանում: Ընդ որում էկոնոմիկայի ղեկավա-
րումը իրականացվում է տնտեսական, սոցիալական զարգացման և
դրամավարկային քաղաքականության պետական ծրագրերի հի-
ման վրա` ակտիվորեն օգտագործելով վարկային և վճարահաշ-
վարկային լծակներն ու խթանները:

Հանրապետության նախագահի, Ազգային ժողովի և կառավա-
րության ընդունած բանկային իրավանորմերի ուսումնասիրությու-
նից դժվար չէ կռահել, որ այսօր հանրապետության վարկային մար-
մինների և հատկապես Կենտրոնական բանկի գործունեության հիմ-
նական բովանդակությունը հանգում է ՀՀ բանկային համակարգի
կայունության, իրացվելիության, վճարունակության և բնականոն
գործունեության համար անհրաժեշտ պայմանների ապահովմանը[1]:

Բանկային գործունեության տնտեսական և իրավական հիմքերը
նորմերով ամրագրված այնպիսի վարքագծի կանոններ են, որոնց
օգնությամբ բանկերը հավաքում կամ օգտագործման են տրամադ-
րում դրամական միջոցները: Բանկային գործունեության իրավա-
կան հիմքերի շարքին կարելի է դասել պայմանագրերի հիման վրա
վարկավորման և վճարահաշվարկային գործունեության իրականա-
ցումը, որի շնորհիվ բանկերը ըստ անհրաժեշտության վարկեր են
տրամադրում քաղաքացիներին և տնտեսավարող սուբյեկտներին:

[1] Տե'ս, ՀՀ օրենքը «ՀՀ Կենտրոնական բանկի մասին», հոդ. 5, ՀՀ գործող օրենքների ժողովածու (1992-1999 թթ.), գիրք Ա., Ե, 1999:

Շուկայական տնտեսության պայմաններում ՀՀ վարկային ու բանկային համակարգը գտնվում են համեմատաբար կայուն վիճակում, ինչը նպաստում է տնտեսության աստիճանական զարգացման գործընթացներին: Դա նշանակում է, որ քաղաքացիական հասարակության կառուցման նախասկզբնական փուլում երկրի տնտեսությունը չի կարող զարգանալ առանց կայուն վարկային ու բանկային համակարգի: Տնտեսության բոլոր ճյուղերը, տնտեսավարող սուբյեկտները ուղղակի կամ անուղղակի կապված են վարկային ու բանկային համակարգի հետ, որոնց գործունեությունը փոխադարձաբար կապված են միմյանց հետ և պայմանավորում են մեկը մյուսին:

Այսօր աստիճանաբար վերակառուցվում է ՀՀ բանկային համակարգը, որը կարևոր գործոն է հանդիսանում շուկայական տնտեսության անցումային փուլում՝ հաղթահարելու քաղաքական, տնտեսական և ֆինանսական որոշակի դժվարություններ: Հայաստանի Հանրապետության Գերագույն խորհուրդը 1990թ. օգոստոսի 25-ին հռչակագիր ընդունեց Հայաստանի անկախության մասին, որի 8-րդ հոդվածում ասված է. «Հայաստանի Հանրապետությունը սեփականության բազմակացութաձևության հիման վրա որոշում է իր տնտեսավարման սկզբունքները և կարգը, հիմնում սեփական դրամ, ազգային բանկ, ֆինանսավարկային համակարգ, հարկային և մաքսային ծառայություններ»: Հռչակագրի դրույթներին համապատասխան՝ աստիճանաբար վերակառուցվում է վարկային ու բանկային համակարգը, որոնք կարևոր նշանակություն ունեն տնտեսության աստիճանական զարգացման գործում:

ՀՀ վարկային ու բանկային համակարգի զարգացման, կատարելագործման, ինչպես նաև դրանք միջազգային չափանիշներին աստիճանաբար հասցնելու նպատակով ՀՀ Ազգային ժողովը ընդունեց մի շարք օրենքներ՝ «Բանկերի ու բանկային գործունեության մասին», «Կենտրոնական բանկի մասին», «Բանկային գաղտնիքի մասին», ինչպես նաև «Բանկերի սնանկության մասին»[1]:

[1] Տե՛ս, ՀՀ գործող օրենքների հավաքածու, 1995-1999թթ. գիրք Ա., Ե., 1999, ՀՀ գործող օրենքների հավաքածու, 2001, գիրք Դ., Ե., 2001:



ՀՀ բանկերը ընդունված համապատասխան օրենքների և դրանցից բխող ենթաօրենսդրական ակտերի հիման վրա իրականացնում են վարկային, վճարահաշվարկային, ավանդների ներգրավման և տարբեր տեսակի գործառնություններ: Հատկանշական է, որ ՀՀ բանկային համակարգում անցումային փուլում ոչ միայն հաղթահարվում են բազմաթիվ դժվարություններ, այլ արմատական փոփոխություններ են կատարվում բարձրացնելու բանկային գործունեության տարբեր տեսակի գործառնությունների իրականացման արդյունավետությունը: Բանկի կանոնադրական և ընդհանուր կապիտալի ձևավորումը, բնականաբար, պայմանավորված է բանկային համակարգի արդյունավետ գործունեությամբ:

ՀՀ վարկային ու բանկային համակարգերը փախադարձաբար կապված են միմյանց և պայմանավորում են մեկը մյուսին: Իհարկե, վարկային համակարգի շրջանակները ավելի լայն են և ընդգրկում են նաև բանկային համակարգը: Վարկային համակարգը դիտարկվում է որպես վարկի տեսակների, վարկի ձևերի, վարկավորման պայմանների, վարկահաշվարկային փոխհարաբերությունների, վարկավորման մեթոդների և վարկային հիմնարկությունների ամբողջություն: Վերջինիս մեջ մտնում են բանկերը, ինչպես նաև ոչ բանկային կազմակերպությունները՝ գրավատները, ապահովագրական ընկերությունները, փոխօգնության դրամարկղերը, վարկային կազմակերպությունները և այլն:

Վարկը տնտեսական կատեգորիա է, դրամական փոխատվություն, որի միջոցով բանկի և իր հաճախորդի միջև ծագում են ֆինանսավարկային որոշակի իրավահարաբերություններ: Բանկային վարկի օբյեկտիվ անհրաժեշտությունը պայմանավորված է նաև ապրանքադրամական հարաբերություններով:

ՀՀ բանկային համակարգը ներառում է ՀՀ կենտրոնական բանկը և ՀՀ տարածքում գործող բոլոր տեսակի բանկերը, այդ թվում՝ օտարերկրյա բանկերի մասնաճյուղերը: Հատկանշական է, որ 2004թ. հունվարի մեկի դրությամբ ՀՀ տարածքում գործող 21 բանկերից մեկը պետական բանկ է՝ Կենտրոնական բանկը, որը փաստորեն հանդիսանում է բանկերի բանկը, բանկային համակարգը

համակարգող և ուղղություն տվող բանկը: Կենտրոնական բանկի կանոնադիր կապիտալը պետական սեփականություն է, որը չի կարող գրավադրվել կամ վաճառվել:

2006թ. տարվա սկզբի դրությամբ ՀՀ բանկային համակարգը բաղկացած է 20 առևտրային բանկերից` 230 մասնաճյուղերով: Նշված 19 առևտրային բանկերը գտնվում են ընդհանուր վերահսկողության դաշտում, իսկ մեկ բանկ` հատուկ վերահսկողության դաշտում[1]:

Հանրապետության վարկային օրենսդրությամբ ամրապնդված քաղաքականության ոգուն համապատասխան` ՀՀ բանկերը դասակարգվում են ըստ կանոնադրական կապիտալի պատկանելության և կազմակերպաիրավական բնույթի` բաժնետիրական, փայատիրական, կոոպերատիվ և օտարերկրյա բանկեր[2]: Առևտրային բանկերը փաստորեն մասնավոր կապիտալի վրա հիմնված բանկեր են, որոնց բաժնետերերը կամ փայատերերը սեփականաշնորհված իրավաբանական անձինք են, անհատ ձեռներեցներ կամ քաղաքացիներ:

Բանկերն իրենց գործունեությունն իրականացնում են ինչպես համապատասխան օրենքներին, այնպես էլ Կենտրոնական բանկի խորհրդի կողմից ընդունված իրավական ակտերին համապատասխան:

Բանկային գործունեության ամենածավալուն ոլորտը վարկավորումն է: Շուկայական տնտեսության պայմաններում բանկերը պատասխանատվություն են կրում վարկավորման կազմակերպման, վարկի արդյունավետության բարձրացման ու հաճախորդների ներգրավման, նրանց խրախուսման համար, ինչպես նաև անհրաժեշտության դեպքում կարող են կիրառել հարկադրանքը:

Բանկային վարկը` որպես ֆինանսաիրավական հարաբերությունների համակարգ, իրականացնում է տարբեր սուբյեկտների, կազմակերպությունների և քաղաքացիների ժամանակավոր ազատ-

[1] Տե'ս, Բանբեր ՀՀ Կենտրոնական բանկի, 3-րդ եռամսյակ, 2006, էջ 33:
[2] Տե'ս մանրամասն, ՀՀ օրենքը «Բանկերի և բանկային գործունեության մասին»` ընդունված ԱԺ կողմից 1996թ. հունիսի 30-ին, հոդ. 12, 17 (ՀՀ գործող օրենքների ժողովածու, 1995-1999թթ., գիրք Ա, Ե, 1999):



ված դրամական միջոցների կենտրոնացում` ավանդների ու դեպոզիտների ձևով, և դրանց օգտագործում` վերադարձնելու, վճարելու, ժամկետային ու ապրանքանյութական արժեքներով ապահովելու սկզբունքներով:

Վարկային պաշարները ձևավորվում են նաև բաժնետոմսերի և արժեթղթերի իրացումից ստացված գումարների, բանկերի կողմից կատարվող սպասարկման աշխատանքների, ինչպես նաև խորհրդատվական ծառայությունների և այլ աղբյուրների հաշվին:

Վարկն ունի իրավական որոշակի գործառույթներ, որոնք ամրագրվել են վարկային իրավահարաբերությունները կարգավորող իրավանորմերում: Դրանք են` ներգրավման և վերաբաշխման գործառույթը, թղթադրամի փոխարինումը վարկային փողերով և վարկային գործառնություններով (անկանխիկ հաշվարկներով), ինչպես նաև կապիտալի կենտրոնացման ու համակենտրոնացման և շուկայական տնտեսության կարգավորման գործառույթը, որոնք ուղղակի կամ անուղղակի նպաստում են շուկայական տնտեսության զարգացմանը: Վարկի նշված գործառույթները փոխադարձաբար կապված են միմյանց և պայմանավորում են մեկը մյուսին:

Շուկայական տնտեսության պայմաններում բանկերի և նրանց վարկառուների միջև ձևավորվում են ֆինանսական ու վճարահաշվարկային որոշակի իրավահարաբերություններ: Դա նշանակում է, որ բանկային վարկը կարևոր դեր է խաղում տնտեսավարող սուբյեկտների արտադրության ու շրջանառության գործընթացների արդյունավետ կազմակերպման գործում:

Վարկային ու բանկային համակարգի զարգացումն ու կատարելագործումը կարգավորող բանկային իրավական ակտերը սահմանում են ժամանակակից պայմաններին համապատասխան դարձնել վարկավորման պայմանները, վարկի տեսակները, վարկի ձևերը, վարկավորման մեթոդները, տոկոսադրույքները, ինչպես նաև բանկային պատասխանատվության ձևերը, որոնք նպատակ ունեն բարձրացնելու վարկային գումարների օգտագործման արդյունավետությունը:

Այսօր բանկային գործունեության իրավական կարգավորմանն ուղղված օրենսդրությունը արտացոլում է հանրապետության վարկային քաղաքականության առանձնահատկությունները, ըստ որի շերտավորված են բանկային վարկը կարգավորող իրավական նորմերը, որոնց համաձայն գործող վարկերը կարելի է դասակարգել հետևյալ ձևով՝

1. Ըստ սուբյեկտների (իրավաբանական և ֆիզիկական անձինք):
2. Ըստ ժամկետների (կարճաժամկետ, միջին տևողության և երկարաժամկետ):
3. Ըստ ձևերի՝ միջբանկային, առևտրային, սպառողական, լիզինգային, ինչպես նաև՝ հիպոթեկային և միջազգային վարկեր, որոնք միմյանցից տարբերվում են վարկի սուբյեկտների, օբյեկտների, նաև տոկոսադրույքների, տոկոսի վճարման աղբյուրների և այլ ձևերով:
4. Ըստ մարման կամ վերադարձման ժամկետների՝ ժամկետային վարկ, վերադարձման ժամկետը երկարացված կամ վերաձևակերպված վարկ, տարկետված վարկ և ժամկետանց վարկ[1]:

ՀՀ բանկային գործունեության տնտեսական հիմքի առանձնահատկությունն այն է, որ բանկերը հանդես են գալիս վարկատուի և վարկառուի դերում:

Բանկերի ու վարկառուների միջև իրականացվող վարկահաշվարկային իրավահարաբերությունները կարգավորվում են բանկային օրենսդրությամբ և նրանց միջև կնքված վարկային պայմանագրերով: Ըստ վարկային պայմանագրի՝ վարկի տեսակները, վարկաչափը, վարկավորման կարգը /կանխիկ կամ փոխանցումով/, տոկոսադրույքները, վերադարձման ժամկետները տարբեր են, որոնք հիմնականում պայմանավորված են բանկի տեսակով և նրա հաճախորդների ֆինանսական վիճակով:

[1] Տե՛ս մանրամասն, ՀՀ քաղաքացիական օրենսգիրք՝ ընդունված ԱԺ կողմից 1998թ. մայիսի 5-ին, Ե., 1998, գլ. 47, հոդ. 887-891:



Վարկային պայմանագիրը այն իրավական հիմքն է, որի միջոցով իրականացվում և կարգավորվում են վարկային գործունեությունից ծագող փոխհարաբերությունները վարկատուների և վարկառուների միջև: Բանկային պայմանագիրը նպաստում է առևտրահաշվարկային հարաբերությունների արդյունավետ կազմակերպմանը, ինչպես նաև՝ արտադրության ու շրջանառության արդյունավետության բարձրացմանը: Վարկային պայմանագիրը վարկատուի և վարկառուի միջև վստահելի և փոխշահավետ հարաբերություններ հաստատելու հնարավորություններ է ստեղծում:

Բանկային գործունեության տնտեսական հիմքի մյուս առանձնահատկությունն այն է, որ բանկերն իրականացնում են նաև օրենսդրությամբ սահմանված տոկոսային քաղաքականություն,[1] որը պայմանավորված է տոկոսադրույքների շերտավորման չափանիշներով, դրանց հաշվարկման ու գանձման կարգով, նաև վարկային շուկայի, փոխառու միջոցների առաջարկի ու պահանջարկի հարաբերակցությամբ, դրամի արժեզրկման և այլ պայմաններով:

Գործող օրենսդրությունը սահմանում է, որ վարկի հատկացման և վերադարձման ժամկետի համար տոկոսագումար չի հաշվարկվում:

Բանկերի մասին օրենսդրության համաձայն՝ ՀՀ տարածքում գործող բանկերը վարկեր են տրամադրում ոչ միայն դրամով, այլ նաև արտարժույթով:

ՀՀ բանկային համակարգի գործունեության տնտեսական հիմքը այն է, որ «ՀՀ կենտրոնական բանկի մասին» օրենքին համապատասխան՝ Կենտրոնական բանկին՝ որպես իրավաբանական անձի, տրված են որոշակի իրավունքներ ու պարտականություններ: Հատկանշական է, որ Կենտրոնական բանկը ազատված է բոլոր տեսակի հարկերից ու տուրքերից: Կենտրոնական բանկին է վերապահված շրջանառության մեջ կանխիկ դրամ բաց թողնելու և այն շրջանառությունից հանելու իրավունքը, դրամաշրջանառության կազմակերպումը, դրամավարկային քաղաքականության մշակումն ու իրականացումը, բանկային համակարգի համակարգումը և զարգա-

[1] Տե՛ս ՀՀ քաղաքացիական օրենսգիրք, հոդ. 887, Ե., 1998:

ցումը, վճարահաշվարկային հարաբերությունների կազմակերպումը, տնտեսական նորմատիվների չափանիշների որոշումը, դրանց պահպանումը, բանկերի կանոնադրական կապիտալի և ընդհանուր կապիտալի նվազագույն չափի սահմանումը, շահույթի բաշխման և օգտագործման չափի որոշումը, նաև բանկային համակարգին վերաբերող այլ խնդիրներ[1]:

Ընդունված օրենքների և օրենսդրական ակտերի հիման վրա Կենտրոնական բանկի խորհուրդը որոշում է հաշվարկների կազմակերպման կարգը, վճարման հերթականությունը, նաև դրամական փաստաթղթերի տեսակները:

Կենտրոնական բանկը դրամավարկային քաղաքականության իրականացման ժամանակ առանձնահատուկ ուշադրություն է դարձնում պետական բյուջեի հետ առնչվող խնդիրներին, միջազգային ֆինանսական խոշոր կազմակերպությունների հետ կատարվող տարբեր տեսակի գործառնություններին:

ՀՀ կառավարությունը և Կենտրոնական բանկը միմյանց պարտավորությունների համար պատասխանատվություն չեն կրում, եթե դրանք նախօրոք չեն ստանձնել: Բայց Կենտրոնական բանկը համագործակցում և մասնակցում է կառավարության տնտեսական ծրագրերի մշակմանը և աջակցում է նրա կողմից իրականացվող միջոցառումներին:

Կենտրոնական բանկն ապահովում է թղթադրամի և մետաղադրամի պահուստային ֆոնդերի ստեղծումը, սահմանում դրամի հաշվարկային փոխարժեքը օտարերկրյա պետությունների դրամական միավորի՝ հատկապես ԱՄՆ դոլարի և եվրոյի նկատմամբ, իրականացնում ավանդային, դեպոզիտային և տարբեր տեսակի վճարահաշվարկային գործառնություններ, շրջանառության մեջ դնում պետական պարտատոմսերը: Բանկերին և նրանց բաժանմունքներին արտոնագիր տալու, դրանք անվավեր ճանաչելու իրավունքը վերապահվում է Կենտրոնական բանկին:

[1] Տե՛ս ՀՀ օրենքը «Հայաստանի Հանրապետության Կենտրոնական բանկի մասին»՝ ընդունված ԱԺ կողմից 1996թ. հունիսի 30-ին, հոդ. 5, 6 (ՀՀ գործող օրենքների ժողովածու, 1995-1999թթ., գիրք Ա, Ե, 1999):



ՀՀ կենտրոնական բանկը, որպես «բանկերի բանկ», որոշակի փոխհարաբերություններ է պահպանում առևտրային բանկերի հետ: Կարգավորում է բանկային համակարգը, օգնում և վերահսկողություն է սահմանում տնտեսական նորմատիվների պահպանման նկատմամբ:

Կենտրոնական բանկի խորհրդի կողմից ընդունված իրավական ակտերը և որոշումները, որոնք առաջին հերթին վերաբերում են վարկային և բանկային համակարգին, պարտադիր են ինչպես բոլոր բանկերի, այնպես էլ նրանց վարկառուների համար:

Կենտրոնական բանկը, բացի համապատասխան օրենքներով իրեն վերապահված իրավունքներից, ունի նաև որոշակի պարտավորություններ: Դրանցից հատկանշական են՝ միջազգային հաշվարկների արդյունավետ կազմակերպումը, բանկային համակարգի հսկողության ու օգնության իրականացումը, վարկառուների շահերի պաշտպանությունը, առևտրային բանկերի նկատմամբ վերահսկողության իրականացումը:

Կենտրոնական բանկը ունի տարածքային դրամարկղային կենտրոններ, որոնք հիմնականում զբաղվում են դրամաշրջանառության կազմակերպման հարցերով՝ ներգրավում և շրջանառության մեջ են դնում դրամանիշները:

Առևտրային բանկերի հետ թղթակցային հարաբերություններ իրականացնելու նպատակով Կենտրոնական բանկը համապատասխան պայմանագիր է կնքում, որտեղ նախատեսվում են հաշվի սպասարկման կարգը, կողմերի իրավունքներն ու պարտականությունները և ֆինանսական փոխհարաբերությունները:

Բանկային գործունեության իրավական կարգավորմանն ուղղված օրենսդրական և ենթաօրենսդրական ակտերում ամրապնդված է նաև դեպոզիտային պայմանագրեր կնքելու քաղաքականությունը, համաձայն որի դեպոզիտային պայմանագիր է կնքվում բանկերի և նրանց ավանդատուների միջև, որի հիման վրա ավանդատուի համար բացվում է դեպոզիտային հաշիվ, որտեղ նշվում են գումարի մուծման-փոխանցման կարգը, ժամկետը, տոկոսադրույքը, կողմերի իրավունքներն ու պարտականությունները:

## §2. ՀՀ բանկային գործունեության հասկացությունը

Պետության տնտեսական հարաբերությունների համալիրում իր ուրույն տեղն ունի բանկային գործունեության իրավական կարգավորումը: Հանրապետությունում բանկային գործունեության իրավական կարգավորման հիմնահարցը նպատակահարմար է լուսաբանել «կարգավորում» հասկացության սահմանումների պարզաբանմամբ:

Բանկային գործունեության նպատակը դրամի հավաքումն է, և ժամանակավորապես ավելցուկ փողը պահանջ ունեցողներին տրամադրելը, որը գործնականում դարձել է մեծաքիվ հաճախորդների հետ յուրաքանչյուր օր վերարտադրվող բանկային իրավական հարաբերությունների պատճառ, որով էլ պայմանավորված է ձեռնարկատիրական գործունեության այս տեսակի իրավական կարգավորման անհրաժեշտությունը:

Հանրապետությունը ներկայումս ձեռնամուխ է եղել շուկայական տնտեսական համակարգի ստեղծմանը, որի առանցքային հարցերից է ձեռնարկատիրական գործունեության արմատավորումը և իրավական կարգավորման օրենսդրական դաշտի ձևավորումը: Այս առումով տեսական և գործնական լուրջ հետաքրքրություն է ներկայացնում բանկային գործունեության հասկացության պարզաբանումը: Բանկային օրենսդրությամբ ամրագրված է, որ Հայաստանի Հանրապետության տարածքում բանկերի գործունեությունը կարգավորվում է` «Հայաստանի Հանրապետության կենտրոնական բանկի մասին», «Բանկերի սնանկության մասին», «Բանկային գաղտնիքի մասին», «Հայաստանի Հանրապետության օրենքներով, այլ օրենքներով, իսկ դրանցով նախատեսված դեպքերում և սահմաններում` Կենտրոնական բանկի նորմատիվ ակտերով»:[1] Հարկ է նկատել, որ բանկային գործունեությունը կարգավորող հիշյալ իրավական ակտերում է սահմանված կարգավորման հասկացությունը:

[1] Տե'ս «Բանկերի և բանկային գործունեության մասին» ՀՀ օրենքը: Ընդունված է 30.06.1996: Հոդվ. 2, կետ 2:



Միաժամանակ պետք է նկատել, որ կարգավորումը իրավագիտության մեջ միշտ որոշակի բնույթ ունի և մեծամասամբ օգտագործվում է «գործունեություն» բառի ուղեկցությամբ, որով կոնկրետացվում է հետաքրքրություն ներկայացնող բնագավառը:

Բանկային համակարգի և բանկային գործունեության առանձին ինստիտուտներին վերաբերող օրինաչափությունները և հիմնախնդիրները գտնվում են իրավագետների ուշադրության կենտրոնում, որոնց իրավական կարգավորման հիմնահարցերի լուսաբանման ուղղությամբ, սակայն այսօր աննշան գործ է արված[1]: Այնուամենայնիվ պետք է նկատել, որ բանկային և առևտրային գործունեության կարգավորումը մեզանում առաջին հերթին կրում է գործնական ու կիրառական, քան տեսական բնույթ: Բանկային օրենսդրության բնագավառում իրավական սահմանումներ են ստացել այնպիսի զուտ բանկային հասկացություններ, ինչպիսիք են «բանկային գործունեությունը», «բանկային ավանդը» և այլն: Միևնույն ժամանակ օրենսդրորեն տրված են տնտեսագիտության այնպիսի հիմնարար հասկացությունների սահմանումները, ինչպիսիք են «կանոնադրական կապիտալը»[2], «վարկը»[3], «արժեթղթերը»[4], «փոխառությունը»[5], «ապահովագրությունը»:[6] Իրավական ակտերը ուսումնասիրելիս դժվար չէ նկատել, որ հիշատակված բանկային կատեգորիաների օրենսդրական ամրագրումները հստակեցնում են տնտեսագիտության և իրավունքի փոխհարաբերության սահմանները, երբ տնտեսական և ոչ տնտեսական շահերից բխող և դրանց առնչվող երևույթները ստանում են իրավական ձևակերպումներ: Պատկերը, կարծում ենք, ամբողջանում է, երբ այդ տնտեսական հասկացություններն օրենսդրորեն սահմանելիս հաճախակի կիրառվում է «կարգավորում» արտահայտությունը:

[1] Տե'ս Ã.À. Òîñóíÿí, À.Þ. Âèêóëèí, À.Ì. Ýêìàëÿí, Áàíêîâñêîå ïðàâî Ðîññèéñêîé ôåäåðàöèè, îáøàÿ ÷àñòü, Ì., “Þðèñò”, 1999, էջ 220-230.
[2] Տե'ս ՀՀ Քաղաքացիական օրենսգիրք: Ընդունված է 28.07.1998թ. հոդվ. 77, կետ 1:
[3] Տե'ս նույն տեղում, գլուխ 47:
[4] Տե'ս նույն տեղում, գլուխ 8:
[5] Տե'ս ՀՀ Քաղաքացիական օրենսգիրք: Ընդունված է 28.07.1998թ. գլուխ 46:
[6] Տե'ս նույն տեղում, գլուխ 54:

Այսպիսով, եթե բանկային օրենսդրությունն ուղղակիորեն նշում է բանկային գործունեության իրավական կարգավորման անհրաժեշտությունը, ապա նույնը չի կարելի ասել «բանկային գործունեության» և «կարգավորման» հասկացությունների սահմանման վերաբերյալ: Նշվածի նպատակահարմարության հիմնավորումը, թերևս, կարող է նպաստել բանկային գործունեության դաշտի այն ընդգրկումների ի հայտ բերմանը, որոնց շրջանակներում հիմնավորված կարող են լինել բանկային գործունեությունը մի կողմից՝ որպես ձեռնարկատիրական գործունեության տարատեսակ, և որպես բանկերի ընդհանուր գործունեության մակրոտնտեսական ամփոփում՝ մյուս կողմից[1]:

Իրավունքի մի շարք ճյուղերի օրենսդրության ուսումնասիրության հիման վրա կարելի է նկատել, որ բանկային գործունեությունը իրավական կարգավորում է ստանում՝ ունենալով ձեռնարկատիրական գործունեության ընդհանուր օրենսդրական դաշտ, որի շրջանակներում ստեղծվել և գործում է բանկային օրենսդրությունը: Հատկանշական է, որ առևտրային կազմակերպությունների գործունեության նպատակը շահույթի ստացումն է, սակայն գործող օրենսդրության մեջ բացակայում է այս հասկացության սահմանումը:[2] Շահույթի, այն էլ հարկվող շահույթի շուրջ կան ձևակերպումներ, օրինակ՝ «Հարկվող շահույթը հարկատուի համախառն եկամտի և սույն օրենքով սահմանված եկամուտների դրական տարբերությունն է»[3]: Այստեղ շահույթը փաստեն ընդամենը որոշակի տարբերություն է նշանակում, ընդ որում եկամուտների և ծախսերի բաղադրիչների առնչությամբ:

Ձեռնարկատիրական և բանկային գործունեության իրավական կարգավորման ընդգրկումները և վերջիններիս համադրումը թույլ է տալիս եզրակացնել, որ եթե ձեռնարկատիրական գործունեություն արտահայտվում է առևտրային կազմակերպությունների ստեղծման, գործունեության և գործունեությունը դադարեցնելու պայմանների ու դեպքերի իրավական կարգավորմամբ, որի կարևորությունը ձեռնարկատիրական գործունեությունը կազմակերպելիս դժվար է թերագնահատել, ապա բանկային գործունեությունը ունի այն կարևոր առանձնահատկությունը, որ երկրի Կենտրոնական բանկը իրավասու է լուծելու բանկային համակարգի տնտեսական բնույթի այնպիսի խնդիրներ, ինչպիսիք են բանկերի կայունությունը, իրացվելիությունը, վճարունակությունը: Նշված խնդրի լուծումը ենթադրում է արդեն ոչ միայն գործունեության իրավական, այլև տնտեսական կարգավորում, այդ թվում հիմնական տնտեսական նորմատիվների միջոցով:

«Բանկային գործունեության» և դրա «իրավական կարգավորման» առանձնացումը բանկային օրենսդրության մեջ, ինչպես պնդումեն որոշ իրավագետներ բավարար հիմնավորված չեն և ամբողջությամբ չեն արտացոլում հիշյալ հասկացությունների իրավական բովանդակությունը[1]: Քանի որ «կարգավորում» հասկացության օրենսդրական լուսաբանումները սպառիչ բացատրություններ չունեն, կարծում ենք՝ օգտակար կարող են լինել բացատրական բառարաններում նշված բառի մեկնաբանությունները: Ըստ ժամանակակից բացատրական բառարանների «կարգավորման» հիմքում ընկած է «կարգ», «կանոն» իմաստը: Բերված մեկնաբանություններում «կարգավորում» բառի իրավական բաղադրիչը «հավասարեցումն» է, «չափի բերումը»: Եթե «կարգ» հասկացությունը պայմանականորեն ընդունենք որպես նպատակահարմարություն, որը կարող է տարածվել տնտեսական կենսագործունեության վրա, ապա իրավական «կարգավորումը» պետք է ընկալել որպես նպատակին հասնելու համապատասխան վարքագծի իրավական կանոններ, իսկ բանկային գործունեության այս կամ այն բնագավառում տնտեսական նպատակներն ամրագրող բանկային իրավական ակտերի համակցություն:

---

[1] Տե'ս մանրամասն, Îëåéíèê Î.Ì., Îñíîâû áàíêîâñêîãî ïðàâà, Ì., 1999, էջ 38-40:
[2] Տե'ս մանրամասն, Ã.À. Òîñóíÿí, À.Þ. Âèêóëèí, À.Ì. Ýêìàëÿí, Áàíêîâñêîå ïðàâî Ðîññèéñêîé ôåäåðàöèè, նշ.աշխ. էջ 222-233:
[3] Տե'ս «Շահութահարկի մասին» ՀՀ օրենքը: Ընդունված է 30.09.1997թ. հոդվ. 6:



[1] Տե'ս մանրամասն, Áàíêîâñêîå ïðàâî Ðîññèéñêîé ôåäåðàöèè, îáùàÿ ÷àñòü, էջ 220-222:

Բանկային գործունեության «իրավական կարգավորումը» կարելի է սահմանել որպես տնտեսական կոնկրետ գործունեության շրջանակներում նախապես տրված նպատակների ձեռք բերմանը ուղղված անհրաժեշտ կանոնների, ծրագրերի և դրանց իրագործման գործիքների ամբողջություն:

Իրավական առումով վերը նշվածն ամփոփելով՝ կարելի է ասել, որ բանկային գործունեությունը բանկային իրավական ակտերով սահմանված շահույթ ստանալու, ավանդների ներգրավման և դրանց օգտագործման գործառույթ է, որը կախված է Կենտրոնական բանկի տնտեսական կարգավորումից և բանկի այդ կարգավորման շրջանակներում համապատասխան գործունեությունից:



# ԳԼՈՒԽ II

# ԲԱՆԿԱՅԻՆ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅՈՒՆ ԻՐԱԿԱՆԱՑՆՈՂ ՄԱՐՄԻՆՆԵՐԻ ՀԱՄԱԿԱՐԳԸ ԵՎ ԻՐԱՎԱԿԱՆ ՎԻՃԱԿԻ ԱՌԱՆՁՆԱՀԱՏԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

## §1. Կենտրոնական բանկի կարգավիճակի իրավական առանձնահատկությունները

Բանկային օրենսդրության և համակարգի մարմինների կարգավիճակի զարգացման միտումների ճիշտ ընկալման տեսանկյունից Հայաստանի Հանրապետության սոցիալ-տնտեսական իրավիճակի վերլուծությունը կարևոր է և մեծ ազդեցություն է թողնում ֆինանսական քաղաքականության, այդ թվում՝ ֆինանսավարկային համակարգի զարգացման ռազմավարական կողմնորոշիչների ընտրության, բանկային վարկի սահմանման, դրամական էմիսիայի չափերի որոշման, վճարա-հաշվարկային գործունեության այս կամ այն տեսակի աշխուժացման, ավանդների ներգրավման և մի շարք այլ ուղղությունների վրա:

Հայաստանի Հանրապետության ֆինանսական քաղաքականության հիմնական նպատակը ազգային դրամի կայունացումն է, ինֆլյացիայի տեմպի նվազեցումը և վերահսկումը: Այսօր բյուջետային քաղաքականությունը ուղղված է հիմնականում Հայաստանի Հանրապետության պետական բյուջեի դեֆիցիտի կրճատմանը:

Ինֆլյացիայի վերահսկման և ազգային դրամի կայունացման գործում կարևոր նշանակություն ունի Հայաստանի Հանրապետության Կենտրոնական բանկի կողմից տարվող դրամավարկային քաղաքականությունը: Այն ենթադրում է դրամական էմիսիայի ծավալների օրենսդրական սահմանում, Կենտրոնական բանկի կողմից բյուջեի դեֆիցիտի ծածկման համար վարկերի սահմանափակումների հաստատում Հայաստանի Հանրապետության ԱԺ կողմից, առևտրային բանկերի գործունեության կարգավորման և վերահսկման

համակարգի մշակում, արժութային կարգավորման և վերահսկման կարգի ձևավորում:

Դրամավարկային քաղաքականությունն առաջին հերթին պետք է արտացոլի բանկային համակարգի և ֆինանսական շուկայի զարգացման հեռանկարները: Այդ նպատակով անհրաժեշտ է ձևավորել երկմակարդակ ֆինանսական համակարգ՝ ժամանակակից բանկերով, ինվեստիցիոն ֆոնդերով, ապահովագրական ընկերություններով, ստեղծել դրանց գործունեությունը կարգավորող իրավական հիմքեր:

Ազգային դրամի կայունացմանը, տնտեսական աճին աջակցելու գործում կարևորագույն խնդիր է վարկային շուկայի ընդլայնման ճիշտ քաղաքականություն վարելը: Այդ նպատակով կարծում ենք անհրաժեշտ է կտրուկ կրճատել անժամկետ դեպոզիտների տեսակարար կշիռը, պարտադիր նվազագույն տոկոսադրույքները, խստացնել անժամկետ դեպոզիտների նկատմամբ պահանջները:

Դրամաշրջանառության կարգավորման քաղաքականության կարևորագույն նպատակն է անկանխիկ դրամի շրջանառության ոլորտների և տեսակարար կշռի էական ընդլայնումը: Այդ նպատակին անհրաժեշտ է հասնել կանխիկ շրջանառության վրա դրված սահմանափակումները վերացնելու միջոցառումների համալիր իրականացմամբ: Նշված ֆինանսական և բանկային քաղաքականության ուղղությունները տրամաբանորեն պետք է դրված լինեն օրենսդրական հիմքերի վրա, սակայն մինչև այժմ բավարար քանակությամբ բանկային գործունեությունը կարգավորող հիմնարար իրավական ակտեր չեն ընդունվել:

Բանկերի գործունեությունն ըստ էության իրավական միջնորդություն է ֆինանսական գործառնությունների ոլորտում: Հայաստանի ժամանակակից բանկային համակարգը և դրա կառուցվածքային ստորաբաժանումները հստակորեն արտացոլում են պետության և շուկայական հարաբերությունների վիճակը, որոնց համակարգում գործում են այդ բանկերը: Բանկերի իրավասության շրջանակը ամրագրված է բանկային օրենսդրությամբ: Ընդ որում, իրավական կարգավորման առարկան հենց բանկերի կամ էլ դրանց հաճա-



խորդների գործունեությունն է: Բանկային հիմնարկների գործունեության նկատմամբ իրավաստեղծ մարմինների ուշադրությունը բացատրվում է այն մեծ դերով, որ հասարակության կյանքում խաղում են ֆինանսներն ու բանկերը: Ընդհանուր առմամբ բանկային գործի յուրահատկությունը և դրա նշանակությունը երկրի էկոնոմիկայի և քաղաքացիների համար ենթադրում են այնպիսի իրավական կարգավորում, որին բնորոշ է հստակությունն ու բանկային գործունեության մշակվածությունը: Բանկը այսօր դարձել է կենսական անհրաժեշտություն, այն կարևորագույն գործիքներից մեկը, որը ապահովում է ապրանքա-դրամական հարաբերությունների օրգանական ընդգրկումը էկոնոմիկայի կառավարման, նրա արդյունավետության բարձրացման մեխանիզմի մեջ:

Ժամանակակից տնտեսության մեջ որակական նոր բնույթ է ստացել բանկային գործունեությունը: «Բանկերի և բանկային գործունեության մասին» օրենքի 4-րդ հոդվածում սահմանված է բանկային գործունեության հասկացությունը, որտեղ ասված է, որ բանկային գործունեություն է համարվում ավանդների ընդունելը կամ ավանդներ ընդունելու առաջարկությամբ հանդես գալը ավանդ ընդունողի անունից, ռիսկով դրանք տեղաբաշխելը՝ վարկեր, ավանդներ, դեպոզիտներ տրամադրելու և ներդրումներ կատարելու միջոցով: Առանց Կենտրոնական բանկի կողմից տրված բանկային գործունեության լիցենզիայի ՀՀ տարածքում բանկային գործունեություն իրականացնելն արգելվում է:

«Բանկերի և բանկային գործունեության մասին» Հայաստանի Հանրապետության օրենքը հանրապետության բանկային համակարգի մեջ ներառում է Հայաստանի Հանրապետության Կենտրոնական բանկը, Հայաստանի Հանրապետության տարածքում գործող բանկերը, դրանց մասնաճյուղերը, ներկայացուցչությունները, գործառնական գրասենյակները, նաև օտարերկրյա բանկերի՝ Հայաստանի Հանրապետության տարածքում գործող մասնաճյուղերն ու ներկայացուցչությունները:

Հանրապետությունում թույլատրվում է ստեղծել բանկային միություններ և ասոցացիաներ, սակայն դրանք չպետք է օգտագործվեն

շուկայում մենատիրական դիրք գրավելու և բանկային գործում մրցակցությունը սահմանափակելու նպատակով: Այս մարմինները ըստ էության շահույթ ստանալու նպատակ չեն հետապնդում և օրենքը արգելում է նրանց բանկային գործունեություն իրականացնել:

Հանրապետությունում բավականին պարզեցվել է բանկերի բացման կարգը, իսկ կանոնադրական հիմնադրամի ձևավորմանը կարող են մասնակցել և՛ Հայաստանի Հանրապետության, և՛ օտարերկրյա իրավաբանական ու ֆիզիկական անձինք: Բանկի կառավարման գործում որևէ հիմնադրի, բաժնետիրոջ կամ մասնակցի մենաշնորհը բացառվում է:

Բանկի կանոնադրական հիմնադրամում նշանակալից մասնակցություն ձեռք բերելու սահմանափակումները ամրագրված են «Բանկերի և բանկային գործունեության մասին» օրենքի 18- րդ հոդվածում, որտեղ ասվում է, որ անձը կամ փոխկապված անձինք, որոնք մեկ կամ մի քանի գործարքների հետևանքով բանկի կանոնադրական հիմնադրամում ձեռք են բերել նշանակալից մասնակցություն, պարտավոր են ձեռք բերման պահից վեցամսյա ժամկետում դիմել Կենտրոնական բանկ վերջինիս համաձայնությունը ստանալու նպատակով:

Եթե Կենտրոնական բանկը դիմումը մերժում է, ապա որոշումը ստանալուց հետո նշված անձը պարտավոր է վեցամսյա ժամկետում օտարել բանկի կանոնադրական հիմնադրամում նշանակալից մասնակցությունը գերազանցող մասը:

Ըստ գործող օրենսդրության բանկերի բացման, բանկային գործունեություն իրականացնելու արտոնագիր ստանալու համար անհրաժեշտ է միջնորդագիր, կանոնադրություն և այլ հիմնադիր փաստաթղթեր՝ բանկի ստեղծման անհրաժեշտության հիմնավորում, իրավասու կազմակերպության եզրակացությունը հիմնադիրների ֆինանսական դրության մասին (քաղաքացիներից՝ հայտարարագիր եկամուտների մասին), տեղեկանք կանոնադրական կապիտալի նվազագույն չափը մուծելու մասին և այլն: Իսկ օտարերկրյա, համատեղ բանկերը, օտարերկրյա բանկերի մասնաճյուղերը, բացի վերը թվարկվածներից, ներկայացնում են նաև օտարերկրյա հիմնադրի, բաժնետիրոջ կառավարման բարձրագույն մարմնի որոշումն այն մասին, որ նա մասնակցում է Հայաստանի Հանրապետության տարածքում բանկի ստեղծմանը կամ հիմնում է մասնաճյուղ, տվյալ երկրի լիազորված մարմնի հայտարարությունն այն մասին, որ չի առարկում այդ հիմնադրի կամ բաժնետիրոջ (մասնակցի) մասնակցությանը հիմնվող բանկին, կամ հայտարարությունն այն մասին, որ տվյալ երկրի օրենսդրությամբ այդպիսի թույլտվություն չի պահանջվում: Բացի վերը նշված փաստաթղթերից, օտարերկրյա քաղաքացիները ներկայացնում են տվյալ անձի վճարունակության մասին օտարերկրյա առաջնակարգ բանկերից մեկի հավաստումը, ինչպես նաև ճանաչված վճարունակությամբ հայտնի, ճանաչված առնվազն երկու քաղաքացու երաշխավորությունը:

Այսպիսով ակներև է, որ «Բանկերի և բանկային գործունեության մասին» Հայաստանի Հանրապետության օրենքով օտարերկրյա բանկերի, համատեղ բանկերի, օտաերկրյա բանկերի մասնաճյուղերի կողմից բանկային գործունեությունն իրականացնելու պայմանները շատ ավելի դյուրին են, քան Հայաստանի Հանրապետության իրավաբանական անձանց և քաղաքացիների համար սահմանվածները: Դա ունի իր հեռավոր նպատակները և ենթադրում է արտոնյալ նախապայմաններ ստեղծել օտարերկրյա կապիտալի ներգրավման համար: Սակայն դա չի նշանակում, որ Հայաստանի Հանրապետությունում բանկային գործունեություն իրականացնող տեղական սուբյեկտները միշտ գտնվելու են անբարենպաստ վիճակում: Բոլոր բանկերի համար մրցակցության հավասար պայմաններ ապահովելու նպատակով «Բանկային գործունեության մասին» օրենքի 27-րդ հոդվածով սահմանվում է բանկերի և օտարերկրյա բանկերի մասնաճյուղերի գրանցման կարգ: Հանրապետության բանկային գործունեության ուսումնասիրությունները վկայում են, որ Կենտրոնական բանկը կարող է լրացուցիչ պահանջներ ներկայացնել օտարերկրյա բանկերին, համատեղ բանկերի և օտարերկրյա բանկերի մասնաճյուղերի հիմնադիրներին, բաժնետերերին:

Այնուհետև հոդվածի երրորդ կետի բովանդակությունից հետևում է, որ բանկային գործունեություն իրականացնելու արտոնագիր տալուն զուգահեռ Հայաստանի Հանրապետության Կենտրոնական բանկը գրանցում է բանկը և այդ պահից նա ստանում է իրավաբանական անձի կարգավիճակ: Կանոնադրական հիմնադրամի համալրման համար Կենտրոնական բանկը բացում է գրանցված բանկի կամ օտարերկրյա բանկի մասնաճյուղի թղթակցային հաշիվ:

Հայաստանի Հանրապետության բանկերը կարող են կատարել միայն խստորեն սահմանված գործառնություններ, և նրանց արգելվում է ծավալել ոչ բանկային գործունեություն, այդ թվում նաև ապահովագրության ոլորտում: Այսպես, օրինակ, բանկերը կարող են ներգրավել և տեղաբաշխել ցպահանջ, ժամկետային, խնայողական դրամական ավանդներ տոկոսներով կամ առանց տոկոսի, ներգրավել և տրամադրել վարկեր, հաճախորդների և թղթակցող բանկերի հանձնարարությամբ կատարել հաշվարկներ, բացել և վարել հաճախորդների, թղթակցող բանկերի հաշիվները, թողարկել, սեփական միջոցների հաշվին գնել, վաճառել և հաշվառել վճարային փաստաթղթեր և արժեթղթեր, գնել և վաճառել արտարժույթ, թանկարժեք մետաղներ, քարեր, այլ արժեքներ, դրանք ի պահ ընդունել և այլն[1]: Իր կողմից տրամադրված վարկի վերադարձնելը բանկը կարող է ապահովել գրավով, երաշխավորությամբ և հանձնարարականներով, ինչպես նաև բանկային պրակտիկայում ընդունված պարտավորությունների կատարման ապահովման այլ ձևերով: Հանրապետության առևտրային բանկերի գործունեության ուսումնասիրությունը վկայում է, որ բանկը կարող է վարկեր տրամադրել նաև առանց երաշխիքի, որն իրականացվում է, այսպես կոչված, բլանկային վարկերի ձևով: Բանկերը Հայաստանի Հանրապետության Կենտրոնական բանկի հանձնարարությամբ իրականացնում են պետական բյուջեի դրամարկղային սպասարկման գործառնություններ: Վերը նշված, ինչպես նաև մի շարք այլ գործառնություններ բանկերը կարող են կատարել ինչպես հանրապետության ազգային դրամով, այնպես էլ արտարժույթով: Սակայն արտարժույթով գործառնություններ իրականացնելու համար բանկերը պետք է Հայաստանի Հանրապետության բանկից արտոնագիր ստանան:

[1] Տե՛ս ՀՀ օրենքը «Բանկերի և բանկային գործունեության մասին», հոդ. 34:



Բանկային գործունեության իրականացման իրավական հիմքը ըստ գործող բանկային օրենսդրության հանդիսանում է լիցենզիան (արտոնագիր), որի իրավական կարգավորումը սահմանված է «Բանկերի և բանկային գործունեության մասին» օրենքի երրորդ գլխում: Օրենքի 23-րդ հոդվածում ասվում է, որ բանկային գործունեության լիցենզիան Կենտրոնական բանկի կողմից տրվող բանկային գործունեություն իրականացնելու թույլտվությունը հաստատող փաստաթուղթ է, որը տալու բացառիկ իրավունքը պատկանում է Կենտրոնական բանկին: Բանկային գործունեության լիցենզիան կարող է անվավեր կամ ուժը կորցրած ճանաչվել Կենտրոնական բանկի որոշմամբ:

Ընդհանրացնելով բանկային գործունեություն իրականացնելու արտոնագրին ներկայացվող օրենսդրական պահանջները, դժվար չէ նկատել այն հիմքերը, որոնց առկայության դեպքում Հայաստանի Հանրապետության Կենտրոնական բանկի կողմից այն կարող է անվավեր ճանաչվել: Կենտրոնական բանկը կարող է լիցենզիան անվավեր ճանաչել, եթե արտոնագիր ստանալու համար հիմք հանդիսացած փաստաթղթերում բացահայտվում են ոչ ճիշտ տվյալներ, բանկային գործունեություն չի իրականացվում ավելի քան մեկ տարի, բանկի կողմից հայտարարված կանոնադրական կապիտալը մեկ տարում չի համալրվել, իրականացվում է արգելված գործունեություն և նկատվում են հակամենաշնորհային օրենսդրության խախտման փաստեր: Այն բանկերը, որոնց արտոնագրերը անվավեր են ճանաչվել, իրավունք չունեն կատարելու վերը թվարկված գործառնությունները և լուծարվում են իրենց իրավական կարգավիճակին համապատասխան[1]:

Հայաստանի Հանրապետության բանկային մարմինների կարգավիճակի իրավական առանձնահատկությունները սահմանված

[1] Տե՛ս ՀՀ օրենքը «Բանկերի և բանկային գործունեության մասին», հոդվ. 25, 26, 29, 32:

են նաև «Բանկային գաղտնիքի մասին» 1996թ. հոկտոմբերի 7–ին ՀՀ ԱԺ կողմից ընդունած օրենքում:

Բանկային գործունեության գաղտնիքի իրավական բովանդակության և առանձնահատկությունների կարգավորմանն է նվիրված օրենքի 4-րդ հոդվածը, որտեղ ասվում է, որ բանկային գաղտնիք են համարվում բանկի հաճախորդներին սպասարկելու կապակցությամբ տվյալ բանկին հայտնի ներկայացրած հաճախորդի հաշիվների վերաբերյալ տեղեկությունները, հաճախորդի հանձնարարությամբ կամ հօգուտ հաճախորդի կատարված գործառնությունների վերաբերյալ տեղեկությունները, ինչպես նաև նրա առևտրային գաղտնիքը և նրա վերաբերյալ ցանկացած այլ տեղեկություն, որը հաճախորդը մտադիր է եղել գաղտնի պահել և բանկը տեղյակ է կամ կարող էր տեղյակ լինել այդ մտադրության մասին:

Օրենսդրությամբ սահմանված գաղտնիության խախտման ոլորտները մեծ մասամբ գործնականում վերաբերում են խնայողություններին և ավանդներին, որոնց կարգավորմանը հիշյալ օրենքում լուրջ սահմանափակումներ են նախատեսված, նույնիսկ քրեական հետապնդում:

Հայաստանի Հանարապետության բանկերը երաշխավորում են իրենց հաճախորդների և թղթակցող բանկերի ավանդների, հաշիվների և գործառնությունների գաղտնիությունը: Բանկային գաղտնիքը հրապարակելը կամ այլ կերպ հայտնի դարձնելը առաջացնում է Հայաստանի Հանրապետության օրենսդրոթյամբ սահմանված պատասխանատվություն: Որոշակի իրավական երաշխիքներ են տրվում նաև բանկերում առկա դրամական միջոցների և այլ արժեքների ապահովության համար: Այսպես, Հայաստանի Հանրապետության բանկերում իրավաբանական անձանց, ինչպես նաև օտարերկրյա և միջազգային կազմակերպությունների դրամական միջոցների և այլ արժեքների վրա կարող է կալանք դրվել միայն դատարանի՝ օրինական ուժի մեջ մտած վճիռներով և դատավճիռներով կամ դատարանի կողմից տրված կատարողական փաստաթղթերով, ինչպես նաև պետական հարկային տեսչության պահանջով, բայց միայն օրենսդրությամբ սահմանված կարգով: Բանկերում քաղաքացիների դրամական միջոցների և այլ արժեքների վրա, ինչպես վկայում են դատաքննչական մարմինները, կարող է կալանք դրվել կամ տույժ կիրառվել միայն դատարանների որոշմամբ:

Հայաստանի Հանրապետությունում բանկերի վրա է դրված նաև խնայողական բնագավառի սպասարկումը: Բանկերն իրենք են սահմանում այն պայմանները, որոնց հիման վրա կատարում են բնակչության ավանդների ընդունման գործառնությունները: Օտարերկրյա քաղաքացիները և քաղաքացիություն չունեցող անձինք Հայաստանի Հանրապետության քաղաքացիների հետ համահավասար կարող են դառնալ ավանդատուներ և ազատ են բանկ ընտրելու հարցում: Նրանք կարող են ավանդներ ունենալ մեկ կամ մի քանի բանկերում: Ավանդատուները հնարավորություն ունեն իրենց ցանկությամբ տնօրինել սեփական ավանդները, դրանցից եկամուտներ ստանալ տոկոսադրույքներով կամ բանկերի կողմից առաջարկվող այլ ձևերով, կատարել անկանխիկ հաշվարկներ:

Հանրապետության տարածքում գործող բանկերի գործունեությունը վերահսկում է Հայաստանի Հանրապետության Կենտրոնական բանկը, որը իրավունք ունի ստուգելու բանկերի, այդ թվում նաև դրանց օտարերկրյա մասնաճյուղերի գործունեությունը:

Հայաստանի Հանրապետությունում բանկային գործունեությունը համալիր ձևով կանոնակարգելու նպատակով «Բանկերի և բանկային գործունեության մասին» Հայաստանի Հանրապետության օրենքին զուգահեռ՝ նույն օրը՝ 1996թ. հունիսի 30-ին, հանրապետության նախագահի կողմից ստորագրվեց նաև Հայաստանի Հանրապետության օրենքը «Հայաստանի Հանրապետության Կենտրոնական բանկի մասին»: Այս օրենքով սահմանվեց, որ Հայաստանի Հանրապետության Կենտրոնական բանկը (այսուհետև՝ Կենտրոնական բանկ) իրավաբանական անձ է, որի միակ հիմնադիրը Հայաստանի Հանրապետությունն է: Կենտրոնական բանկը միացյալ համակարգ է, որ ներառում է գլխավոր գրասենյակը և տարածքային ստորաբաժանումները: Տարածքային ստորաբաժանումները նրա մասնաճյուղերն ու ներկայացուցչություններն են:

Բանկային գործող օրենսդրության համեմատական վերլուծությունը վկայում է այն մասին, որ «ՀՀ Կենտրոնական բանկի մասին» օրենքը առաջին հոդվածի երրորդ կետով սահմանել է տարածքային ստորաբաժանումները, որոնք հանդես են գալիս մասնաճյուղերի և ներկայացուցչությունների միջոցով, բայց չի անդրադարձել դրանց կարգավիճակին, որը անորոշություն է ստեղծում Կենտրոնական բանկի կառուցվածքը ճիշտ պատկերացնելու և պետական մարմինների համակարգում նրա կարգավիճակը (ստատուսը) պարզելու հարցում:

Ինչ վերաբերում է առևտրային բանկերի տարածքային մարմիններին՝ մասնաճյուղերին, ներկայացուցչություններին և բանկերի գործառնական գրասենյակներին, ապա դրանց կարգավիճակի առանձնահատկությունները, նրանց կազմակերպման կարգը, գործունեության ձևերն ու մեթոդները սահմանված են «ՀՀ բանկերի և բանկային գործունեության մասին» օրենքի 14, 15 և 16- րդ հոդվածներում, որոնց գիտական ընդհանրացման հիման վրա պարզ է դառնում, որ դրանք կարող են հիմնվել առևտրային բանկերի կողմից, գործել սրանց սահմանած լիազորությունների շրջանակներում, իրականացնել բանկային գործունեություն և ֆինանսական գործառնություններ: Առևտրային բանկերի տարածքային ստորաբաժանումները ինչպես նշում է օրենքը, իրավաբանական անձի կարգավիճակ չունեն:

Ինչ վերաբերում է ՀՀ Կենտրոնական բանկի տարածքային մասնաճյուղերին և ներկայացուցչություններին, ապա դրանց օրենքով ճանաչվում են որպես ինքնուրույն իրավաբանական անձինք, որոնք հանրապետությունում իրականացնում են կենտրոնական բանկի գործառնությունների մի մասը: Նրանց իրավասության ծավալը կարող է սահմանել բանկի խորհուրդը: Նման օրենսդրական բարեփոխումը ոչ միայն կնպաստի Կենտրոնական բանկի ծավալուն աշխատանքի կրճատմանը, այլև տեղերում, ազգաբնակչության շրջանում, կբարձրացնի Կենտրոնական բանկի, որպես պետական մարմնի հեղինակությունը:



Կենտրոնական բանկը իր իրավասության շրջանակներում հանրապետության շահերը ներկայացնում է միջազգային ֆինանսական կազմակերպություններում, միջազգային և օտարերկրյա բանկերում, ինչպես նաև տարբեր երկրների կենտրոնական և այլ բանկերում, որտեղ միջպետական համագործակցությունն իրականացվում է պետությունների կենտրոնական բանկերի մակարդակով: Բացի այդ, Կենտրոնական բանկը կարող է կնքել միջազգային պայմանագրեր[1]:

Պետական մարմինների համակարգում հանրապետության Կենտրոնական բանկի կարգավիճակի առանձնահատկությունները դրսևորվում են նաև օրենքով մյուս մարմիններից նրա լիազորությունների ընդգծված տարանջատումով: Այս իմաստով կարևոր նշանակություն ունի այն հանգամանքը, որ ՀՀ Սահմանադրությունը ամրագրում է Կենտրոնական բանկի ձևավորման կարգը[2]: Իր

խնդիրներն իրականացնելիս Կենտրոնական բանկը անկախ է հանրապետության պետական մարմիններից: Ինչ վերաբերում է Կենտրոնական բանկի և կառավարության փոխհարաբերություններին, ապա միմյանց պարտավորությունների համար պատասխանատվություն չեն կրում, բացառությամբ այն դեպքերի, երբ Հայաստանի Հանրապետության կառավարությունը կամ Կենտրոնական բանկը ստանձնել են այդպիսիք[3]: Սակայն դա չի նշանակում, որ կառավարությունը և Կենտրոնական բանկը համագործակցության եզրեր չունեն: Բանկը մասնակցում է կառավարության տնտեսական և ֆինանսական ծրագրերի մշակմանը և աջակցում է կառավարության կողմից իրականացվող տնտեսական միջոցառումներին, բայց միայն այն դեպքում, եթե դրանք չեն հակասում իր կանոնադրական նպատակներին:

Հանրապետության Կենտրոնական բանկի և կառավարության համագործակցության սահմանները ամրապնդված են «Կենտրոնա-

---

[1] Տե՛ս ՀՀ օրենքը «Հայաստանի Հանրապետության Կենտրոնական բանկի մասին», հոդ. 8:

[2] Տե՛ս Հայաստանի Հանրապետության Սահմանադրությունը, հոդ. 83, կետ 1-ին:

[3] Տե՛ս «ՀՀ Կենտրոնական բանկի մասին» օրենքը, հոդ. 1, կետ 6:

կան բանկի մասին» օրենքի 7-րդ հոդվածի 4-րդ կետում, որտեղ ասված է, որ Կենտրոնական բանկի նախագահը կարող է խորհրդակցական ձայնի իրավունքով մասնակցել կառավարության բաց նիստերին և գրավոր կարծիք ներկայացնել քննարկվող հարցի վերաբերյալ: Հայաստանի Հանրապետության կառավարության լիազոր ներկայացուցիչը կարող է խորհրդակցական ձայնի իրավունքով մասնակցել Կենտրոնական բանկի խորհրդի բաց նիստերին և գրավոր կարծիք ներկայացնել քննարկվող հարցի վերաբերյալ:

Կենտրոնական բանկի և հանրապետության կառավարման փոխհարաբերությունների իրավական կարգավորումը սահմանված է օրենքի 30-ից 34-րդ հոդվածներում, որտեղ մանրազնին թվարկված են համագործակցության և բանկային ծառայությունների մատուցման այնպիսի ոլորտներ, ինչպիսիք են կառավարության բանկային սպասարկումը, պետական բյուջեի նախագծի կապակցությամբ տրվող պաշտոնական եզրակացությունը, կառավարության՝ որպես ֆինանսական գործակալ հանդես գալը, որն արտահայտվում է Կենտրոնական բանկի կողմից կառավարության լիազորած մարմնի թողարկած պարտատոմսերի և այլ արժեթղթերի բաշխման, գրանցման, փոխանցման, նաև պետական բյուջեի և ներքին ու արտաքին պետական պարտքի սպասարկման հետ կապված գործառույթների իրականացմամբ: Վերջապես, կառավարության վարկավորումը, որը իրականացվում է կառավարությանը վարկեր տրամադրելով կամ վարկային գիծ բացելու գործունեությամբ, որի նպատակը պետական բյուջեի դեֆիցիտի ծածկումն է:

Պետական մարմինների համակարգում Կենտրոնական բանկի կարգավիճակի առանձնահատուկ կողմերից մեկն էլ այն է, որ օրենքը միայն նրան է վերապահում դրամավարկային քաղաքականության ծրագրի կազմման և մշակման իրավունքը: Այսպես, օրենքի 6-րդ հոդվածը սահմանում է, որ յուրաքանչյուր տարի, պետական բյուջեն հաստատվելուց հետո 10 օրվա ընթացքում, Կենտրոնական բանկը Ազգային ժողով է ներկայացնում առաջիկա տարվա դրամավարկային քաղաքականության ծրագիրը, որը ներառում է տնտեսական իրավիճակի վերլուծությունը և կանխատեսումը՝ կապված



Հայաստանի Հանրապետության սոցիալ - տնտեսական զարգացման և պետական բյուջեի ցուցանիշների հետ, շրջանառության մեջ գտնվող դրամական զանգվածի և վարկային ներդրումների առավելագույն սահմանաքանակը, տոկոսադրույքների և փոխարժեքի մակարդակը, դրամավարկային կարգավորման մեթոդները:

Հանրապետության բանկային առօրյա գործունեությունը վկայում է, որ չնայած դրամավարկային քաղաքականության իրականացման պատասխանատուն Կենտրոնական բանկն է, սակայն այդ նպատակով նա համագործակցում է հանրապետության կառավարության ֆինանսների և էկոնոմիկայի նախարարության և այն գերատեսչությունների հետ, որոնց լիազորությունների մեջ մտնում է դրամավարկային, ֆինանսական և արժութային քաղաքականության ձևավորումը, կազմակերպումը:

Կենտրոնական բանկի կառավարման բարձրագույն մարմինը ըստ օրենքի 19-րդ հոդվածի բանկի խորհուրդն է, որը կազմված է Կենտրոնական բանկի նախագահից, նրա տեղակալից և հինգ անդամներից: Կենտրոնական բանկի խորհրդի անդամներին նշանակում է ՀՀ նախագահը՝ հինգ տարի ժամկետով: Խորհուրդը իր գործունեությունը կազմակերպում է նիստերի միջոցով, որոնք գումարվում են ըստ անհրաժեշտության՝ նախագահի, նրա տեղակալի կամ խորհրդի առնվազն երեք անդամների պահանջով, բայց ոչ պակաս, քան ամիսը մեկ անգամ: Խորհուրդը իրավասու է որոշումներ ընդունել, եթե նիստին ներկա են խորհրդի անդամներից առնվազն հինգը, այդ թվում Կենտրոնական բանկի նախագահը կամ նրա տեղակալը: Որոշումը համարվում է ընդունված, եթե կողմ են քվեարկել նիստին ներկա գտնվող անդամների ընդհանուր թվի կեսից ավելին:

Հայաստանի Հանրապետության Կենտրոնական բանկի կարգավիճակի առանձնահատկությունների առանցքը պայմանավորված է այն իրավունքների և պարտականությունների շրջանակներով, որոնցով օրենքը վերապահում է բանկի խորհրդին, որպես կոլեգիալության սկզբունքներով գործող մարմնի, որի լիազորությունները սպառիչ սահմանված են օրենքի 20- րդ հոդվածում:

Կենտրոնական բանկի կարգավիճակի առանձնահատկությունների ուսումնասիրության հիման վրա, կարծում ենք, օրենսդրական ամրապնդում ստացած խնդիրներն ըստ գործունեության ոլորտի կարելի է պայմանականորեն բաժանել երկու խմբի՝ իրավական և ընդհանուր տնտեսական: Կենտրոնական բանկի իրավական խնդիրներն են՝ բանկերի և այլ ֆինանսավարկային կազմակերպությունների, վարկատուների և ավանդատուների շահերի պաշտպանությունը՝ նրանց գործունեության կարգավորման և վերահսկման միջոցով, նաև միջբանկային հաշվարկների համակարգի կարգավորումը: Ընդհանուր տնտեսական խնդիրներն են՝ դրամի ներքին ու արտաքին կայունության ապահովումը և հավասարակշռված ու կայուն տնտեսական համակարգի գործունեությանը նպաստող դրամական, վարկային և ֆինանսական պայմանների ստեղծումը: Կենտրոնական բանկի խնդիրների իրականացման համար նրան օրենսդրությամբ վերապահված են մի շարք կարգավորիչ և վերահսկողական գործառույթներ: Կարգավորիչ գործառույթներն են՝ դրամի էմիսիայի իրականացումն ու կարգավորումը, դրամաշրջանառության կազմակերպումը, դրամավարկային և արժութային քաղաքականության իրականացումը, հանրապետության պետական պարտքի սպասարկումը, Հայաստանի Հանրապետության կառավարության և այլ պետական մարմինների բանկային սպասարկման կազմակերպումը: Հիմնական վերահսկողական գործառույթներն են՝ բանկային գործունեություն և արտարժույթով բանկային գործառնություններ իրականացնելու արտոնագրերի տրամադրումը, Հայաստանի Հանրապետության տարածքում գործող բանկերի, այլ ֆինանսավարկային կազմակերպությունների, բարեգործական, ապահովագրական, կենսաթոշակային ֆոնդերի, ինվեստիցիոն և համանման այլ ընկերությունների ու կազմակերպությունների գործունեության հսկողությունը: Բանկային օրենսդության պահանջների կատարման նկատմամբ վերահսկողություն իրականացնելու նպատակով Կենտրոնական բանկը կամ նրա հանձնարարությամբ համապատասխան աուդիտային կազմակերպությունը իրավունք ունի ստուգումներ անցկացնել հանրապետության տարածքում



գործող բանկերում և այլ ֆինանսական կազմակերպություններում, պարտադիր ցուցումներ տալ հայտնաբերված խախտումները վերացնելու մասին, բանկի հիմնադիրների (մասնակիցների) առջև հարց բարձրացնել ֆինանսական առողջացման, բանկը վերակազմավորելու կամ լուծարելու մասին, կիրառել պատժամիջոցներ, կասեցնել բանկերի, այլ ֆինանսավարկային կազմակերպությունների, բանկային միությունների գործունեությունը, որն ուղղված է ազատ մրցակցության սահմանափակմանը. այդ գործունեությունն արգելելու հայցով դիմել դատարան:

Այսպիսով, ակնհայտ է, որ Հայաստանի բանկի կարգավորիչ և վերահսկողական ֆունկցիաներն ուղղված են դրամավարկային համակարգի կայունության ապահովմանը, բանկի վարկատուների և ավանդատուների շահերի պաշտպանությանը:

Հայաստանի Հանրապետությունում շրջանառության մեջ կանխիկ դրամ բաց թողնելու և շրջանառությունից հանելու բացառիկ իրավունքը նույնպես պատկանում է Կենտրոնական բանկին: Նա կազմակերպում է նաև դրամաշրջանառությունը, որի ընթացքում որոշում է դրամավարկային գործառնությունների կատարման կարգը, պատրաստում է թղթադրամ և մետաղադրամ, սահմանում է կանխիկ դրամի պահպանման, տեղափոխման և ինկասացիայի, նաև նրա վճարունակության, փոխանակման ու ոչնչացման կարգը:

Կենտրոնական բանկի կարգավիճակի ֆինանսաիրավական գործունեության առանցքը բոլոր ուղղություններում հանրապետությունում գների կայունության ապահովումն է, որի իրագործման նպատակով բանկը մշակում, հաստատում և իրականացնում է դրամավարկային քաղաքականության ծրագիր: Դրա մի մասն են կազմում բանկային համակարգի կայունությունը և բանկային գործունեության համար անհրաժեշտ պայմաններ ապահովելը, որը Կենտրոնական բանկը իրականացնում է տարբեր բանկերի և այլ անձանց հետ փոխհարաբերություններ ձևավորելու միջոցով:

Կենտրոնական բանկի մասին օրենքը սպառիչ թվարկում է այն խնդիրները, որոնց իրականացումը անհնար է առանց այլ մարմինների հետ իրավական փոխհարաբերությունների ստեղծման: Այդ-

պիսի խնդիրների թվին են դասվում այլ բանկերի լիցենզավորումը, որպես վերջին ատյանի վարկատու վարկերի տրամադրումը, նաև այդ մարմինների ու քաղաքացիների վարկային և վճարահաշվարկային գործունեության կարգավորումն ու վերահսկումը:

ՀՀ Կենտրոնական բանկի և այլ մարմինների փոխհարաբերություններից ծևավորվող վարկային և հաշվարկային իրավահարաբերությունների բնույթի, դրանց իրավական կարգավորման հիմնախնդիրները եղել և այսօր էլ մնում են վիճելի: Ընդհանուր ճանաչում ստացած տեսակետն այն է, որ բանկային վարկն արտահայտվում է բանկային փոխատվութկան ձևով և որոշ չափով հիշեցնում է փոխառության պայմանագրերը, սակայն այն ունի մի շարք առանձնահատկություններ, որոնցով տարբերվում է քաղաքացիական իրավունքի նորմերով կարգավորվող փոխառության պայմանագրից: Այս պատճառով էլ բանկային վարկավորումը հասարակական հարաբերությունների մի յուրահատուկ համակարգ է, որը կարգավորվում է քաղաքացիական և ֆինանսական իրավունքի նորմերով: Այդ նորմերը հանրագումարի գալով կազմում են ինքնուրույն իրավական ինստիտուտ, որն ունի համալիր բնույթ: Սա բացատրվում է պետության գործունեության մեջ բանկերի ունեցած առանձնահատուկ իրավական դրությամբ: Նրանք միևնույն ժամանակ հանդիսանում են իրավաբանական անձինք, տնտեսական կազմակերպություններ, իսկ ՀՀ Կենտրոնական բանկը՝ իշխանական բնույթի լիազորություններով օժտված պետական կառավարման մարմին: Այստեղից էլ ինչպես հաշվարկների, այնպես էլ վարկավորման ժամանակ բանկերը մտնում են քաղաքացիական իրավունքի նորմերով կարգավորվող գույքային-պայմանագրային հարաբերությունների մեջ: Այդ հարաբերություններում բանկերը հանդես են գալիս որպես տնտեսական շրջանառության (վարկի բաց թողնում, գրավի ձևավորում և այլն) մասնակիցներ:

Այսպիսի գործառնությունների կատարումով հանդերձ բանկերը միաժամանակ մտնում են տնտեսական հարաբերությունների մեջ, որոնցում Կենտրոնական բանկի սահմանած կանոններով հանդես են գալիս իշխանության լիազորություններով օժտված մարմիններ,



որոնք վարկավորման և հաշվարկների գործընթացում վերահսկում են տնտեսական կազմակերպությունների գործունեությունը և ըստ անհրաժեշտության կիրառում բանկային սանկցիաներ, որոնք կարգավորում են բանկային իրավունքի նորմերով:

ՀՀ Կենտրոնական բանկի և այլ բանկային մարմինների փոխհարաբերությունների ընթացքում ձևավորվող իրավահարաբերությունների մեծ մասը վերաբերում են օրենսդրական սահմանում ստացած տնտեսական այն նորմատիվների իրավական կարգավորմանը, որոնք կազմում են ***Կենտրոնական բանկի բացառիկ իրավասությունը:***

Բանկային գործունեության այնպիսի հիմնական տնտեսական նորմատիվներ, ինչպիսիք են բանկի ընդհանուր կապիտալը, կանոնադրական հիմնադրամի և ընդհանուր կապիտալի նվազագույն չափը մեկ փոխառուի գծով ռիսկի առավելագույն չափը, արտարժույթի տնօրինման նորմատիվը սահմանում է ՀՀ Կենտրոնական բանկը:

Ըստ «Բանկերի գործունեության մասին» օրենքի 46-րդ հոդվածի Կենտրոնական բանկը կարող է սահմանել բանկերի կանոնադրական հիմնադրամի և ընդհանուր կապիտալի նվազագույն չափերը՝ որոշակի գումարների ձևով: Կենտրոնական բանկը իրավունք ունի տարին մեկ անգամ վերանայելու բանկերի կանոնադրական հիմնադրամի կամ ընդհանուր կապիտալի նվազագույն չափերը: Վերանայելիս կարող է սահմանել այն ժամկետները, որոնց ընթացքում բանկերը պարտավոր են լրացնել կանոնադրական հիմնադրամի կամ ընդհանուր կապիտալի նվազագույն վերանայված չափերը: Օրենքով սահմանված է, որ տվյալ ժամկետը չի կարող երկու տարուց պակաս լինել: Ինչ վերաբերում է մեկ փոխառուի ռիսկի առավելագույն չափին, ապա այն սահմանվում է որպես բանկի կողմից մեկ փոխառուին և նրա հետ փոխկապակցված անձանց տրամադրված վարկերի, պարտավորությունների դիմաց տրված երաշխիքների ու երաշխավորությունների գումարի՝ բանկի ընդհանուր կապիտալի հետ հարաբերության առավելագույն չափ:

Բանկային օրենսդրությունը Կենտրոնական բանկին իրավունք է վերապահում սեփական հայեցողությամբ սահմանել ***հատուկ տնտեսական*** նորմատիվներ, որոնց նպատակը բանկային համակարգի կայունության ապահովումն է: Այս նորմատիվների գործողության ժամկետը վեց ամիս է:

Հայաստանի Հանրապետության Կենտրոնական բանկի իրավական կարգավիճակի առանձնահատկությունները պայմանավորված են Կենտրոնական բանկին վերապահված ***վերահսկողական գործառույթներով***: Բանկային օրենսդրությամբ սահմանված կարգով Կենտրոնական բանկը հետևում է, որ առևտրային բանկերը ժամանակին և լրիվ ծավալով կատարեն հիմնական տնտեսական և հատուկ նորմատիվները գործեն իրավական ակտերով սահմանված հասցեագրումներին համապատասխան:

«Բանկերի և բանկային գործունեության մասին» օրենքի 57-րդ հոդվածի համապատասխան՝ բանկերի գործունեության նկատմամբ վերահսկողության բացառիկ իրավունքը պատկանում է Կենտրոնական բանկին: Կենտրոնական բանկը ըստ անհրաժեշտության կարող է անցկացնել հերթական և արտահերթ վերստուգումներ, որ իրականացվում են Կենտրոնական բանկի խորհրդի որոշմամբ: Բանկային համակարգի մարմիններում անցկացվող վերստուգումների օբյեկտ կարող են հանդիսանալ առևտրային և օտարերկրյա բանկերի և դրանց մասնաճյուղերի կողմից Կենտրոնական բանկ ներկայացվող եռամսյակային հաշվետվությունները, հաշվեկշիռները: Ըստ Կենտրոնական բանկի սահմանած կարգի՝ յուրաքանչյուր տարի առևտրային բանկերը ստուգվում են աուդիտային գործունեություն իրականացնելու իրավունք ունեցող անկախ աուդիտային կազմակերպությունների կողմից:

Հանրապետության Կենտրոնական բանկի վերահսկողական գործառույթները իրավական գնահատման իմաստով անսահմանափակ են և պետության ֆինանսական իշխանության կազմակերպման առումով ճիշտ են արտացոլում ազգային բանկի դերն ու նշանակությունը հատկապես արժույթի և արտարժութային գործառնության կարգավորման և վերահսկողության ոլորտում: Կենտրոնական բանկի կարգավիճակն արտացոլող մնացած բոլոր իրավունք-



ները և պարտականությունները ածանցյալ են արժույթի և արտարժույթի գործունեության ձևերից: Այս գործընթացում է, որ արտահայտվում են Կենտրոնական բանկի, որպես պետական իշխանության մարմնի, որպես ՀՀ արժութային միակ գործակալի անսահմանափակ իրավունքները: Արժութային կարգավորման ոլորտում Կենտրոնական բանկի իրավասության տնօրինման առարկա են հանդիսանում արտարժութային տնօրինման նորմատիվները, դրամի փոխարժեքի որոշման մեթոդները, ինչպես նաև արժութային գործառնությունների իրականացման կարգն ու պայմանները:

Կենտրոնական բանկը, որպես հանրապետության արժութային գործակալ, արտարժութային կարգավորման ոլորտում հսկում և կարգավորում է արժութային գործառնություններ իրականացնող դիլերների, բանկերի գործունեությունը: Հատկապես մեծ է Կենտրոնական բանկի դերը արժութային քաղաքականության իրականացման գործում: Այդ քաղաքականության կենսագործման շրջանակներում նա որոշում է ոսկով և արտարժույթով կատարվող գործարքների կարգը, հսկողություն է սահմանում արժութային օրենսդրության կատարման վրա, բանկերին և այլ ֆինանսավարկային կազմակերպություններին տրամադրում է ոսկով և արտարժույթով գործառնություններ կատարելու արտոնագրեր, սահմանում է դրամի կուրսը այլ դրամական միավորների նկատմամբ, իր միջոցների հաշվին գնում և վաճառում է արտարժույթ, թանկարժեք մետաղներ և քարեր, կառավարում է դրանց պաշտոնական պահուստները և այլն:

Կենտրոնական բանկն իրականացնում է միջազգային պրակտիկայում հայտնի գրեթե բոլոր գործառնությունները: Այսպես, նա իրավասու է կատարել հաշվարկային գործառնություններ՝ վարկեր տրամադրել բանկերին և այլ ֆինանսավարկային կազմակերպություններին, ավանդային գործառնություններ՝ դրամով և արտարժույթով ավանդներ ներգրավել բանկերից և այլ ֆինանսավարկային կազմակերպություններից, բացել ընթացիկ հաշիվներ, գործառնություններ կատարել արժեթղթերի հետ՝ գնել, պահել և վաճառել պետական այլ արժեթղթեր, տալ երաշխիքներ ու հանձնարարականներ:

## §2. ՀՀ առևտրային բանկերի գործունեության իրավական ռեժիմը

Հայաստանի Հանրապետության բանկային մարմինների կարգավիճակի իրավական առանձնահատկությունները առաջին հերթին պայմանավորված են բանկային համակարգով, որի հասկացության կապակցությամբ իրավաբանական գրականության էջերում դեռևս միասնական կարծիք գոյություն չունի, հատկապես եթե խոսքը գնում է համակարգի ստորին կառուցվածքների մասին: Հանրապետության բանկային օրենսդրությունը, ճիշտ է, վերջնականապես լուծում է տվել բանկային համակարգին և բանկային գործունեության իրավական կարգավորմանը, այնուամենայնիվ իրավական, տեսական հետազոտությունների իմաստով ֆինանսա-իրավական գրականության մեջ այսօր էլ շարունակում են վիճելի մնալ «բանկ», «բանկային և վարկային մարմիններ», «բանկային մարմինների համակարգ» կատեգորիաները:

Բանկային համակարգի հիմքը բանկն է: Պատմական ուսումնասիրությունները վկայում են, որ «բանկ» տերմինը առաջացել է իտալերեն «banco» բառից, որը նշանակում է դրամափոխի աթոռ, նստարան կամ դրամատուն: Բանկերն առաջացել և զարգացել են ապրանքադրամական և վարկային հարաբերություններին զուգընթաց: Դրանք հանդես են գալիս որպես վարկային կազմակերպություններ, որոնք կենտրոնացնում են ժամանակավորապես ազատ դրամական միջոցները և օգտագործում վարկի ձևով: Բանկերը կատարում են վճարային կանխիկ հաշվարկներ, վարկավորման և ֆինանսավորման գործառնություններ, բաց են թողնում դրամ և տարատեսակ արժեթղթեր[1]:

Շուկայական հարաբերություններին անցնելու պայմաններում արմատապես վերակառուցվում է բանկերի և բանկային համակարգի գործունեությունը: Բանկային վարկերի օգտագործման արդյունավետությունը խիստ կախվածության մեջ է դրվում պատվիրատուների, կազմակերպությունների և քաղաքացիների սպասարկման որակից, ինչպես նաև ավանդների ու փոխատվության տոկոսների չափերից: Շուկայական հարաբերությունների զարգացմանը զուգընթաց՝ բանկային համակարգը առևտրային հաշվարկի և ինքնաֆինանսավորման սկզբունքներին անցնելու կապակցությամբ կիրառվում են վարկավորման արդյունավետ ժամանակակից նոր ձևեր ու մեթոդներ, որոնք կոչված են ապահովելու վարկային ռեսուրսների վերադարձումը և շրջանառումը:

Բանկերը ներկայումս դարձել են ինքնուրույն ձեռնարկություններ և նրանց գործունեությունն ավելի մեծ չափով առևտրային բնույթ է ստացել: Առևտրային սկզբունքներով են աշխատում բանկային համակարգի բոլոր մարմինները բացառությամբ Կենտրոնական բանկից:

Անհրաժեշտ է նկատել, որ վարկային մարմնի առկայությունը և նրա կողմից վարկային գործառնությունների կատարումը, ավանդների ընդունումը և վճարումը դեռևս բավարար պայման չեն տվյալ պետության վարկային համակարգի մասին լիարժեք դատողություններ կատարելու համար:

Վարկային համակարգը ցանկացած պետության միևնույն նպատակի և խնդիրների իրականացման համար կազմակերպա-իրավական ձևերով միավորված վարկային մարմինների համակցություն է, որը գլխավորում է կենտրոնական կամ ազգային բանկը՝ իրականացնելով բանկային համակարգի կառավարման ֆունկցիա[1]: Պատահական չէ, որ վարկային համակարգ ստեղծելու նպատակով ինքնիշխան Հայաստանի Հանրապետությունը անկախության առաջին օրից ձեռնամուխ եղավ հանրապետության Կենտրոնական բանկի ստեղծմանը, որը հիմնվեց Գերագույն խորհրդի 1993թ. ապրիլի 27-ի «ՀՀ Կենտրոնական բանկի» և «Բանկերի և բանկային

[1] Տե'ս մանրամասն Ë.Ã. Åôèìîâà, Áàíêîâñêîå ïðàâî. Èçä. ÁÅÊ, Ì., 1994, էջ 6:

[1] Տե'ս մանրամասն Òîñóíÿí Ã.À., Âèêóëèí À.Þ., Äåíãè è âëàñòü, (òåîðèÿ ðàçäåëåíèÿ âëàñòåé è ïðîáëåìû áàíêîâñêîé ñèñòåìû), èçä. “Äåëî”, Ì., 2000, էջ 37-39. Գ.Ա. Սուքիասյան, Ֆինանսական իրավունք (դասագիրք), «Տնտեսագետ», Ե; 2001, էջ 314; Գ.Ա.Սուքիասյան, Ֆինանսական իշխանությունը որպես պետական միասնական իշխանության տարր, (Իրավագիտության հարցեր), ԵՊՀ, 2003թ., N 1, էջ 22-23:

գործունեության մասին» օրենքներով, որոնք գործեցին մինչև 1996 թվականը: 1996թ. հունիսի 30-ին ԱԺ-ն ընդունեց օրենք «Հայաստանի Հանրապետության Կենտրոնական բանկի» և «Բանկերի և բանկային գործունեության մասին», որով նախկին օրենքները կորցրեցին իրենց ուժը:

Գործող վարկային օրենսդրության սկզբունքային առանձնահատկությունն այն է, որ Հայաստանի բանկերի կազմակերպման և գործունեության, դրանց իրավասության շրջանակների սահմանման իրավունքը վերապահված է Կենտրոնական բանկին:

Հանրապետության «Բանկերի և բանկային գործունեության մասին» օրենքի 6-րդ հոդվածը հստակեցրել է «բանկ» բառի օգտագործման ծավալները, որի համաձայն «բանկ» բառը կամ դրա ածանցյալները իրենց անվանման մեջ կարող են օգտագործել միայն լիցենզիա ունեցող իրավաբանական անձինք, դրանց մասնաճյուղերը, ներկայացուցչությունները, գործառնական գրասենյակները (կետերը), բացառությամբ այն դեպքերի, երբ վերոհիշյալ բառի օգտագործման իրավունքը վերապահվել է օրենքով կամ միջազգային պայմանագրով, կամ եթե «բանկ» բառի օգտագործման իմաստից բխում է, որ խոսքը բանկային գործունեությանը չի վերաբերում:

«Բանկ» բառի ստուգաբանական վերլուծությունից զատ օրենքի 4-րդ հոդվածում բավարար հիմնավորմամբ իշխանության և կառավարման մարմինների համակարգում սահմանազատում է անցկացվում բանկերի և մյուս առևտրային և ոչ առևտրային կազմակերպությունների գործունեության իրավական ռեժիմների միջև՝ համարելով, որ բանկն իրավաբանական անձ է, որն իրավունք ունի օրենքով սահմանված կարգով տրված լիցենզիաների հիման վրա իրականացնել բանկային գործունեություն:

Բանկային օրենսդրությամբ՝ բանկային գործունեություն է համարվում ավանդներ ընդունելը կամ ավանդներ ընդունելու առաջարկությամբ և ավանդներ ընդունողի անունից հանդես գալը և ռիսկով դրանք տեղաբաշխելը՝ վարկեր, ավանդներ, դեպոզիտներ տրամադրելու և ներդրումներ կատարելու միջոցով: Առանց Կենտ-



րոնական բանկի կողմից տրված բանկային գործունեության լիցենզիայի Հայաստանի Հանրապետության տարածքում բանկային գործունեություն իրականացնելն արգելվում է: Իրավական այս հիմնարար, ելակետային դրույթով են պայմանավորված հանրապետության բանկային համակարգի մյուս օղակների՝ առևտրային բանկերի կարգավիճակի իրավական առանձնահատկությունները, որոնց բովանդակությունը կազմում են պետական մարմինների համակարգում նրանց գրաված տեղի, տնօրինման առարկայի և իրավասության շրջանակներին վերաբերող հիմնահարցերը:

Հայաստանի Հանրապետության բանկային համակարգի ինքնուրույն օղակն են հանդիսանում առևտրային բանկերը: Այդ բանկերը գործնականում ղեկավարվում են ինչպես գործող բանկային օրենսդրությամբ, այնպես էլ իրենց ներքին կանոնադրություններով[1]:

Առևտրային բանկերի կարգավիճակի առանձնահատկությունները սահմանված են բանկային օրենսդրությամբ, որոնք կարելի է դասակարգել՝ ըստ հիմնադրման, ըստ բանկային գործունեության և ըստ իրավա-կազմակերպական հատկանիշների:

Ըստ հիմնադրման կարգի առևտրային բանկերը լինում են.

1. բաժնետիրական ընկերություն
2. սահմանափակ պատասխանատվությամբ ընկերություն
3. կոոպերատիվ բանկ:

Առաջին երկու տեսակի բանկերի վրա տարածվում են բաժնետիրական ընկերությունների և սահմանափակ պատասխանատվությամբ ընկերությունների վերաբերյալ օրենքները և այլ իրավական ակտեր, եթե «Բանկերի և բանկային գործունեության մասին» ՀՀ օրենքն այլ բան չի սահմանում: Կոոպերատիվ է համարվում այն բանկը, որի մասնակիցներից յուրաքանչյուրը, անկախ բանկի կանոնադրական հիմնադրամում իրենց մասնակցության չափից, ունի մեկ ձայնի իրավունք: Կոոպերատիվը ունի առնվազն երեք մասնակից: Եթե հիշյալ բանկի մասնակիցների թիվը նվազում է երեքից,

[1] Տե՛ս մանրամասն «Արդշինինվեստբանկ» ՓԲԸ կանոնադրությունը:

ապա այն ենթակա է լուծարման կամ պետք է վեց ամսվա ընթացքում լրացնի մասնակիցների թիվը[1]: Կոոպերատիվ բանկի շահաբաժինները վճարելու, նոր մասնակիցներ ընդունելու, բանկում մասնակցությունը դադարեցնելու, ինչպես նաև բանկի լուծարման դեպքում բանկի կապիտալը մասնակիցների միջև բաշխելու կարգը սահմանվում է կոոպերատիվ բանկի կանոնադրությամբ:

«Բանկերի և բանկային գործունեության մասին» օրենքի 13-րդ հոդվածը սահմանում է, որ բանկի մասնակից են համարվում նրա հիմնադիրները: Բաժնետիրական ընկերություն հանդիսացող բանկերում մասնակիցներն այդ բանկերի բաժնետերեր են, իսկ սահմանափակ պատասխանատվությամբ ընկերություն հանդիսացող բանկերում և կոոպերատիվ բանկերում՝ դրանց փայատերերը՝ անդամները:

Հանրապետության բանկային օրենսդրության առանձնահատկություններից մեկն էլ այն է, որ որոշակի սահմանափակումներ և արգելքներ են նախատեսված բանկի մասնակից-հիմնադիրների համար: Դա նույնպես պետք է դիտարկել ինքնուրույնության արտահայտություն: Այսպես, օրենքը հռչակում է, որ ՀՀ պետական և տեղական ինքնակառավարման մարմինները բանկի մասնակից կարող են լինել օրենքով սահմանված դեպքերում և կարգով: Բանկի մասնակից չեն կարող լինել կուսակցությունները և արհեստակցական միությունները: Նրանք կարող են լինել միայն ավանդատուներ:

Առևտրային բանկերի կարգավիճակի առանձնահատկություն պետք է համարել այն, որ վերջիններս կարող են գործել ինչպես զուտ մասնավոր կապիտալի, այնպես էլ խառը (պետական և մասնավոր) կապիտալի հիման վրա:

Ըստ բանկային գործառնությունների ծավալի բանկերը գործում են ա/ համընդհանուր և բ/ մասնագիտացված սկզբունքներով: Համընդհանուր համարվում են այն բանկերը, որոնք իրականացնում են լայն շրջանակի բանկային գործառնություններ: Մասնագիտացված

[1] Տե՛ս ՀՀ օրենքը «Բանկերի և բանկային գործունեության մասին», հոդվ. 12:



բանկերը իրականացնում են որևէ մեկ տեսակի բանկային գործառնություն. օրինակ՝ խնայողական կամ լիզինգային գործառնություն: Ուսումնասիրությունները վկայում են, որ հանրապետությունում բանկային մարմինները հիմնականում ծավալում են բազմապրոֆիլ գործունեություն:

Գործող բանկային օրենսդրությունը կարգավորում է բանկերի իրավա-կազմակերպական կառուցվածքի խնդիրները, համաձայն որի վերջիններս կարող են հանդես գալ մասնաճյուղեր ունեցող և մասնաճյուղեր չունեցող կազմակերպությունների կարգավիճակով:

ՀՀ տարածքում գործող բանկերին թույլատրվում է սահմանված կարգով ՀՀ-ում և նրա տարածքից դուրս հիմնել մասնաճյուղեր: Բանկի մասնաճյուղը ըստ օրենքի իրավաբանական անձի կարգավիճակ չունեցող և բանկից դուրս գտնվող առանձնացված ստորաբաժանում է, որը գործում է բանկի կողմից տրված լիազորությունների սահմաններում և նրա անունից իրականացնում բանկային գործունեություն և օրենքով նախատեսված ֆինանսական գործառնություններ:

Հայաստանի Հանրապետությունում բանկային գործունեությունը խթանելու նպատակով օրենսդիրը օտարերկրյա բանկերին իրավունք է վերապահում ՀՀ տարածքում հիմնել մասնաճյուղեր և ներկայացուցչություններ: Օտարերկրյա բանկերի մասնաճյուղերն, ի տարբերություն ՀՀ տարածքում գործող բանկերի, բանկային գործունեություն և ֆինանսական գործառնություններ են իրականացնում միայն լիցենզիայի հիման վրա: Հանրապետության Կենտրոնական բանկի խորհրդին իրավունք է վերապահվում օտարերկրյա բանկի մասնաճյուղի կողմից ՀՀ տարածքում ավանդներ ընդունելու համար լրացուցիչ պայմաններ սահմանել: Այդ պայմանները պետք է միևնույնը լինեն բոլոր օտարերկրյա բանկերի, ՀՀ տարածքում գործող բոլոր մասնաճյուղերի համար:

Բացի մասնաճյուղերից առևտրային բանկերը, որպես տեղական մարմիններ՝ կարող են ունենալ ներկայացուցչություններ: Բանկի ներկայացուցչությունը բանկի՝ իրավաբանական անձի կարգավիճակ չունեցող և բանկից դուրս գտնվող առանձնացված ստորաբա-

ժանումն է, որը ներկայացնում է բանկը, ուսումնասիրում է շուկան, բանկի անունից կնքում է պայմանագրեր, իրականացնում է համանման այլ գործողություններ: Ներկայացուցչությունը բանկային գործունեություն և «Բանկերի և բանկային գործունեության մասին» ՀՀ օրենքով սահմանված ֆինանսական գործառնություններ իրականացնելու իրավունք չունի:

Հանրապետության բանկերը նրա տարածքից դուրս կարող են հիմնել ներկայացուցչություններ:

Օրենքով առևտրային բանկերին թույլատրված է ունենալ նաև գործառնական գրասենյակներ: Այդ գրասենյակները հանդիսանում են բանկի կամ նրա մասնաճյուղի, այդ թվում՝ օտարերկրյա բանկի մասնաճյուղից դուրս գտնվող առանձնացված գրասենյակ (կետ), որը գործում է բանկի կողմից տրված լիազորությունների սահմաններում և նրա անունից կարող է իրականացնել բանկային և «Բանկերի և բանկային գործունեության մասին» ՀՀ օրենքով նախատեսված ֆինանսական գործառնությունների մի մասը:

Հայաստանի Հանրապետության բանկային մարմինների կարգավիճակի առանձնահատկությունները գործնականում արտահայտված են բանկերին վերապահված իրավասության շրջանակներով:



# ԳԼՈՒԽ III

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԲԱՆԿԱՅԻՆ ԻՐԱՎՈՒՆՔԻ ԱՌԱՐԿԱՆ, ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐԸ, ՀԱՄԱԿԱՐԳԸ ԵՎ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ

### §1. Բանկային իրավունքի առարկայի և կարգավորման մեթոդի հասկացությունը

Հայաստանի Հանրապետության իրավունքի համակարգի արդիական խնդիրներից է բանկային իրավունքի առարկայի հասկացության պարզաբանումը: Խնդրի լուծման նպատակով անհրաժեշտ է ուսումնասիրության ոլորտում առանձնացնել բանկային իրավունքի կարգավորման առարկան և իրավունքի տեսության ժամանակակից նվաճումների հիման վրա պարզել նրա տեղը հանրապետությունում ձևավորվող իրավունքի նոր համակարգում:

Հիմնահարցի լուծման համար հիմք կարող են ծառայել իրավունքի բնագավառում իրավաբանների տեսական աշխատանքի արդյունքները: Չնայած այսօր զարգացած մի շարք երկրներում բանկային գործունեության բնագավառում պետությունները հարուստ փորձ են կուտակել, այնուամենայնիվ բանկային գործունեության իրավական կարգավորման ուղղությամբ դեռևս քիչ աշխատանք է կատարվել:

Մեր հանրապետությունում բանկային իրավունք առարկայի հիմնահարցերի լուսաբանման արդյունավետության վրա բացասաբար է անդրադառնում նաև իրավունքի տեսության մի շարք հարցերի դեռևս ոչ բավարար մշակված լինելը: Դա ամենից առաջ վերաբերում է ՀՀ իրավունքի համակարգի հետ կապված հիմնախնդիրներին:

Ներկայումս բանկային իրավունքի տեսական և ուսումնական գրականության հիման վրա փորձ է արվում մասնակի վերլուծության ենթարկել բանկային իրավունքի կարգավորման առարկայի և

մեթոդի հասկացության հարցը՝ նպատակ ունենալով ցույց տալ նրա տեղը հանրապետության իրավունքի ընդհանուր համակարգում:

ՀՀ բանկային իրավունքի առարկայի ինքնուրույնությունը պայմանավորված է մի շարք գործոններով, որոնց առանցքը, ինչպես ժամանակին ճիշտ նկատել են իրավագետները, հանդիսանում են հատկապես հարաբերությունների իրավական կարգավորման սահմանների շարժունակությունը, որպես բարդ դիալեկտիկական գործընթաց, որի շնորհիվ ծնունդ են առնում ինչպես նոր իրավական ինստիտուտներ, այնպես էլ իրավունքի ճյուղեր[1]:

Իրավական կարգավորման ոլորտների փոփոխությունները այսօր կարող են ընթանալ մի շարք գործոնների ուժով, որոնք պայմանական ընդհանրացումների ճանապարհով կարելի է դասակարգել երեք խմբի.

1. Իրավական կարգավորման սահմանային ոլորտների ընդլայնում ի հաշիվ նախկինում իրավական կարգավորում չունեցող սոցիալական իրականության,
2. Իրավական կարգավորման ոլորտների վերաբաշխում իրավունքի առանձին ճյուղերի միջև,
3. Սոցիալական կարգավորման ձևերի իրավական փոփոխություններ:

Հիշատակված գործոններով են պայմանավորված ինչպես իրավունքի այս կամ այն ճյուղին վերաբերող օրենսդրության զարգացումը, որպես իրավունքի դրսևորման արտաքին ձև, այնպես էլ համապատասխան իրավունքի ճյուղի ձևավորումը և ինքնուրույնությունը իրավունքի համակարգում:

Ընդհանուր ճանաչում գտած տեսական այս դրույթները հավասարապես վերաբերում են նաև բանկային իրավունքին, որը հավակնում է այսօր ՀՀ իրավունքի համակարգում ինքնուրույն հանդես գալու: Իհարկե նրա ինքնուրույնությունը հարաբերական է, քանի դեռ միջազգային չափանիշներով իրավաբանների կողմից չի

[1] Տե՛ս մանրամասն Ñ.Â. Ïîëÿíèíà, Òåîðåòè÷åñêèå ïðîáëåìû ñèñòåìû ñîâåòñêîãî çàêîíîäàòåëüñòâà, “Íàóêà”, Ì., 1979, էջ 140-141.



հաստատված նրա՝ իրավունքի հիմնական ճյուղ ճանաչելու հարցը: Ուսումնասիրությունները վկայում են, որ հայ իրականության մեջ իրավունքի ճյուղ ճանաչելու հարցը լուծվում է ոչ թե օբյեկտիվ անհրաժեշտության պահանջներից ելնելով, այլ այս կամ այն հետազոտողի ցանկությամբ, սուբյեկտիվորեն:

Այսօր մեր հանրապետության իրավաբանների և գիտամանկավարժական հիմնարկների հրապարակումներում հանդիպում ենք իրավունքի այս կամ այն ճյուղին նվիրված հետազոտություններ, որոնց հեղինակները իրավունքի, նրա համակարգի, ճյուղի, ինստիտուտի, ինչպես նաև օրենսդրության համակարգի ձևավորման սկզբունքներից և գոյություն ունեցող իրավական տեսություններից անտեղյակ՝ կոչ են անում, օրինակ, ֆինանսական իրավունքից մեխանիկորեն անջատել, բաժանել հարկային և վարկային իրավական ինստիտուտները և դրանք ճանաչել որպես իրավունքի ինքնուրույն ճյուղ՝ մոռանալով, որ ֆինանսական իրավունքի՝ որպես իրավունքի ինքնուրույն և հիմնական ճյուղի ճանաչման գործընթացը ունի հազարամյա պատմություն, որ ֆինանսական իրավունքը ընդունված է որպես դրամական միջոցների հավաքման, բաշխման և օգտագործման հարաբերությունները կարգավորող իրավունքի ճյուղ: Հետևաբար, նրանից հանել դրամական միջոցների հավաքումը և այն դարձնել առանձին-ինքնուրույն հարկային իրավունքի ճյուղ նշանակում է հիմնովին լուծարել միջազգային ճանաչում ստացած իրավունքի համակարգը, այն էլ մտացածին, երբ որևէ նոր և հիմնավոր փաստ չի բերվում: Խոսքը հավասարապես վերաբերում է նաև ֆինանսական իրավունքի հիմնարար այնպիսի իրավական ինստիտուտների, ինչպիսիք են բանկային (վարկային) կամ բյուջետային իրավահարաբերությունների զանգվածը: Կարծում ենք՝ լավագույն դեպքում հիշատակված ֆինանսաիրավական ինստիտուտները կարող են սոսկ տեսական առումով ճանաչվել որպես ֆինանսական իրավունքից սերված, հարաբերականորեն ինքնուրույն իրավունքի ճյուղեր:

Բանկային իրավունքի առարկայի ինքնուրույնությունը ըստ վերը հիշատակված սկզբունքների՝ բխում է ՀՀ Սահմանադրությու-

նից, Ազգային ժողովի և կառավարության կողմից ընդունած իրավական ակտերից, որոնք ուղղված են հանրապետության բանկային համակարգի հաստատմանը, վարկային և հաշվարկային համակարգի կատարելագործմանը, բանկերի դերի հետագա բարձրացմանը:

Բանկային իրավական հարաբերությունները կարգավորող նորմերի վերլուծությունը և հանրապետության սահմանադրության ու օրենսդրության պահանջներին դրանք համապատասխանեցնելն այսօր օրենսդրության կատարելագործման կարևոր խնդիրներից են: Նման խնդիրների հաջող լուծումով է պայմանավորված բանկային իրավունքի առարկայի ինքնուրույնությունը: Արդյունավետ կլինի վերանայել նաև իրավունքի մի շարք համալիր ճյուղերի գոյության հարցը, որոնցում եղած իրավանորմերը մի շարք այլ հարաբերությունների հետ միասին կարգավորում են հանրապետության բանկային գործունեության ոլորտը:

Այսօր, ավելի քան երբևէ, աճում և ամրապնդվում է ֆինանսավարկային մարմինների համակարգը: Այն համալրվում է քաղաքական և մասնագիտական բարձր որակավորում ունեցող այնպիսի կադրերով, որոնք իրենց ամենօրյա գործունեության ընթացքում օժանդակում և ապահովում են բանկային օրենսդրության էության ճիշտ ըմբռնումը և հասարակական կյանքում դրա անշեղ իրականացումը: ՀՀ բանկային համակարգը կյանքի է կոչված իրականացնելու Հանրապետության նախագահի, Ազգային ժողովի և կառավարության դրամավարկային քաղաքականությունը: ՀՀ Ազգային ժողովը և ՀՀ նախագահը հոգ են տանում ՀՀ Կենտրոնական բանկը բանիմաց կադրերով համալրելու համար: Լայն հնարավորություն է ստեղծվում կադրերի ընտրության և ճիշտ տեղաբաշխման, բանկային գործունեության ընթացքում ֆինանսական կարգապահության ապահովման և բանկային օրենսդրության ամրապնդման համար: Հետևաբար, բանկային գործունեության ուսումնասիրությունը ևս բանկային իրավունքի առարկայի հարցը դեռևս չլուծված խնդրի է վերածում՝ անհրաժեշտություն առաջացնելով իրավական վերլուծության ենթարկել այդ գործունեության հարուստ փորձը, վերջնա-



կան լուծում տալ այն հիմնախնդիրներին, որոնք տեղ են գտել ընդհանուր ֆինանսական և բանկային իրավունքի գիտության մեջ:

Բանկային իրավունքի առարկայի ինքնուրույնության անհրաժեշտությունը բխում է նաև իրավունքի զարգացման և կատարելագործման անհրաժեշտությունից: ՀՀ պետական մարմինների կողմից հասարակության հիմնարար հարաբերությունների վրա ներգործության միջոցների աճը հանգեցնում է իրավական հարաբերությունների ընդլայնմանը, որն, իր հերթին, հանրապետության իրավաստեղծ գործունեության ընդլայնման և կատարելագործման անհրաժեշտություն է առաջացնում: Զևավորվող իրավունքի զարգացման ընթացքում երևան են գալիս նոր, բնույթով առանձնահատուկ բանկային հասարակական հարաբերություններ, որոնք իրենց յուրահատուկ կարգավորման իրավական նորմերով ուշադրության են արժանանում, որպես նոր բանկային իրավունքի ինքնուրույն ճյուղ:

Վերոհիշյալ միտքը ամբողջությամբ վերաբերում է բանկային իրավունքին: Հասարակական հարաբերությունների ռեալ համակցությունը այսօր բանկային գործունեության բնագավառում այնքան է ընդլայնվել ու բարդացել, որ ծայրահեղ ահնրաժեշտություն է առաջացել ֆինանսական իրավունքի համակարգում ճանաչել բանկային իրավունքը որպես իրավունքի հարաբերականորեն ինքնուրույն ճյուղ: Այսպիսով, մեր հանրապետությունում ֆինանսական իրավունքում բանկային իրավունքի ինստիտուտի ինքնուրույնության հարցը իրավունքի տեսության մեջ ոչ միայն ՀՀ բանկային գործունեության պրակտիկայից բխող անհրաժեշտություն է, այլև իրավունքի համակարգման կարևորագույն պահանջներից:

Իրավունքի տեսության ոլորտում կատարված ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ բանկային իրավունքի առարկայի հասկացության և իրավունքի համակարգում նրա գրաված տեղի հարցը իրավաբանական գրականության մեջ տեսական մեծ վեճերի առարկա է: Մեր խնդիրն է՝ ֆինանսների ոլորտում ծավալվող հարաբերությունների հետազոտության միջոցով փորձել լուսաբանել բանկային իրավունքի առարկայի հասկացությունը և այն սահմա-

նազատել վարչական, քաղաքացիական և այլ իրավահարաբերու-թյուններից:

Այժմ, ավելի քան երբևէ, մեր երկրում ակտիվ աշխատանք է տարվում օրենսդրության համակարգման ուղղությամբ: Այս կա-պակցությամբ կարևոր նշանակություն է ձեռք բերել իրավունքի հա-մակարգի հետ կապված այնպիսի հարցերի ուսումնասիրությունը, ինչպիսիք են իրավունքի համակարգի միասնությունը, առանձին ճյուղերի բաժանմանը և ներքին ճյուղային կառուցվածքին վերաբե-րող հարցերը:

Իրավունքի մի խումբ տեսաբաններ ժամանակին գտնում էին, որ իրավունքի համակարգը կազմված է իրավունքի ճյուղային երկու խմբերից՝ ա/ հիմնական և բ/ համալիր: Հիմնականը պետական, վարչական, քաղաքացիական, քրեական իրավունքի ճյուղերն են: Իրավունքի համալիր ճյուղերը պարունակում են այնպիսի վար-քագծի կանոններ, որոնք միաժամանակ վերաբերում են ինչպես իրավունքի հիմնական ճյուղերին, այնպես էլ ներքին կարգավոր-ման տեսակետից ունեն միայն իրենց ներհատուկ կարգավորման առարկա: Իրավաբանական գրականության մեջ շատ հեղինակներ, պաշտպանելով համալիր իրավունքի ճյուղի տեսությունը՝ նպա-տակ ունեն հասնել իրավունքի գիտականորեն հիմնավորված հա-մակարգմանը: Այսպիսի ընդհանրացման հետևանքով իրավունքի մի շարք տեսաբաններ, ժխտելով համալիր իրավունքի ճյուղերում առարկայական միասնության առկայությունը, իրավունքի ընդհա-նուր համակարգից դուրս էին մղում օբյեկտիվորեն գոյություն ունեցող մի շարք համալիր իրավունքի ճյուղերը[1]:

Ժամանակի հրամայականով այսօր, բանկային իրավունքը, որ-պես հարաբերականորեն ինքնուրույն իրավունքի ճյուղ, ամբողջո-վին հանգում է «համալիր իրավունքի» ճյուղերի տեսության

[1] Տե'ս մանրամասն, Õàëôèíà Ð.Î., Ê âîïðîñó î ïðåäìåòå è ñèñòåìå ôèíàíñîâîãî ïðàâà, (Ñáîðíèê “Âîïðîñû ñîâåòñêîãî àäìèíèñòðàòèâíîãî è ôèíàíñîâîãî ïðàâà”). Èçä.-âî ÀÍ ÑÑÑÐ, Ì., 1962; Ðîâåíñêèé Å.À., Îñíîâíûå âîïðîñû òåîðèè ñîâåòñêîãî ôèíàíñîâîãî ïðàâà, Ì., 1960; Áðàòóñü Ñ.Ì., Ïðåäìåòû è ñèñòåìà ñîâåòñêîãî ãðàæäàíñêîãî ïðàâà, էջ, 1960.



դրույթներին: Այն ծնունդ է առնում ֆինանսական իրավունքից, գործնականում իրեն զգացնել է տալիս քաղաքացիական-պայմա-նագրային իրավահարաբերություններում և բանկային գործու-նեության պրոցեսում ծագող մեծածավալ հարաբերությունների իրավական կարգավորման ուժով ձգտում է առանձնանալ որպես ինքնուրույն իրավունքի ճյուղ:

Ինչպես վկայում է բանկային օրենսդրության իրացման փորձը, բանկային իրավունքի կարգավորման առարկան կազմում են բան-կային գործունեությունը և վարկահաշվարկային հարաբերություն-ները, որոնց զգալի մասը ծագում է վարկի, հաշվարկի կամ ֆինան-սական լիզինգի կապակցությամբ կնքված քաղաքացիա-իրավա-կան պայմանագրերից: Հետևաբար, բանկային իրավունքին, որպես համալիր և հարաբերականորեն ինքնուրույն իրավունքի ճյուղին ներհատուկ են ֆինանսական և քաղաքացիական իրավունքի կար-գավորման առարկան կազմող դրամական և գույքային իրավահա-րաբերությունները: Այսպիսով, բանկային իրավունքի կարգավոր-ման առարկան կազմում են այն բազմածավալ հասարակական հա-րաբերությունները, որոնք ծագում են բանկային համակարգի մարմինների գործունեության հետևանքով:

Բանկային իրավունքի առարկայի հասկացության պարզաբա-նումից հետո անհրաժեշտ է բացահայտել նրա կարգավորման մե-թոդը, առանց որի իրավագիտության մեջ խոսք չի կարող լինել բանկային իրավունքի՝ որպես իրավունքի ճյուղի մասին: Իրա-վունքի ցանկացած ճյուղի կարգավորման մեթոդ ասելով պետք է հասկանալ յուրահատուկ եղանակների, միջոցների, հնարքների համակարգ, որոնց միջոցով իրավունքը ներգործում է հասարա-կական հարաբերությունների վրա՝ սահմանելով մասնակիցների վարքագծի կանոնները, նրանց վերապահելով իրավունքներ և նրանց վրա դնելով պարտականություններ[1]:

[1] Տե'ս մանրամասն, Â. Ä. Ñîðîêèí, Ìåòîä ïðàâîâîãî ðåãóëèðîâàíèÿ (òåîðåòè÷åñêèå ïðîáëåìû), “Þðèäè÷åñêàÿ ëèòåðàòóðà”, Ì. 1976, ñòð. 84; Ãðàæäàíñêîå ïðàâî, ×àñòü ïåðâàÿ, Ì., “Þðèñò”, 1977, էջ 15.

Ժամանակակից իրավագիտության մեջ իրավունքի ճյուղերի կարգավորման մեթոդների կապակցությամբ ևս արտահայտվում են տարբեր կարծիքներ: Ընդհանրացնելով ժամանակին և այսօր արտահայտված կարծիքները՝ կարելի է ասել, որ իրավական կարգավորման մեթոդներն ունեն երկու ուղղություն.

1) Իրավունքի յուրաքանչյուր ճյուղ ունի իր սեփական մեթոդը,
2) իրավունքի բոլոր ճյուղերը կիրառում են միասնական իրավունքի միջոցներ[1]:

Բանկային իրավահարաբերությունների կարգավորման պրակտիկան խոսում է այն մասին, որ իրավական այս ինստիտուտին ներհատուկ են իրավական կարգավորման միասնական մեթոդները, որոնք դրսևորվում են իշխանակազմակերպական, արգելքների և թույլատվության եղանակների կիրառմամբ: Վերջիններս իրենց ամբողջության մեջ կազմում են հասարակական հարաբերությունների վրա իրավական ներգործության բանկային միջոցների բովանդակությունը: Եթե իրավունքի տարբեր ճյուղեր կիրառում են այդ միջոցներից միայն մեկը, ապա բանկային իրավունքում հիշատակված բոլոր միջոցները կիրառվում են համատեղ, երբեմն նույնիսկ մեկ իրավահարաբերություն կարգավորելիս, օրինակ՝ վարկավորում, հաշվարկներ իրականացնելիս:

Ավանդաբար իրավունքի բնագավառում օգտագործվող հասարակական հարաբերությունների կարգավորման իրավաբանական եղանակները երկուսն են՝

1) իմպերատիվ կամ կատեգորիկ,
2) դիսպոզիտիվ:

Իմպերատիվ մեթոդը կիրառվում է վարչական - ֆինանսական իրավունքի ճյուղերում, որը ենթադրում է իրավահարաբերության կողմերի անհավասարություն: Դիսպոզիտիվ մեթոդը սահմանում է վարքագծի ընտրության հնարավորություն, որին ներհատուկ է իրավահարաբերության կողմերի հավասարությունը: Այսօր կարգավորման դիսպոզիտիվ մեթոդը կարելի է ասել, որ բնորոշ է մաս-

[1] Տե'ս մանրամասն, À.Í. Àëåõèí, À.À.Êàðìîëèöêèé, Þ.Ì.Êîçëîâ, Àäìèíèñòðàòèâíîå ïðàâî Ðîññèéñêîé ôåäåðàöèè, Ì., 1997, էջ 31-37.



նավոր իրավունքի ճյուղերին, օրինակ՝ քաղաքացիական, աշխատանքային, ընտանեկան:

Այսպիսով, որպես բանկային իրավունքի առանձնահատկություն, բանկային գործունեության իրականացման ընթացքում ծագող հասարակական հարաբերությունները կարգավորվում են ինչպես դիսպոզիտիվ, այնպես էլ իմպերատիվ բնույթի իրավական ներգործության միջոցներով:

Բանկային իրավունքի, որպես ինքնուրույն իրավունքի ճյուղի հիմնահարցը իրավագիտական հրապարակներում սկսեց ակտիվանալ 1990-ական թվականներին՝ կապված բանկային գործարքների նոր տեսակների և թվաքանակի աճի հետ: Ժամանակին ձևավորված իրավական պետություններում երբեք փորձ չի արվել գիտականորեն լուծել բանկային իրավունքի առարկայի, կարգավորման մեթոդի և հատկապես հասկացությանը վերաբերող հիմնահարցեր՝ չնայած առանձին իրավաբան-գիտնականների այս թեմայով կատարված հետազոտություններում փորձեր արվել են բնութագրել բանկային իրավունքը որպես սոցիալական իրականության արտահայտություն:

Արտասահմանյան մի շարք իրավաբաններ իրենց աշխատություններում բանկային իրավունքը համարել են ֆինանսական իրավունքի ենթաճյուղ, իսկ ֆրանսիացի իրավաբաններ Կ.Գավալդը և Ժ.Ստուֆլեն 1974թ. Փարիզում համատեղ հրատարակած իրենց «Բանկային իրավունք» աշխատության մեջ նշում են, որ բանկային իրավունքի օբյեկտ հանդիսանում է բանկային մարմինների իրավական կարգավիճակի, բանկային գործունեության և գործառնությունների իրավական կարգավորումը[1]: Հետագայում այս հեղինակները վերանայելով իրենց ուսմունքը բանկային իրավունքի մասին՝ 1990թ. հրատարակած «Վարկային իրավունք» աշխատության մեջ ավելի են ընդլայնել բանկային իրավունքի հասկացությունը ի հա-

[1] Տե'ս մանրամասն, Ð.Î. Õàëôèíà, Ïðàâîâîå ïîëîæåíèå Ãîñóäàðñòâåííîãî áàíêà ÑÑÑÐ, Ì., 1947; È.Ñ.Ãóðåâè÷, Î÷åðêè ñîâåòñêîãî áàíêîâñêîãî ïðàâà, Ë., 1952, էջ 16; Garaldo C., Stoufflet J. Droit de la bangue, Paris, 1974, p. 6.

շիվ բանկային գործունեություն իրականացնող վարկային մարմին-ների[1]:

Գիտական ուսումնասիրությունների արդյունքում, երբ ֆինան-սաիրավական իրավահարաբերությունների զանգվածից բավարար չափով սահմանազատված են բանկային գործունեության գործըն-թացում ծագող հարաբերությունները, բանկային իրավունքը, որ-պես հարաբերականորեն ինքնուրույն իրավունքի ճյուղ, կարելի է ընդունել որպես բանկային իրավանորմերի համակցություն, որոնք սահմանված են պետական իշխանության մարմինների կողմից և ուղղված բանկային հասարակական հարաբերությունների կարգա-վորմանը, ծագում են ինչպես բանկային համակարգի սահմանման, այնպես էլ բանկային գործունեության գործընթացում՝ նպատակ հետապնդելով ապահովել անհատի և սեփականության տարբեր ձևերի վրա հիմնված կազմակերպությունների դրամական և գույ-քային պահանջները:

[1] Տե'ս, Gavalda C., Stoufflet J. Droit du credit 1-cere livre. Paris, 1990, p.2.



## §2. Բանկային իրավունքի տեղը ՀՀ իրավունքի համակարգում, կապը իրավունքի մյուս ճյուղերի հետ

Հայրենական իրավաբանական գրականության մեջ պատշաճ մշակում չի ստացել Հայաստանի Հանրապետության իրավունքի համակարգում բանկային իրավունքի տեղի հարցը: Ժամանակին և այսօր արտահայտված իրարամերժ տեսակետների վերլուծություն-ները հնարավորություն կընձեռեն պարզելու բանկային իրավունքի տեղը իրավունքի համակարգում:

Այսպես, իրավագետների մի մասն այն կարծիքին է, որ բանկա-յին իրավունքը հանդես է գալիս որպես ինքնուրույն իրավունքի ճյուղ, իսկ երկրորդ խումբը գտնում է, որ բանկային իրավունքը պայմանավորված է սահմանադրական, վարչական, ֆինանսական և քաղաքացիական իրավունքի նորմերով ու սկզբունքներով: Բան-կային իրավունքի մի շարք հիմնահարցեր վերջին տարիներին իրենց լուծումն են ստացել իրավաբանական գրականության մեջ: Իրավաբան հեղինակների մի մասը պաշտպանում է ժամանակին առաջ քաշված «համալիր իրավունքի» տեսությունը, համաձայն որի բանկային իրավունքը պետք է դիտել ոչ թե որպես իրավունքի ինքնուրույն ճյուղ, այլ որպես իրավունքի համալիր ճյուղ, որը պա-րունակում է սահմանադրական, վարչական, ֆինանսական, ինչպես նաև քաղաքացիական իրավունքի նորմեր՝ կարգավորելով բանկա-յին գործունեության տարբեր կողմերը:

Իրավագետ Ի.Ս.Գուրևիչը, հակադրվելով ֆինանսական իրա-վունքը որպես իրավունքի ինքնուրույն ճյուղ ընդունող տեսության կողմնակիցներին, գրում է. «Ֆինանսական իրավունքը որպես իրա-վունքի ինքնուրույն ճյուղի տեսության կողմնակիցների հիմնական սխալն այն է, որ վերջիններս անտեսում են ֆինանսական իրավա-հարաբերությունները կարգավորող նորմերի «կոմպլեքսային բնույ-թը»: Ի.Ս.Գուրևիչը իր տեսակետը հիմնավորելու համար վկայակո-չում է այն փաստը, համաձայն որի «բյուջետային և հարկային իրա-

վունքը համալրվում է պետական և վարչական իրավունքի նորմերով, իսկ վարկավորումը և հաշվարկները կատարվում են պետական բանկի միջոցով, որի գործունեության ընթացքում ծագած իրավահարաբերությունները կարգավորվում են քաղաքացիական, ֆինանսական և վարչական իրավունքի նորմերով»: Այսպիսի ընդհանրացման միջոցով Ի.Ս.Գուրևիչը անում է այն հետևությունը, որ բանկային իրավունքը, որպես իրավունքի ինքնուրույն ճյուղ, գոյություն չունի, դա պարզապես ֆինանսական իրավունքի ենթաճյուղի իրական օրինակ է[1]:

Հիշատակված տեսությունները ժամանակի առումով թերևս ավելի հին են, քան բանկային իրավունքի՝ որպես իրավունքի ինքնուրույն ճյուղի ձևավորման տեսությունը, ուստի բանկային իրավունքի կարգավորման մեթոդի իմաստը պարզաբանելու և ճիշտ ընկալելու համար նպատակահարմար է անդրադառնալ իրավական կարգավորման մեթոդի՝ Մ.Գ. Շարգարոդսկու և Օ.Ս.Իոֆեի տեսություններին, որոնք պարզություն կմտցնեն նոր ձևավորվող իրավունքի այս կամ այն ճյուղի ինքնուրույնությունը ճանաչելու հարցում[2]:

Այն պնդումները, թե բանկային իրավունքը չի կարող դառնալ իրավունքի ինքնուրույն ճյուղ, քանի որ հանպատրաստից ամբողջովին օգտագործում է ֆինանսական և քաղաքացիական իրավունքի ճյուղերի մեթոդը, ինչպես նշում են վերը հիշատակված հեղինակները՝ նույնպես հիմնավոր չեն հնչում, քանի որ բանկային գործունեությունը իրավական կարգավորում է ստանում ոչ միայն ֆինանսական, այլև սահմանադրական, քաղաքացիական և ֆինանսական իրավունքի ճյուղերի մեթոդով: Հետևաբար, Մ.Գ. Շարգարոդսկու և Օ.Ս. Իոֆեի առաջ քաշած վարչական և ֆինանսական իրավունքի միասնության հարցը դեռևս որոշիչ և բավարար չէ իրա-

[1] Տե՛ս մանրամասն, È.Ñ. Ãóðåâè÷, Î÷åðêè ñîâåòñêîãî áàíêîâñêîãî ïðàâà, Ë., 1952, էջ 16, 26.
[2] Տե՛ս մանրամասն, Ì.Ä. Øàðãîðîäñêèé, Î.Ñ. Èîôôå, Î ñèñòåìå ñîâåòñêîãî ïðàâà, "Ñîâåòñêîå ãîñóäàðñòâî è ïðàâî", 1957, N 6, ñòð. 106-110; Ì.È. Ïèñêîòèí, Ñîâåòñêîå áþäæåòíîå ïðàâî, "Þðèäè÷åñêàÿ ëèòåðàòóðà", Ì., 1971, էջ 44-45.



վունքի այս երկու ճյուղերի նույնացման, առավել ևս բանկային իրավունքի, որպես ենթաճյուղի իրավունքի համակարգում գրաված տեղի հարցի լուսաբանման համար:

Իրավաբանական գրանության մեջ իրավագետների մեկ այլ խումբ այն կարծիքն է պաշտպանում, որ բանկային իրավունքը, որպես կոմպլեքսային իրավունքի ճյուղի դասական օրինակ, պարունակում է նաև սահմանադրաիրավական նորմեր:

Պատշաճ հիմնավորումից զուրկ է նաև այս տեսությունը, քանի որ սահմանադրական իրավունքը միայն սահմանում է պետության բանկային գործունեության հիմնական սկզբունքները, մինչդեռ բանկային իրավունքը հենվելով սահմանադրական նորմերի նախանշվող ելակետային դրույթների վրա՝ մեծ մասամբ այդ դրույթներն անմիջականորեն արտահայտում է իր նորմերում և պետության բանկային գործունեության ընթացքում դրսևորվող վարկային, հաշվարկային ու բանկային այլ գործունեությունից բխող հարաբերության շրջանակում հանդես է գալիս որպես այդ հարաբերությունների իրավական կարգավորիչ:

Այսօր իրավագիտության տեսության մեջ խիստ վիճահարույց են նաև ֆինանսաբանկային և քաղաքացիական իրավունքի փոխադարձ կապի և բանկային իրավունքի ինքնուրույն գոյության հարցերը: Քաղաքացիական իրավունքի տեսաբանները ֆինանսաբանկային և քաղաքացիական իրավունքի փոխհարաբերությունների եզրը համարում են իրենց բնույթով ընդհանուր գույքային-դրամական հարաբերությունները, որոնք մեկ ընդհանրության մեջ կազմում են քաղաքացիական և բանկային իրավունքի կարգավորման առարկան: Այս ընդհանրացումներից զատ, վերջիններս խիստ առանձնահատուկ են, որոնցով սահմանազատվում են միմյանցից: Այս հակասություններով է, որ իրավագետ Տ.Բարսեղյանը իր «ՀՀ քաղաքացիական իրավունք» դասագրքում առավել քան հիմնավոր և համոզեցուցիչ լուսաբանում է հիշատակված իրավունքի ճյուղերի փոխկապվածության և իրավական կարգավորման առանձնահատկությունները՝ նշելով, որ իրավահարաբերության կողմերի հավա-

սարության և կամահայտնության ազատ դրսևորման բացակայությունն է ընկած ֆինանսաբյուջետային իրավունքի և քաղաքացիական իրավունքի նորմերով կարգավորվող գույքային հարաբերությունների սահմանազատման հիմքում: Այնուհետև հետագա շարադրանքում միանգամայն հիմնավոր հանգում է այն եզրակացության, որ հիշյալ իրավունքի ճյուղերի փոխհարաբերություններում գործում են ֆորմուլյար (տիպապայմանագրային) իրավունքի դրույթները՝ հարաբերությունների մեջ մտնելու առանց հարաբերության պայմանների փոփոխման իրավունքի, վկայակոչելով բանկային իրավահարաբերություններին ներհատուկ այնպիսի առանձնահատկություններ, որոնց ուժով անձն իրավունք ունի բանկային մարմնից վարկ վերցնել, բայց վարկի չափը, գանձվող տոկոսները, վերադարձման ժամկետները և մյուս պայմանները փոփոխելու իրավունք չունի: Ինչպես տեսնում ենք, այս հարաբերություններում առկա է կողմերի անհավասարությունը, որի պատճառով էլ նման գույքային հարաբերությունները կարգավորվում են ոչ թե քաղաքացիական իրավունքի, այլ ֆինանսական իրավունքի նորմերով[1]: Այս հիմնավորման մեջ մեզ թվում է՝ պետք է նկատի ունենալ բանկային իրավունքը որպես ֆինանսական իրավունքի ենթաճյուղ:

Վերջին շրջանում բանկային իրավունքի վերաբերյալ հրապարակվեցին տարբեր գիտական հոդվածներ, ուսումնական դասագրքեր, որոնք չնայած կրում են «Բանկային իրավունք» անունը, այնուամենայնիվ, այդ հրապարակումներում խոսք չի գնում բանկային իրավունքի, որպես իրավունքի ճյուղի կամ ինստիտուտի, նրա հասկացության, իրավական հարաբերությունների և նորմերի մասին:

Այսպես, իրավագետներից Լ.Եֆիմովան այն կարծիքին է, որ բանկային իրավունքը ո՛չ իրավունքի ինքնուրույն ճյուղ է, ո՛չ էլ ենթաճյուղ է, քանի որ չունի հստակեցված կարգավորման առարկա և մեթոդ: Այն ըստ էության նորմատիվ ակտերի համակցություն է,

---

[1] Տե'ս մանրամասն Բարսեղյան Տ.Կ., Հայաստանի Հանրապետության քաղաքացիական իրավունք (դասագիրք բուհերի համար), առաջին մաս, ԵՊՀ, Ե., 2000, էջ 10:



որոնք կարգավորում են վարկային և բանկային մարմինների կազմակերպման և գործունեության կարգը, նրանց կողմից իրականացվող բանկային գործառույթները[1]:

Գրեթե նույնաբովանդակ վերլուծության ենք հանդիպում Ն.Էրիաշվիլու «Բանկային իրավունք» դասագրքում, որտեղ հեղինակը նախորդ բնութագրին ավելացնում է «բանկերի հանրային և հաճախորդների հետ մասնավոր հարաբերությունների բանկային իրավական կարգավորումը»[2] հասկացությունը, որն ըստ էության ոչինչ չի փոխում նախկին հեղինակի բանկային իրավունքի հասկացության բնութագրից՝ վկայակոչելով միայն իրավահարաբերության սուբյեկտներին:

Վերջին շրջանի հրապարակումներից միայն «Ֆինանսական և բանկային իրավունք» բառարան-ուղեցույցի հեղինակներն են, որ բանկային իրավունքը մասամբ համարելով ֆինանսական իրավունքի ենթաճյուղ՝ գտնում են, որ վերջինս առայժմ հանդես է գալիս ոչ թե իրավունքի ճյուղի, այլ բանկային օրենսդրության տեսքով[3]:

Բանկային իրավունքի, որպես իրավունքի ինքնուրույն ճյուղի կապակցությամբ իրավաբանական գրականության մեջ ժամանակին և այսօր արտահայտված տեսությունների վերլուծությունները վկայում են, որ բանկային իրավունքը թե՛ որպես օրենսդրություն և թե՛ իրավունքի ճյուղ արդեն իր տեղը գտել է գործող սոցիալական իրականության պայմաններում:

Տարբեր կարծիքները ընդհանրացնելով, պետք է ճիշտ համարել այն տեսաբաններին, ովքեր բյուջետային, հարկային և բանկային իրավունքը դիտում են որպես ֆինանսական իրավունքի ենթաճյուղ: Այս իրավագետները իրենց դիրքորոշումը հիմնավորում են նրանով, որ այն հասարակական հարաբերությունները, որոնք ծա-

---

[1] Åôèìîâà Ë.Ã., Áàíêîâñêîå ïðàâî, Èçä. “ÁÅÊ”, Ì., 1994, էջ 4-5:
[2] Ýðèàøâèëè Í.Ä., Áàíêîâñêîå ïðàâî, “Çàêîí è ïðàâî”, Ì., 2002, էջ 6:
[3] Ôèíàíñîâîå è áàíêîâñêîå ïðàâî (ñëîâàðü-ñïðàâî÷íèê), ÈÍÔÐÀ-Ì; Ì., 1997, էջ 23:

գում են բանկային համակարգի և նրա առանձին օղակների գործունեության ընթացքում, կազմում են ֆինանսաիրավական հարաբերությունների առանձին՝ իր էությամբ բոլորովին նոր հասարակական հարաբերությունների մի համակարգ: Հետևողականորեն զարգացնելով իրենց տեսակետը՝ իրավագետները հանգում են այն եզրակացության, որ վերը նշված հասարակական հարաբերությունները կարգավորող իրավունքի նորմերն իրենց ամբողջությամբ կազմում են հարաբերականորեն ինքնուրույն իրավունքի ճյուղ, և այդ հասարակական հարաբերությունները կարգավորող նորմերի համակցությունն էլ կազմում է ֆինանսական իրավունքի ենթաճյուղ, որն այսօր համարվում է բանկային իրավունք:



## §3. Բանկային իրավունքի սկզբունքները

Բանկային իրավունքի սկզբունքներն արտացոլում են նրա, որպես հարաբերականորեն ինքնուրույն ճյուղի դրսևորման ելակետային դրույթներ, որոնք արտահայտում են բանկային իրավունքին ներհատուկ ֆինանսական և քաղաքացիական իրավունքի էական առանձնահատկությունները և հասարակական ու պետական կյանքի պահանջներին համապատասխան նպատակաուղղվածությունը: Բանկային իրավունքի սկզբունքները էապես տարբերվում են իրավունքի մյուս ճյուղերի սկզբուքներից, և պատահական չէ, որ այս հարցում իրավաբանական գրականության մեջ միասնական տեսակետ գոյություն չունի: Իրավագետների մի մասն այն կարծիքին է, որ սկզբունքները հիմնականում բանկային նորմ-սկզբուքների միջոցով ամրապնդում և արտահայտում են պետության և հատկապես բանկային համակարգի մարմինների զուտ վարկահաշվարկային քաղաքականությունը: Իրավագետների մյուս խմբի կարծիքով դրանք արտացոլում են ոչ միայն բանկային գործունեությունը, այլև առնչվում են պետության գործունեության բոլոր ձևերին և գործնական կիրառում ստանում ինչպես պետաիրավական, այնպես էլ ֆինանասական և քաղաքացիաիրավական նորմերի միջոցով:

Բանկային իրավունքի գիտության մեջ բացակայում է հեղինակների միասնությունը սկզբունքներ հասկացության և համակարգի սահմանման հարցում: Հեղինակների մի մասը բանկային գործունեությունը համարելով ձեռնարկատիրական գործունեության մի տեսակ՝ բանկային իրավունքի սկզբունքները բաժանում են երկու մեծ խմբի: Առաջին խումբ սկզբուքնները ամբողջովին բխում են քաղաքացիական իրավունքից, որտեղ բնութագրում և ուղղորդում են ձեռնարկատիրական գործունեությունը: Երկրորդ խումբ սկզբունքները բխում են բանկային գործունեությունից և պայմանավորված են նրա առանձնահատկություններով:

Առաջին խմբին պատկանող սկզբունքները սահմանում են ձեռնարկատիրական գործունեության սուբյեկտների սահմանադրական կարգավիճակը, իսկ երկրորդ խումբ սկզբունքները՝ բանկային համակարգի մարմինների կազմակերպման, գործունեության և

զարգացման ուղղությունները: Երկրորդ խմբին պատկանող սկզբունքները հեղինակները բաժանում են ենթախմբերի.

1. Բանկային համակարգի մարմինների կազմակերպաիրավական կառուցվածքը սահմանող սկզբունքներ,
2. Սկզբունքներ, որոնք սահմանում են բանկային գործունեության կազմակերպումը բանկային համակարգի կառավարման գործընթացում[1]:

Ձեռնարկատիրական գործունեություն իրականացնող սուբյեկտների սահմանադրական կարգավիճակը արտացոլող սկզբունքներ են՝ սեփականության անձեռնմխելիությունը, տնտեսական գործունեության ազատությունը, մրցակցության խրախուսումը և մենաշնորհային դիրքի ամրապնդման, անբարեխիղճ մրցակցության արգելումը, միասնական տնտեսական շրջանակում բանկային գործունեության իրականացումը, բանկային իրավունքի բոլոր սուբյեկտների շահերի ներդաշնակությունը:

Բանկային իրավունքի երկրորդ խումբ սկզբունքները, որոնք սահմանում են բանկային համակարգի մարմինների կազմակերպման, գործունեության և զարգացման ուղղությունները, արտահայտում են բանկային մարմինների երկմակարդակ կազմակերպումը, Կենտրոնական բանկի անկախությունը պետական իշխանության այլ մարմիններից, բանկային համակարգի մարմինների պետական կառավարման և ինքնակառավարման զուգակցումը, պետական իշխանության և տեղական ինքնակառավարման մարմինների միջամտության անթույլատրելիությունը վարկային մարմինների գործունեությանը, վարկային մարմինների բացառիկ իրավասությունը բանկային գործունեության կարգավորումը: Սակայն, բանկային իրավունքի սկզբունքների նման ծավալով լուսաբանումները, կարծում ենք, մտացածին են և ունեն մեխանիկական բնույթ, հեռու են հիմնադրույթներ լինելուց, որպեսզի դրանց ազդեցությունը հավասարապես կիրառելի լիներ բանկային գործունեության և գործառ-

[1] Տե՛ս մանրամասն Òîñóíÿí Ã.À., Âèêóëèí À.Þ., Ýêìàëÿí À.Ì., Áàíêîâñêîå ïðàâî Ðîññèéñêîé ôåäåðàöèè, îáùàÿ ÷àñòü, Ì., Þðèñò, 1999, էջ 41-42:



նությունների գործընթացում: Այսպես, օրինակ, բանկային համակարգի մարմինների պետական կառավարման և ինքնակառավարման զուգակցումը որևէ ընդհանրություն չունի բանկային գործունեության, թեկուզ նրա որևէ գործառնության իրականացման հետ: Վերջինս ըստ էության ընդհանուր պետական կառավարման սկզբունք է՝ ներհատուկ կառավարման մարմինների ցանկացած համակարգին: Ինչ վերաբերում է պետական իշխանության և տեղական ինքնակառավարման մարմինների միջամտության անթույլատրելիությանը որպես ինքնուրույն սկզբունքի, վարկային մարմինների գործունեությանը, ապա դա ավելորդ է, քանի որ լայն իմաստով այն բխում է Կենտրոնական բանկի պետական իշխանության այլ մարմիններից անկախ լինելու սկզբունքից:

Կարծում ենք՝ սկզբունք պետք է համարել բանկային գործունեության այն հիմնարար օրինաչափությունները, որոնք որպես երևույթ ունեն սիստեմատիկ կրկնվելու հնարավորություններ: Այս մոտեցմամբ են բանկային իրավունքի սկզբունքները հիմնադրույթների տեսքով ամրապնդված ինչպես ՀՀ Սահմանադրության, այնպես էլ «ՀՀ Կենտրոնական բանկի» և «Բանկերի և բանկային գործունեության մասին» օրենքներում:

Հանրապետության բանկային գործունեության սահմանադրական ամրապնդման հիմնադրույթին են վերաբերում միասնական դրամավարկային քաղաքականության և դրամական համակարգի, բանկային համակարգի կայունության իրագվելիության, վճարունակության, սոցիալական նպատակաուղղվածության, պլանայնության, բանկային գործունեության հարաբերությունների մասնակիցների հավասարության ճանաչման, բանկային գործունեության պայմանագրերի ազատության, բանկային գործունեության ընթացքում խախտված իրավունքների դատական պաշտպանության և քաղաքացիների սեփականության անձեռնամխելիության, տնտեսավարող սուբյեկտների բանկային գործունեությանը մասնակցելու, ինչպես նաև օրինականության և բանկային գործունեության հրապարակայնության սկզբունքները:

Հանրապետության սահմանադրության 77, 83 և 89-րդ հոդվածները հանձին ԱԺ-ին և կառավարությանը վերապահած լիազորությունների երկրի տարածքում ապահովում են միասնական ֆինանսական քաղաքականություն պետական բյուջեի, ֆինանսատնտեսական, վարկային, հարկային, նաև օտարերկրյա պետություններից և միջազգային կազմակերպություններից ստացված փոխառությունների ու վարկերի օգտագործման ոլորտում: Դրամական էմիսիայի իրավունքը բացառապես վերապահված է հանրապետության Կենտրոնական բանկին, որը և սահմանում է դրամական համակարգը, վերահսկում դրամական շրջանառությունը:

Սոցիալական նպատակաուղղվածությունը իր էությամբ կազմում է ֆինանսական իրավունքի սկզբունքների առանցքը: Նրա մեկնարկը սկսվում է ՀՀ սահմանադրության առաջին հոդվածից, ըստ որի «Հայաստանի Հանրապետությունը սոցիալական պետություն է»: Հայաստանի Հանրապետության, որպես սոցիալիստական պետության ներքին և արտաքին քաղաքականությունը ուղղված է նրա քաղաքացիների համար արժանապատիվ կյանքի պայմանների ստեղծմանը, քաղաքացի անհատի ազատ ու բազմակողմանի զարգացմանը:

Սոցիալական նպատակաուղղվածության սկզբունքը արտահայտվում է հանրապետության սահմանադրությամբ և օրենքներով քաղաքացիներին վերապահված այնպիսի իրավունքներով, ինչպիսիք են բանկային սպասարկման տարբեր ծառայություններից օգտվելը վարկ ստանալու, ավանդների կանխիկ և ոչ կանխիկ հաշվարկներ կատարելու, աշխատանքային և սոցիալական նպաստներ ու կենսաթոշակներ ստանալու միջոցով: Բանկային գործունեության իրականացման միջոցով պետությունը նպաստում է քաղաքացիների խնայողությունների և այլ դրամական եկամուտների ձևավորմանը և այն նպատակաուղղում քաղաքացիների սոցիալական պահանջների բավարարմանը:

Բանկային իրավունքի մյուս սկզբունքը բանկային գործունեության իրականացման պլանայնությունն է, որն արտահայտվում է հանրապետական և տեղական նշանակության տնտեսական ու



սոցիալական զարգացման ծրագրերում և պլաններում առաջ քաշված միջոցառումների վարկավորմամբ: Պլանայնության սկզբունքը, անկախ սեփականության ձևից, լայնորեն կիրառում են գրեթե բոլոր տնտեսավարող սուբյեկտները և քաղաքացիները բանկային տարբեր ծառայություններից օգտվելիս: Պլանայնության սկզբունքը ուղղակի և անմիջական արտացոլում է ստանում հանրապետական և օտարերկրյա պետություններից և միջազգային կազմակերպություններից ստացած փոխառությունների ու վարկերի ստացման և օգտագործման գործընթացում:

Շուկայական հարաբերությունների պայմաններում պլանայնության սկզբունքը՝ կապված ապրանքների նկատմամբ ձևավորվող գների հասարակական առաջարկից ու պահանջարկից, վերափոխվում է բանկային խնդրի՝ նպաստելով արժեքի օրենքին, արտացոլելով ապրանքի միավորի արտադրության վրա ծախսված հասարակական ճիշտ պլանավորված անհրաժեշտ աշխատանքը և շուկայում դրսևորվելով որպես ապրանքափոխանակություն, մատուցած ծառայությունների արժեքային արտահայտություն: Կախված շուկայական հարաբերությունների բնույթից, պլանավորման սկզբունքը նպաստում է ապրանքային արտադրության տեսականու ճիշտ և տևական ժամանակի համար բանկային վարկի տեսակի ճիշտ ընտրությանը:

Պլանայնության սկզբունքը լայնորեն կիրառվում է հասարակական կյանքի և արտադրության բոլոր ոլորտներում, հատկապես հանրապետության ֆինանսների և դրամական շրջանառության կազմակերպման պրոցեսում, որի գործադրման արդյունքների հիման վրա կազմվում է հանրապետության դրամարկղային կարգավորման ծրագիրը:

Բանկային իրավունքի, որպես իրավունքի ենթաճյուղի էությունը դրսևորվում է պետության կողմից իրականացվող բանկային գործի հրապարակայնությամբ, որը թափանցելի է, գտնվում է ազգաբնակչության անմիջական հսկողության ներքո և հիմնականում իրականացվում է նրա մասնակցությամբ: Այս սկզբունքի արտահայտման իրական պատկերն այն է, որ օրենսդիր և բանկային մարմինների

կողմից ընդունված յուրաքանչյուր իրավական ակտ՝ նախագծային վիճակից մինչև ընդունման ու հրապարակման պահը մամուլի և լրատվական ծառայությունների միջոցով հրամցվում է ազգաբնակչությանը: Հանրապետության բանկային գործունեությունը արտացոլող այն իրավական ակտերը, որոնք հատկապես շոշափում են հանրապետության քաղաքացիների շահերը, նախապես իրազեկվում են: Այսպիսի իրական ակտերի թվին է դասվում վերջերս ԱԺ-ի կողմից ընդունված «Ավանդների երաշխավորվածության մասին» օրենքը:

Հանրապետության բանկային իրավունքի խնդիրը ինչպես բանկային մարմինների, այնպես էլ իրավաբանական անձանց և քաղաքացիների կողմից բանկային գործունեության ընթացքում օրինականության պահանջների կատարումն է: Օրինականության պահանջները հիմնականում արտացոլվում են բոլոր տնտեսական սուբյեկտների և քաղաքացիների կողմից բանկային պայմանագրերի կատարման ժամկետների պահպանման, բանկային վարկերի նպատակային օգտագործման և վերջիններիս վերադարձման, կազմակերպությունների միջև սահմանված բանկային հաշվարկների կանոնների ճշգրիտ իրականացման ժամանակ:

Բանկային իրավական մյուս սկզբունքները վերաբերում են պետության բանկային գործունեության առանձին ոլորտներին, ունեն մասնավոր բնույթ, ներհատուկ են բանկային իրավունքին՝ որպես ենթաճյուղի, և միավորում են ֆինանսական ու քաղաքացիական իրավունքին ներհատուկ մեթոդներով համակցված նորմ-սկզբունքներ: Բանկային իրավունքի ենթաճյուղին հատուկ սկզբունքները իրենց բնույթով կարելի է դասակարգել երկու խմբի՝ ա) ֆինանսական և բ) քաղաքացիաիրավական:

Բանկային իրավունքին ներհատուկ ֆինանսաիրավական բոլոր սկզբունքները պայմանավորված են ՀՀ Կենտրոնական բանկի, որպես պետական իշխանության մարմնի կազմակերպաիրավական ու գործունեության այն առանձնահատկություններով, որոնք արտահայտվում են բանկային իրավահարաբերություններում պետական իշխանության լիազորություններով օժտված լինելու և հարկադրանքի միջոցների կիրառման իրավունքով:



Բանկային իրավահարաբերություններում մասնակիցների համար անհավասար իրավական վիճակ սահմանող նորմ-սկզբունքներ պետք է համարել

1) բանկային համակարգի կայունությունը
2) իրացվելիությունը
3) վարկունակությունը
4) տոկոսայնությունը

Սա բանկային իրավունքի տեսության ոլորտում առաջին փորձն է, երբ առանձնացվում և դասակարգվում են բանկային օրենսդրությամբ սահմանված այն սկզբունքները, որոնց թվին է դասվում կայունությունը: Այս սկզբունքը ամրապնդում է բանկային համակարգի կայունությունը և ապահովում ավանդատուների և վարկառուների շահերը: Բանկային գործունեության **կայունության** սկզբունքի բովանդակությունն են կազմում՝ ապրանքի գների և արժույթի կայունության ապահովումը, արտարժութային կարգավորումը և արժույթի զանգվածի աճի ապահովումը, արժույթի էմիսիան, պետական բյուջեի դրամարկղային կատարումը և պետական վարկի կարգավորումը:

Բանկային գործունեության իրացվելիության սկզբունքը կարելի է բնութագրել որպես առանձին գործառնությունների տեսակների ռիսկի ռացիոնալ բաշխում, որը շահույթի ստացման նպատակով օգտագործում է սեփական և ներգրավված միջոցները: Իրացվելիության սկզբունքը ունի նպատակային բնույթ: Այն նպաստում է բնակչության խնայողությունների և ավանդների ներգրավմանը, վարկերի տրամադրմանը, բանկային տեխնոլոգիաների կատարելագործմանը, նաև վարկային ինստիտուտների համակենտրոնացմանը: Ազատականացվում է միջբանկային վարկային շուկան, աճում է սակարկությունների հաճախականությունը, մեծանում է առևտրային բանկերին տրվող վարկերի ծավալը:

Բանկային իրավունքի վարկունակության սկզբունքը կարելի է բացատրել որպես բանկի կողմից առանձին ցուցանիշների կամ ֆինանսական գործակիցների ընտրություն, որոնց օգնությամբ հնարավոր է գնահատել վարկառուի կողմից իր պարտականություն-

ների կատարման հնարավորությունը: Վարկունակության սկզբունքի էությունը կապվում է որոշակի նախադրյալների հետ, որոնք այլ խոսքով իրավաբանական փաստեր են, որ անհրաժեշտ են վարկ ստանալու համար, որոնց գնահատումը չի կապվում հաճախորդի ֆինանսական կացության հետ:

Բանկային իրավունքի տոկոսայնության սկզբունքը կարելի է բնութագրել որպես բանկային գործառնություններում իրականացվող միջոցառումների ամբողջություն՝ ուղղված վարկային համակարգի եկամտաբերության և տնտեսության զարգացման առավելագույն տեմպերի ապահովմանը:

Բարձրացնելով փոխատվական գործարքների դրույքը՝ Կենտրոնական բանկը նվազեցնում է առևտրային բանկերի և դրանց հաճախորդների՝ վարկ ստանալու հնարավորությունը, որն իր հերթին, հանգեցնում է դրամական զանգվածի կրճատումների և բարձրացնում շուկայական տոկոսի մակարդակը: Տոկոսադրույքների բարձրացումը նպաստում է օտարերկրյա կապիտալի ներհոսքին, աշխուժանում է վճարային հաշվեկշիռը, մեծանում է արտարժույթի առաջարկը, համապատասխանաբար նվազում է արտարժույթի փոխարժեքը և բարձրանում է ազգային արժույթի փոխարժեքը:

Բանկային իրավունքը բնութագրող հիշատակված բոլոր հիմնադրույթները կյանքի են կոչվում բանկային իրավանորմ սկզբունքների միջոցով, որոնք վարքագծի համապարտադիր բանկային կանոններ են:

Բանկային իրավունքի ճյուղային մյուս սկզբունքների համակարգը բխում է բանկային գործունեության մի շարք ձևերի պայմանագրային իրավահարաբերությունների բնույթից, որոնք ներհատուկ են քաղաքացիական իրավունքին: Բանկային իրավունքում կիրառվող քաղաքացիաիրավական սկզբունքների թվին են դասվում.

1) բանկային իրավահարաբերությունների մասնակիցների հավասարության ճանաչումը,



2) բանկային գործունեության պայմանագրեր կնքելու ազատությունը,
3) բանկային գործունեության ընթացքում խախտված իրավունքների դատական պաշտպանությունը,
4) սեփականության անձեռնմխելիությունը:

Բանկային իրավահարաբերություններին մասնակիցների հավասարության ճանաչումը ունի հիմնարար նշանակություն. այն բացառում է մասնակիցներից որևէ մեկի արտոնությունը մյուսների նկատմամբ: Այլ խոսքով, այս սկզբունքի էությունը արտահայտվում է որպես հավասար իրավունքների հնարավորություն՝ բոլոր իրավական հետևանքներով: Բանկային իրավահարաբերության բովանդակությունից բխող դրամական և գույքային բոլոր հարաբերությունների մասնակիցները օրենքով ճանաչված իրավունակության և գործունեության շրջանակների սահմաններում օժտված են հավասար իրավունքներով՝ իրենց գործունեության նպատակներին համապատասխան մասնակցելու բանկային բոլոր գործառնություններին, ձեռք բերելու իրավունքներ և ստանձնելու պարտականություններ:

Բանկային գործունեության պայմանագրերի ազատության սկզբունքը դրսևորում է բանկի հաճախորդ ֆիզիկական և իրավաբանական անձանց համար պայմանագրերի (վարկի, հաշվարկի, լիզինգի) կնքման պայմանների ազատ ընտրություն: Արգելվում է պայմանագիր կնքելուն հարկադրելը, բռնություն գործադրելը կամ սպառնալը: Բանկային պայմանգրերի ազատությունը սահմանափակված է օրենսդրության պահանջներով: Այսինքն՝ բանկային պայմանագիրը կնքման պահին պետք է համապատասխանի գործող օրենքներին կամ ՀՀ Կենտրոնական բանկի սահմանած կանոններին: Բանկային պայմանագրի պայմանների շարադրանքը հարաբերականորեն սահմանափակված է Կենտրոնական բանկի կողմից ընդունված այնպիսի կանոններով, որոնք մինչև պայմանագրի կնքումը նախապես սահմանում են պայմանագրի ժամկետները, տոկոսադրույքը և այլ պայմաններ:

Բանկային գործունեության ընթացքում անշեղորեն պահպանվում է ինչպես բանկի, այնպես էլ նրա հաճախորդների սեփականության տարբեր ձևերի վրա հիմնված սեփականության անձեռնմխելիությունը: Այս սկզբունքը ունի սահմանադրական ամրապնդում: Հանրապետության Սահմանադրությունը արձանագրում է. «Հայաստանի Հանրապետությունը ճանաչում և պաշտպանում է սեփականության իրավունքը: Երաշխավորում է սեփականության բոլոր ձևերի ազատ զարգացումը և հավասար իրավական պաշտպանությունը»[1]:

Բանկային գործունեության իրականացման բոլոր իրավահարաբերություններում՝ սկսած բանկային վարկից մինչև ավանդների ներգրավման գործընթացը, բանկը երաշխավորում է հաճախորդների՝ բանկում պահվող սեփական դրամական միջոցները և նրանց հատուցումը[2]: Բանկային օրենսդրությունը ոչ միայն երաշխավորում է սեփականության անձեռնմխելիությունը, նրա կայունությունը, այլև երաշխավորում է նրա դատական պաշտպանությունը՝ կողմերի համար ստեղծելով հավասար պայմաններ:

Բանկային իրավունքի հիշատակված սկզբունքների համակարգում նախապատվության իրավունքը վերապահվում է իրավահարաբերության մասնակիցների խախտված իրավունքների դատական պաշտպանության սկզբունքին, որի շնորհիվ դատաքննության ընթացքում վերջնականապես վերականգնվում են ոչ միայն իրավահարաբերության մասնակիցների դրամական-գույքային իրավունքները, այլև մյուս սկզբունքների ոտնահարման պատճառով խախտված բանկային գործունեության իրավունքները: Բանկային գործունեությունից բխող վեճերը լուծելիս դատարանը չի առաջնորդվում գերատեսչական շահերով, տարաձայնությունները քննում է հրապարակայնորեն, քանի որ դատարանն անկախ է և ենթարկվում է միայն օրենքին: Բանկային իրավահարաբերության մասնակիցների շահերի պաշտպանության դատական կարգը բա-

[1] Տե'ս ՀՀ Սահմանադրություն, հոդվ. 8, Երևան, «Մխիթար Գոշ», 1997թ.:
[2] Տե'ս ՀՀ օրենքը ընդունված ՀՀ ԱԺ կողմից, 2004թ. նոյեմբերի 24-ին «Ֆիզիկական անձանց բանկային ավանդների հատուցումը երաշխավորելու մասին», հոդվ. 6,7-րդ, ՀՀ Ազգային ժողով, Օրենք N ՀՕ-142-Ն:



րենպաստ պայմաններ է ստեղծում բանկային վեճի իրական հանգամանքները պարզելու, օբյեկտիվ և հիմնավորված որոշումներ ընդունելու համար:

## §4. Բանկային իրավունքի համակարգը և աղբյուրները

Բանկային գործունեությունը կարգավորող իրավական նորմերը բանկային իրավունքի՝ որպես ենթաճյուղի շրջանակներում հանդես են գալիս խմբավորված իրավական ինստիտուտների տեսքով: Բանկային իրավական ինստիտուտները փոխադարձ կապի և պայմանավորվածության մեջ գտնվող բանկային իրավական նորմերի խումբ է, որը հիմնական (ֆինանսական) իրավունքի ճյուղի համակարգում, կանոնավորում է համասեռ հարաբերությունների որոշակի շրջանակ:

Բանկային իրավական ինստիտուտները կարգավորող իրավական նորմերի համակցությունը ունի օբյեկտիվ բնույթ: Այն մեծամասամբ պայմանավորված է բանկային գործունեությունից բխող հարաբերությունների բնույթով: Բանկային իրավական նորմերը, ըստ էության, ոչ միայն ներկայացնում են բանկային հարաբերությունների ձևավորման ոլորտները և ակունքները, նրանց նպատակային բնույթը, այլև ամենագործուն ձևով ներազդում են դրանց վրա, սահմանում դրանց անհրաժեշտությունը և նպատակաուղղվածությունը:

Բանկային իրավունքի՝ որպես ենթաճյուղի համակարգի, նրա նորմերի և իրավական ինստիտուտների ձևավորման ու կառուցվածքի վրա մեծ ազդեցություն ունեն պետությունը և նրա ֆինանսավարկային մարմինները:

ՀՀ բանկային իրավունքի համակարգը, ելնելով օբյեկտիվորեն գործող ֆինանսական բանկային գործունեությունից ծնունդ առնող հասարակական հարաբերությունների առանձնահատկություններից, հանդես է գալիս որպես համասեռ, միասնական բանկային իրավական ինստիտուտների ամբողջություն, որոնց տարանջատումը կարող է հանգեցնել բանկային իրավունքի՝ որպես ֆինանսական իրավունքի ենթաճյուղի կարգավորման խաթարմանը: Բանկային իրավունքի իրավական նորմերը ամրապնդում են ՀՀ բանկային գործունեության ելակետային դրույթները, նրա խնդիրները, իրականացման ձևերը և մեթոդները: Սահմանում են ՀՀ Կենտրոնական բանկի վերահսկողության իրավական հիմքերը, բանկային գործունեության մասնակիցների իրավասությունը և շրջանակները:



Նրա առանձին իրավանորմեր հանդես են գալիս առանձին բանկային իրավական ինստիտուտների միավորման տեսքով, որոնցից յուրաքանչյուրը, առանձին վերցրած, արտացոլվում է համասեռ բանկային հարաբերությունների տեսքով, որոնք, որպես առանձնահատկություն, ունեն կարգավորման իրենց ներհատուկ նեղ, անհատական օբյեկտները, որ կարգավորվող հարաբերությունների միատարրության հիման վրա սահմանում և կարգավորում են բանկային առանձին գործառնությունները:

Բանկային իրավունքի համակարգի միասնությունը արտացոլված է այնպիսի բանկային իրավական ինստիտուտներում, ինչպիսիք են՝ բանկային վարկավորումը և դրամական շրջանառությունը, բանկային հաշվարկները, դրանց առանձին տեսակների իրավական կարգավորումը, արժութային և արտարժութային կարգավորումը, բանկային վերահսկողությունը և պատասխանատվությունը և այլ իրավական ինստիտուտներ:

Բանկային իրավունքի համակարգի միասնությունը կազմող իրավական նորմերը արտահայտվում են ամենատարբեր նորմատիվ իրավական ակտերում, որոնք էլ հանդիսանում են բանկային իրավունքի աղբյուրները: Ֆինանսական իրավունքի աղբյուրները բազմազան են: Վերջիններիս թվին են դասվում ներկայացուցչական և ՀՀ Կենտրոնական բանկի կողմից ընդունած իրավական ակտերը:

Բանկային իրավունքի աղբյուրների շարքում առանձնանում է ՀՀ Սահմանադրությունը, որը սահմանում է Հանրապետության նախագահի, Ազգային ժողովի, կառավարության լիազորությունները բանկային գործունեության բնագավառում, ինչպես նաև՝ հանրապետության Կենտրոնական բանկի կազմակերպման կարգը:

Բանկային իրավունքի աղբյուրների հանդիպում ենք հանրապետության իրավունքի համակարգի պետական, ֆինանսական, քաղաքացիական և իրավունքի այլ ճյուղերում: Օրինակ, ֆինանսա-

կան և քաղաքացիական իրավունքի աղբյուրների մի մասը հավասարապես կիրառվում են բանկային իրավունքում:

Բանկային իրավունքի աղբյուրների շարքում մեծ նշանակություն են ձեռք բերում ՀՀ Նախագահի հրամանագրերը, որոնք, շուկայական ներկա հարաբերությունների բնույթից ելնելով, օպերատիվ կարգով ուղղվում են հատկապես հանրապետությունում պետական ներքին պարտքի և պետության այլ ոլորտներում բանկային գործունեության կարգավորմանը:

Հանրապետությունում ԱԺ կողմից ընդունված օրենքները իրենց բնույթով և բովանդակությամբ ամենաընդարձակ աղբյուրներն են, որոնք միաժամանակ նոր լիցք ու բովանդակություն են հաղորդում բանկային նորմերին՝ բարձրացնելով դրանց հեղինակությունը իրավունքի ընդհանուր ճյուղերի նորմերի համակարգում: Բանկային իրավական նորմերը իրավունքի աղբյուրի տեսքով և ծավալի անհամեմատ մեծությամբ արտացոլվում են ԱԺ 1998թ. մայիսի 5-ին ընդունված Հայաստանի Հանրապետության քաղաքացիական օրենսգրքերում, որոնց միջոցով գործնականում իրավական կարգավորում են ստանում ֆինանսական վարձակալության, փոխառության, վարկի, բանկային ավանդի, բանկային հաշվի և հաշվարկների բանկային գործառնությունները:

Բանկային իրավունքի նորմ-աղբյուրներ են հանդիսանում նաև ՀՀ Կենտրոնական բանկի և նրա խորհրդի կողմից ընդունված հրամանները, հրահանգները, կարգադրությունները և շրջաբերական նամակները:

Վերջապես, բանկային իրավունքի աղբյուր են սովորույթները: Դրանք ժամանակի ընթացքում տարերայնորեն ձևավորված, օրենսդրորեն չձևակերպված վարքագծի կանոններ են: Սովորույթները ինքնին բանկային իրավունքի աղբյուր չեն, բայց որպես իրավունքի աղբյուր կիրառվում են այն ժամանակ և այնքանով, որքանով ստանում են իրավական արժեքավորում և օրենքով թույլատրվում է նրանց կիրառությունը: Բանկային իրավունքում սովորույթի ուժով կարող են կարգավորվել վճարահաշվարկային գործառույթները և բանկային գործունեության այլ ձևեր:



## §5. Բանկային իրավունքի գիտության առարկան և խնդիրները

Հանրապետության բանկային իրավունքի՝ որպես իրավունքի ենթաճյուղի գոյությունը պայմանավորված է ֆինանսական իրավունքի գիտության առկայությամբ, որի ուսումնասիրության առարկա են բանկային իրավունքի մասին ժամանակի ընթացքում ձևավորված և մշակված ուսմունքները, իրավունքի տեսական ընդհանրացումները, նաև ֆինանսական իրավունքը, որպես իրավունքի ճյուղ՝ ամբողջությամբ վերցրած:

Բանկային իրավունքի ուսումնասիրության առանցքն են կազմում բանկային իրավական նորմերը և հատկապես գործող բանկային օրենսդրությունը, որոնք ուղղված են կարգավորելու այն հասարակական հարաբերությունները, որ ծագում են բանկային գործունեության ընթացքում և արտահայտում են օրենսդիր ու գործադիր իշխանությունների, տնտեսական մարմինների և քաղաքացիների նպատակամղված բանկային գործառնությունների իրավական ձևերը ու մեթոդները:

Բանկային իրավունքի գիտության մշակած ֆինանսավարկային և իրավական քաղաքականությունը, որպես հասարակական, տնտեսական և սոցիալական պահանջներին համապատասխան քաղաքականություն, ֆինանսավարկային լիազոր մարմինների կողմից կիրառվում են տնտեսական և շուկայական ամրապնդվող հարաբերությունների ու բանկային համակարգի կայունությունը ապահովելու համար:

Բանկային իրավունքի հիմնահարցերի գիտական մշակումը հանրապետության ժամանակակից տնտեսական և սոցիալական զարգացման ծրագրերին համապատասխան առաջին մեծ ավանդն է պետության և իրավունքի արդիական խնդիրների լուծման և հատկապես բանկային իրավունքի հայրենական տեսությունների ձևավորման ու զարգացման գործում:

Հանրապետությունում ձևավորվող բանկային իրավունքի գիտության նվաճումները տեսական-վերլուծական արժեքներից զատ

ունեն գործնական նշանակություն: Գիտության ձեռքբերումների հիման վրա վերամշակվում են բանկային իրավական նորմերի, հատկապես հարաբերությունների վրա ներազդման ձևերը և եղանակները, կատարելագործվում է բանկային օրենսդրությունը, այն աստիճանաբար ենթարկվում է կոդիֆիկացման, որը ավելի դրական է դարձնում բանկային գործունեության կարգավորումը և նպաստում հանրապետության բանկային համակարգի ժամանակակից խնդիրներին ու պահանջներին համապատասխան վերակառուցման:

Ժամանակակից բանկային իրավունքի հիմնախնդիրների մշակման համար ոչ պակաս մեթոդաբանական արժեք են ներկայացնում նաև իրավունքի ընդհանուր տեսության հետևությունները, որոնք, իրենց հերթին, բխում են իրավունքի ճյուղային գիտությունների նվաճումներից և արտահայտում են բանկային իրավունքի գիտության փոխկապվածությունը սահմանադրական, վարչարարական, ֆինանսական, քաղաքացիաիրավական և իրավունքի այլ ճյուղային գիտությունների հետ: Բանկային իրավունքի գիտությունը անբաժանելիորեն կապված է տնտեսագիտական այնպիսի գիտական ուսմունքի հետ, որն հետազոտում է «ֆինանսները», «վարկը», «բանկային գործը», բազիսային տնտեսական հարաբերությունները:

Տնտեսագիտական նշված ուսմունքների հետազոտության առարկաները սահմանազատվում են բանկային իրավունք գիտության առարկայից: Սրանք կազմում են հասարակական կյանքի տնտեսական-բազիսային հարաբերությունները, որոնք չունեն իրավական բնույթ, հիմնականում ձևավորվում են դրամական միջոցների, հասարակական ֆոնդերի գոյացման, բաշխման և օգտագործման գործընթացում: Ուսումնասիրում են ֆինանսների, վարկի և հաշվարկների օրինաչափությունները, նրանց գործառույթները, որպես տնտեսական կատեգորիա: Հետևաբար, բանկային իրավական ուսումնասիրության առարկա են հանդիսանում տնտեսական հարաբերությունները, որոնց մի մասը կարգավորվելով՝ բանկային նորմերի միջոցով ձեռք են բերում բանկային իրավական հարաբերությունների բնույթ: Այսպիսով, ֆինանսների, վարկի, հաշվարկ-



ների մասին գիտության առարկան խիստ ընդարձակ է, որը իրավունքի մյուս ճյուղերի համար նույնպես գիտական ուսումնասիրության հարուստ հիմք է:

Ուսումնասիրությունները վկայում են, որ չնայած բանկային իրավունքի գիտության համակարգը հիմնականում համընկնում է ֆինանսական իրավունքի՝ որպես ճյուղի համակարգի հետ, սակայն կան էական տարբերություններ, որոնք բխում են հասարակական կյանքում բանկերի գրաված տեղից և առանձնահատկություններից: Բանկային իրավունքի գիտության նվաճումների միջոցով վերջինս ֆինանսական իրավունքի համակարգում առանձնանում է որպես ենթաճյուղ՝ իրեն ներհատուկ կարգավորման առարկայով և մեթոդով: Պետության շնորհիվ իրենց տեսական հիմնավորումն են ստանում բանկային իրավական նորմերը և հարաբերությունները, ձևավորվում են վերջիններիս մշակման, կատարելագործման և զարգացման ուղղությունները:

Պատմական փաստերը վկայում են, որ բանկային իրավունքի հայրենական գիտությունը՝ կապված ազգային պետականության զարգացման պատմական գործընթացների հետ, խղճուկ ժամանակագրություն և ժառանգություն ունի: Հանրապետության բանկային իրավունքի բնագավառում մայրենի լեզվով այնքան քիչ և աղքատ խոսք է ասված, որ այս ոլորտին վերաբերող ամենի մի գիտական հետազոտության փորձ, անկախ մակարդակից, արժանի է խրախուսանքի:

Հայաստանի Հանրապետության իրավունքի համակարգի ձևավորման գործընթացում առավել ուշադրության է արժանի բանկային իրավունքի և նրա գիտության ձևավորման նկատմամբ պետության հոգածությունը: Բանկային իրավունքը ներկա ժամանակաշրջանում կենսական անհրաժեշտություն է: Այն մեր հանրապետության ապագա բանկային գործունեությունով է պայմանավորում ներքին և արտաքին ֆինանսական ռեսուրսները ձևավորելու և ինքնուրույն տնօրինելու իրավունքը:

Հանրապետության Սահմանադրությամբ ամրապնդված սեփականության ձևերը և գործող շուկայական հարաբերությունները,

որոնց շրջանակներում ձևավորվում են ժամանակակից տնտեսական հարաբերությունները, և որոնց մի մասը ունի դրամական արժեքային բնույթ պետության գոյատևման համար, հրամայաբար պահանջ են առաջացնում, որպեսզի դրամական ռեսուրսները, որ հիմնականում արտահայտվում են վարկերի, հաշվարկների, խնայողությունների, բանկային ներդրումների և բանկային գործառնությունների այլ ձևերով, իրավական երաշխիք լինեն երկրում տնտեսավարող սուբյեկտների ու քաղաքացիների արտադրատնտեսական, սոցիալական և աշխատանքային գործունեությունը ապահովելու համար: Այս և մի շարք այլ օբյեկտիվ տնտեսական հարաբերություններ մղում են, թելադրում են բանկային իրավունքի նոր եղանակներ մշակել բանկային գործունեության զարգացման իրավահարաբերությունների մասնակիցների իրավունքներն ու օրինական շահերը պաշտպանելու համար:

Վերջապես, հանրապետությունում բանկային իրավունքի գիտության հրատապ խնդիրն է բանկային օրենսդրության համակարգումը, որի նախադրյալները ըստ բանկային գործունեության առանձին իրավական ինստիտուտների՝ վարկավորման, հաշվարկների, ավանդների, վերջին տարիների ընթացքում ձևավորվել են:

Բանկային իրավունքի գիտության և հատկապես օրենսդրության զարգացմանը և կատարելագործմանը մեծ նպաստ են բերում արտասահմանյան պետությունների բանկային գործունեության ուսումնասիրության համար փորձի փոխանակման նպատակով կազմակերպված գիտաժողովների և բանկային օրենսդրության մշակմանը նվիրված արտասահմանյան կազմակերպությունների աշխատանքներին մասնակցելը:



## ԳԼՈՒԽ IV

# ԲԱՆԿԱՅԻՆ ԻՐԱՎԱԿԱՆ ՆՈՐՄԵՐ ԵՎ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## §1. Բանկային իրավական նորմեր հասկացությունը, տեսակները, կառուցվածքը

Բանկային իրավունքի ենթաճյուղի առանձնահատկությունների լուսաբանման համար էական նշանակություն ունեն բանկային իրավական նորմերի, հարաբերությունների ճիշտ գնահատումը՝ նրանց բովանդակության և իրավական հատկանիշների վերլուծության իմաստով:

Բանկային իրավական նորմերը, իրավունքի մյուս ճյուղերի նորմերի նման, ունեն ինչպես ընդհանուր, այնպես էլ առանձնահատուկ գծեր, որոնք պայմանավորված են կարգավորվող բանկային հարաբերությունների բնույթով: Բանկային իրավանորմերը սահմանում են վարքագծի համապարտադիր իրավական կանոններ: Նրանք աչքի են ընկնում իրենց կիրառման հատուկ ոլորտով: Բանկային իրավանորմերի ծառայական նշանակությունը պայմանավորված է պետության բանկային գործունեության ընթացքում դրամաշրջանառության, վարկավորման, հաշվարկների, ավանդների կազմակերպման գործընթացում ծագած հասարակական հարաբերությունների կարգավորմամբ:

Բանկային իրավական նորմերի համահավաք բովանդակությունը ուղղված է՝ ա) շուկայական հարաբերություններում գների կայունության ապահովմանը և բ) հանրապետությունում դրամական համակարգի կարճատև և երկարատև վարկավորմանը, հաշվարկներին, խնայողությունների արժութային գործառնությունների կարգավորմանը:

Բանկային իրավական նորմերին ներկայացվող այսպիսի ընդհանուր պահանջները հիմք ընդունելով՝ բանկային իրավանորմերը

ֆինանսական և քաղաքացիական իրավունքի ճյուղերին ներհատուկ մի շարք հատկանիշների հիման վրա ենթարկվում են որոշակի դասակարգման: Պայմանականորեն նորմերը դասակարգվում են՝ ա) ըստ բանկային իրավական հարաբերությունների մասնակիցներին վերապահված իրավունքների և պարտականությունների, որպիսի դասակարգումը հաճախ ընդունված է համարել ըստ դիսպոզիցիայի, բ) ըստ բանկային իրավական նորմում արտահայտված վարքագծի բնույթի, որը կարող է դրսևորվել իմպերատիվ եղանակով:

Բանկային նորմերը ըստ բանկային գործունեության բովանդակության և այդ նորմերի դիսպոզիցիայի բնույթի կարելի է բաժանել հետևյալ խմբերի.

1. Հանրապետության բանկային համակարգի կառուցվածքը, նրա առաջին օղակների իրավասությունը, գործառույթները սահմանող նորմեր:
2. Վարկավորման, հաշվարկների, ավանդների, արժութային գործառնությունները ամրագրող նորմեր:
3. Բանկային վերահսկողություն և պատասխանատվություն սահմանող նորմեր:

Բանկային իրավական նորմի հիմքը՝ դիսպոզիցիան է: Բանկային իրավական նորմերը ըստ դիպոզիցիայի հիմք ընդունելով դրանց ֆինանսական, քաղաքացիաիրավական առանձնահատկությունները կարելի է բաժանել երեք խմբի՝ **պարտավորեցնող, արգելող** և **լիազորող**: Այսօր վարկային մարմինների գործունեության մեջ լայնորեն կիրառվում են տեսական և գործնական հիմնավորում ստացած խրախուսող բնույթի իրավական նորմերը, որոնք կիրառվում են Կենտրոնական բանկի և բանկային համակարգի մյուս օղակների կողմից և արտահայտվում են հաճախորդներին արտոնություններ տրամադրելով:

**Պարտավորեցնող** բանկային իրավական նորմերը իրավահարաբերությունների մասնակիցներին պարտավորեցնում են կատարել որոշակի գործողություններ: Օրինակ՝ բանկային վարկը վերադարձնել սահմանված ժամկետում:



**Արգելող** բանկային իրավական նորմերը իրավահարաբերությունների մասնակիցների համար սահմանում են պասիվ վարքագիծ, արգելում են որոշակի գործողությունների կատարում, որոնք կարող են առաջ բերել բանկային իրավական նորմերի պահանջների խախտում: Արգելող բանկային իրավական նորմերը իրենց տեսակարար կշռով փոքր են և արգելում են բանկային իրավական հարաբերությունների մասնակիցների ազատ գործելակերպ: Օրինակ՝ բանկային վարկը արգելվում է այլ նպատակով օգտագործել: Բանկային իրավական հարաբերությունները կարգավորելիս ներկայումս օրենսդրության բնագավառում ընդլայնվում են պարտավորեցնող նորմերի կիրառման ոլորտները, որոնք ձեռնտու են բանկի և նրա հաճախորդների համար: Արգելող ֆինանսաիրավական նորմերի սահմանափակ կիրառումը բացատրվում է նրանով, որ վերջիններս խիստ սահմանափակում են իրավահարաբերությունների մասնակիցների թույլատրելի գործելակերպի սահմանները: Այս սկզբունքով են մշակված վարկերը, արժույթները և արտարժութային գործառույթները սահմանող բոլոր բանկային նորմերը:

**Լիազորող** բանկային իրավական նորմերը սահմանում են իրավահարաբերությունների մասնակիցների ինքնուրույն գործելակերպի թույլատրելի սահմանները: Լիազորող բանկային իրավական նորմերը ինքնուրույն որոշումներ ընդունելու հնարավորություններ են ընձեռնում իրավահարաբերությունների մասնակիցներին: Ելնելով իրավական նորմերի ընդհանուր առանձնահատկություններից՝ դժվար չէ նկատել, որ բանկային նորմերի այս տեսակին էլ ներհատուկ է օրենքի պահանջների կտրուկ կատարման սկզբունքը: Այսպես, գործող վճարահաշվարկային օրենսդրությամբ հաշվարկի ձևը ընտրում են իրավահարաբերության մասնակիցները: Հաշվարկի ձևից բխող պարտավորություններ չկատարելու դեպքում այն օրենքի պահանջով կարող է փոփոխվել:

Այսօր շուկայական հարաբերությունները օբյեկտիվորեն ներազդում են իրավաստեղծ գործունեության վրա՝ կանխավ կողմնորոշելով հատկապես բանկային իրավական նորմերի բնույթը արտացո-

լող հասարակական և տնտեսական հարաբերությունները: Լիազորող բանկային իրավական նորմերում պարտադիր պատվիրանների տեսքով հանդես են գալիս հասարակական հարաբերությունների վրա ներազդման բանկային միջոցները, որ միաժամանակ նպատակ են հետապնդում բարձրացնել տնտեսավարող սուբյեկտների ինքնուրույնությունը, ազատ կողմնորոշվել Կենտրոնական բանկի հանդեպ պարտավորությունների պատշաճ կատարման հարցում:

Բանկային իրավական նորմերը կարող են հանդես գալ իրենց նյութական և գործընթացային բնույթով:

**Նյութական** բանկային իրավական նորմերը, որպես կանոն, սահմանում են իրավական հարաբերությունների մասնակիցների՝ օրենքով վերապահված իրավունքներն ու պարտականությունները: Այս նորմերը սահմանում են տնտեսավարող սուբյեկտների դրամական պարտավորությունները, բանկային վարկավորման ռեսուրսները, հաշվարկների տեսակները, ավանդատուների իրավունքները և պարտականությունները:

**Գործընթացային** բանկային իրավական նորմերը ուղղված են նյութական նորմերի պահանջների կատարմանը և սահմանում են, թե ինչ ձևերով ու եղանակներով բանկային իրավական հարաբերությունների մասնակիցները կարող են հասնել իրենց իրավունքների իրականացմանը: Բավական է անդրադառնալ բանկային իրավախախտումներին, որպեսզի պարզ դառնան բանկային համակարգի կայունության ապահովման նպատակով Կենտրոնական բանկին օրենսդրությամբ վերապահված լիազորությունները, որոնք կյանքի են կոչվում բանկային հարկադրանքի և պատժամիջոցների կիրառմամբ: Պատժամիջոցների կիրառման կարգը սահմանված է բանկային գործընթացային նորմերով:

Ի տարբերություն իրավունքի շատ ճյուղերի բանկային իրավունքի ենթաճյուղի նյութական գործընթացային իրավանորմերը հանդես են գալիս իրավունքի մեկ միասնական ենթաճյուղի շրջանակներում և նույնիսկ կարող են արտահայտվել բանկային գործունեության առանձին գործառնություններում:



Բանկային իրավունքի նորմերը ըստ կառուցվածքի բաղկացած են երեք տարրերից՝ հիպոթեզից, դիսպոզիցիայից և սանկցիայից:

Բանկային իրավական նորմերի հիպոթեզը արտահայտում է այն հանգամանքները, որոնց հետ նորմը զուգակցելով՝ իրավահարաբերության մասնակիցների համար առաջացնում, փոփոխում կամ դադարեցնում է իրավունքները: Բանկային իրավական նորմերը իրենց հիպոթեզի կոնկրետ շարադրմամբ առանձնանում և տարբերվում են իրավունքի մյուս ճյուղերի իրավանորմերից: Օրինակ՝ ՀՀ «Բանկերի և բանկային գործունեության մասին» օրենքի 4-րդ հոդ. 2-րդ կետում ասվում է. «Առանց Կենտրոնական բանկի կողմից տրված բանկային գործունեության լիցենզիայի Հայաստանի Հանրապետության տարածքում բանկային գործունեություն իրականացնելն արգելվում է»:

Բանկային իրավական նորմի դիսպոզիցիան նորմի այն մասն է, որտեղ նկարագրվում է իրավահարաբերություններում մասնակցի վարքագծի կանոնները, որոնք բանկային իրավահարաբերություններում ուղղված են վարկի, հաշվարկների, ավանդի պայմանագրերի կնքմանը: Դիսպոզիցիան բանկային նորմի հիմքն է, որտեղ շարադրված են իրավահարաբերության մասնակիցների իրավունքները և պարտականությունները, որի պահանջները որոշակի են և խախտումների դեպքում անհապաղ հետևում է բանկային իրավական պատասխանատվություն:

Բանկային իրավանորմի մյուս տարրը սանկցիան է, որն արտահայտում է նորմի խախտման իրավական հետևանքների պատասխանատվության ձևը: Բանկային իրավական նորմի սանկցիաները դրսևորվում են որոշակի առանձնահատկություններով: Որպես կանոն, այդ սանկցիաները ունեն դրամական բնույթ և կիրառվում են իրավախախտում թույլ տված ֆիզիկական կամ իրավաբանական անձանց նկատմամբ: Օրինակ ժամկետանց բանկային վարկի համար տուգանքների նշանակումը և տուգանքների գանձում: Բանկային սանկցիաները, որպես կանոն, կիրառվում են Կենտրոնական բանկի կողմից և ունեն ինչպես իրավապահական, այնպես էլ պատժողական բնույթ:

Բանկային իրավունքի, որպես ենթաճյուղի գործունեության անհրաժեշտությունը պայմանավորված է բանկային հարաբերությունների կարգավորմամբ: Գործող իրավունքի մյուս ճյուղերից այն սահմանազատվում է բանկային իրավական նորմերի մեկ այլ առանձնահատկությամբ, որն արտահայտվում է այդ նորմերի բաշխիչ և վերահսկողական գործառույթներով, որոնք կարող են հանդես գալ բանկային գործունեության ընթացքում իրավահարաբերությունների սուբյեկտներին ինչպես օգնություն ցուցաբերելու, այնպես էլ բանկային համակարգի համար ոչ շահավետ գործունեության ձևերից ազատվելու եղանակով:

Բանկային իրավական նորմ–սկզբունքների բաշխիչ գործառույթների ամենօրյա կիրառումը արտահայտվում է բանկային մարմինների կողմից դրամի շրջանառության և էմիսիայի վարկավորման, հաշվարկների, ավանդների ու ներդրումների կազմակերպման գործընթացում: Այս գործընթացը ցայտուն է դրսևորվում Կենտրոնական բանկի կողմից ԱԺ ներկայացրած ամենամյա դրամավարկային քաղաքականության ծրագիրը իրականացնելիս:

Բանկային իրավական նորմերի վերահսկողական գործառույթները արտահայտվում են բանկային գործունեության բոլոր ոլորտներում, հատկապես վարկավորման, հաշվարկների, տնտեսական նորմատիվների նպատակային օգտագործման վերաբերյալ օրինականության նկատմամբ հսկողության իրականացմամբ, որը կատարվում է դրամով Կենտրոնական բանկի կողմից: Եթե ժամանակին չի վերադարձվում բանկային վարկը կամ խախտվում են հաշվետվությունների ներկայացման ժամկետները, ապա վատ են աշխատում տնտեսավարող սուբյեկտները: Այլ խոսքով՝ բանկային իրավական նորմերը տնտեսության մեջ նպաստում են մշտական դրամական վերահսկողության իրականացմանը:

Բանկային իրավական նորմերին ներհատուկ է նաև արտադրության խթանման գործառույթը, որը հատկապես աչքի է ընկնում դրամավարկային քաղաքականություն իրականացնելիս: Տնտեսավարող սուբյեկտները բանկային վարկերի շնորհիվ ընդլայնում են արտադրատնտեսական հնարավորությունները, կատարում են նոր



կապիտալ ներդրումներ, արտադրությունը վերազինում են գիտատեխնիկական նորագույն նվաճումներով, կատարելագործում են տեխնոլոգիական պրոցեսները, որոնք բարձրացնում են աշխատանքային կոլեկտիվների նյութական շահագրգռվածությունը, նպաստում արտադրողականության բարձրացմանը:

Ի տարբերություն իրավունքի մյուս ճյուղերի իրավանորմերի բանկային իրավունքի գործադրման ընթացքում լայն կիրառություն ունեն բանկային իրավական **տեխնիկական նորմերը:** Դրանք արտադրության և բաշխման գործընթացներում մարդկանց կողմից բնության առարկաներին, աշխատանքային գործիքներին, տեխնիկական տարբեր միջոցներին նպատակահարմար վերաբերվելու համապատասխան կանոններ են:

Բանկային իրավական տեխնիկական նորմերը այսօր կարևոր նշանակություն ունեն ինչպես ներպետական, այնպես էլ միջազգային իրավական կյանքում: Դրանց գործադրումը ներպետական կյանքի սահմաններից դուրս է եկել և այսօր ընդգրկում է նաև արտաքին տնտեսական, ֆինանսական, հաշվարկային և ներդրումային հարաբերությունները: Արտադրության մեջ բարձր և բարձրորակ տեխնիկայի լայն ներդրումը բարձրացնում է աշխատանքի արտադրողականությունը, մարդկանց նյութական ապահովման մակարդակը:

Իրավական պետությունը նպատակ ունի մշտապես հոգալ նյութական բարիքների արտադրության և պետության բանկային գործունեության կատարելագործման մասին: Այս նպատակով մեծ աշխատանք է տարվում հատկապես բանկային գործունեության ոլորտում գիտականորեն հիմնավորված բանկային իրավական տեխնիկական նորմերի ներդրման համար: Բանկային իրավական տեխնիկական նորմերի շարքին են դասվում դրամական գործառույթների կատարման մուտքի և ելքի փաստաթղթերը, ֆինանսա-վարկային մարմիններին ներկայացվող օպերատիվ–վիճակագրական, հաշվարկային հաշվառման հաշվետվությունները, դրամարկղային գործառույթների իրականացման կանոնները, հարկային ծառայությանը ներկայացվող հաշվետվությունները, կատարվող շինարարու-

թյան և վերանորոգման նախագծային ծախսերը, նաև հաշվարկների կազմման կարգը սահմանող փաստաթղթերը:

Բանկային իրավական նորմերի առանձնահատկությունը նաև այն է, որ դրանք տեխնիկական բովանդակության սոցիալական նորմեր են: Բանկային իրավական ասպեկտով մեծ արժեք ունեն այդ տեխնիկական նորմերը: Դրանք կիրառման ընթացքում իրավահարաբերությունների մասնակիցների համար սահմանում, փոփոխում կամ դադարեցնում են բանկային բնույթի իրավահարաբերությունները:

Բանկային տեխնիկական նորմերի այս էական առանձնահատկությունների հաշվառմամբ դժվար չէ վերջիններս դասակարգել ըստ խմբերի.

1. Պետական և տեղական բյուջեների եկամուտների ու ծախսերի դրամարկղային կատարման գործառնությունների միասնությունը ապահովող բանկային տեխնիկական նորմեր: Բյուջետային եկամուտների և ծախսերի մուտքի ու ելքի միասնական դրամարկղային կատարումը մատնանշում է ոչ միայն բյուջետային համասեռ եկամուտների ձևավորման աղբյուրները և դրանց դասակարգումը ըստ տնտեսական կարգի ու հանման մեթոդների, այլև ըստ բանկային հաշվի համարների, որոնք բացվում են պետական և տեղական բյուջեների դրամարկղային կատարման նպատակով, որպես պարտադիր տեխնիկական կանոնների համակցություն, որպես բանկային գործունեություն իրականացնող պետական մարմինների ու պաշտոնատար անձանց իրավական պարտավորությունների համակարգ:

Դժվար չէ նկատել, որ բյուջետային եկամուտների և ծախսերի դրամակղային կատարումը իրավական կարգավորում է ստանում բանկային տեխնիկական նորմերի միջոցով:

2. Բանկային գործառնությունների տեխնիկական փաստաթղթավորումը ապահովող նորմեր: Այս բնույթի բանկային տեխնիկական նորմերի պահանջները արտահայտվում են բանկային մարմինների հիշեցումների ձևերի և ռեկվիզիտների, բանկային վարկավորման լիմիտների, ինչպես նաև բյուջեից ծախսման նպատակով



ֆինանսական միջոցներ ստանալու չեկերի մեջ:

Բանկային վարկի վերադարձման կամ հաշվետվությունների ներկայացման մասին հիշեցումը, օրինակ, ծնում է իրավահարաբերություն վարկատուի և վարկառուի միջև: Հարկատուն ստանալով վարկի տոկոսների վճարման մասին հիշեցումը՝ պարտավոր է սահմանված ժամկետներում վճարել այն: Հիշեցման պահանջների և վճարման ժամկետների խախտումը անվերապահորեն առաջ է բերում օրենքով սահմանված պատասխանատվություն՝ բոլոր իրավական հետևանքներով:

3. Նորմերի մի մասն էլ, հատկապես վարկավորման բնագավառում, ուղղված է դրամական միջոցների ծախսերի չափաբաժինների նպատակային օգտագործմանը: Օրինակ՝ կազմակերպությունները շինարարության կամ վերանորոգման համար ստացած վարկերը չեն կարող ծախսել վարչատնտեսական միջոցառումներ իրականացնելու համար: Բանկային տեխնիկական այդ նորմերը իրավական իմաստով իրավաբանական փաստեր են, որոնք առաջացնում, փոփոխում կամ դադարեցնում են բանկային իրավահարաբերությունները:

4. Վերջապես, բանկային տեխնիկական նորմերի մի զգալի մասը, որ արտահայտվում է պաշտոնական փաստաթղթերի, գրությունների, հաղորդումների, շրջաբերական նամակների և հայցադիմումների մեջ, ուղղված է բանկային իրավահարաբերությունների դադարեցմանը: Բանկային տեխնիկական նորմերի այս խմբին են պատկանում, օրինակ, այն նորմերը, որոնք պաշտոնական գրությունների և հաղորդումների տեսքով արտահայտում են վարկային հաշվարկային պարտավորությունների կատարումը, գործողումների վերաբերյալ հաշվետվությունները կամ պետական շահերի պաշտպանության նպատակով բանկային մարմինների գույքի բռնագրավման մասին դատարաններին ներկայացրած հայցադիմումները:

Այսպիսով, բանկային գործունեության ոլորտում առանձնացվում են միայն այն բանկային տեխնիկական նորմերը, որոնք անմիջականորեն կապված են բանկային հարաբերությունների ծագման, փոփոխման և դադարեցման հետ:

## §2. Բանկային իրավական հարաբերությունների հասկացությունը, առանձնահատկությունները և տեսակները

Բանկային իրավունքի լուսաբանման համար էական նշանակություն ունեն այդ իրավունքի՝ որպես ենթաճյուղի շրջանակներում ձևավորվող հասարակական հարաբերությունները, դրանց տեսակները և իրավական կարգավորումը, իրավունքի այլ ճյուղերի կողմից կարգավորվող իրավահարաբերությունները, դրանց սահմանազատման հարցերի պարզաբանումը: Բանկային իրավական հարաբերությունները բանկային գործունեության և առանձին բանկային գործառնությունների իրականացման գործընթացում ծագող հասարակական հարաբերություններն են, որոնք կարգավորվում են բանկային իրավունքի նորմերով:

Բանկային իրավական հարաբերությունների հիմնական առանձնահատկությունն այն է, որ վերջիններս ծագում են ինչպես Կենտրոնական, այնպես էլ առևտրային բանկերի գործունեության ընթացքում և բավարարում են այդ հարաբերությունների վարկային, վճարահաշվարկային, ավանդների և այլ բնույթի դրամական ներդրումային պահանջները:

Բանկային իրավական հարաբերությունների մյուս հատկանիշները բխում են դրամաշրջանառության և գների կայունության ապահովման առանձնահատկություններից:

Բանկային իրավական հարաբերությունները դրամի հետ կապված հարաբերությունների մի տարատեսակ են: Դրամը այդ հարաբերությունների անմիջական օբյեկտն է: Այդ իմաստով իրավունքի մյուս ճյուղում եղած դրամական հարաբերություններից առանձնացված են բանկային իրավական հարաբերությունները, որոնք իրենք են կազմակերպում ու պլանավորում այլ ճյուղերի հարաբերությունները: Դրանց թվին են պատկանում, օրինակ՝ Կենտրոնական բանկի վարկային և դրամարկղային վճարահաշվարկները, խնայողությունների պլանները, որոնք կարող են հիմք հանդիսանալ այլ սուբյեկտների տնտեսական գործունեության պլանների



կազմման համար: Այս հարաբերություններն էլ իրենց վերջնական նպատակով ուղղված են դրամական միջոցների շարժման ապահովմանը: Տնտեսվարող սուբյեկտների կողմից վարկի պահանջի հայտը կամ այլ բանկային ծառայության մատուցումը ինքնին պայման է, որի ընթացքում տեղի է ունենում բանկերի կողմից նախատեսված դրամական միջոցների ինչպես հավաքումը, այնպես էլ բաշխումը:

Բանկային իրավական հարաբերությունների մյուս առանձնահատկությունը այն է, որ դրանք ոչ միայն դրամական, այլ նաև պետական-իշխանական, կազմակերպական բնույթի հարաբերություններ են: Հայաստանի Կենտրոնական բանկի գործունեությունը նրա պետական սուվերենության դրսևորման ձևերից մեկն է: Պետությունը, հասարակության շահերից ելնելով, իրականացնում է բանկային գործունեություն, կազմակերպում է դրամի շրջանառություն, տնօրինում է դրամական միջոցները, կազմակերպում տնտեսության ճյուղերի, կազմակերպությունների վարկավորում, կարգավորում է կոոպերատիվ, գյուղացիական տնտեսությունների և բնակչության կուտակումները:

Բանկային իրավական հարաբերության կողմերից մեկը մշտապես հանդես է գալիս պետությունը ամբողջությամբ վերցրած, հանձին նրա Կենտրոնական բանկի: Բանկային գործունեություն անմիջականորեն իրականացնում են պետական իշխանության և պետական կառավարման համապատասխան մարմինները /հիմնականում բանկային մարմինները/: Կենտրոնական բանկը օժտված է պետական իշխանական լիազորություններով: Նա իրավասու է հրատարակելու իրավական պարտադիր ակտեր, ապահեվելու դրանց պահանջների իրականացումը և անհրաժեշտության դեպքում պահանջների կատարումն ապահովելու համար օգտվել պետական հարկադրանքից: Կենտրոնական բանկի իրավասության շրջանակներում արված բանկային բնույթի կարգադրությունները անառարկելիորեն պետք է կատարվեն նրա հասցեատերերի կողմից:

Բանկային իրավական հարաբերությունների մյուս կողմ կարող են հանդիսանալ տարբեր սուբյեկտներ՝ պետական իշխանության և

պետական կառավարման մարմիններ, կազմակերպություններ, հիմնարկներ, գյուղացիական, կոոպերատիվ և հասարակական կազմակերպություններ, քաղաքացիներ:

Բոլոր բանկային իրավական հարաբերությունները ծագում են բանկային գործունեության շրջանակներում և անխզելիորեն կապված են դրամական հարաբերությունների հետ, հետևաբար բանկային իրավական հարաբերությունները դրանք իշխանական գույքային քաղաքացիա-իրավական պայմանագրային հարաբերություններ են:

Վերջապես, բանկային իրավական հարաբերությունների մյուս առանձնահատկությունն էլ այն է, որ սրանք առաջանում, փոփոխվում կամ դադարեցվում են ինչպես Կենտրոնական բանկի օրենքի, այնպես էլ պայմանագրերի հիման վրա: Սա նշանակում է, որ բանկային հարաբերությունների սուբյեկտները իրենց նախաձեռնությամբ կարող են սահմանել, փոփոխել կամ դադարեցնել բանկային բնույթի իրավահարաբերությունները, որոնք ըստ անհրաժեշտության ելնելով պետության շահերից՝ կարող են վերահսկվել Կենտրոնական բանկի կողմից:

Բանկային իրավական հարաբերություններ հասկացության և առանձնահատկությունների ուսումնասաիրության հիման վրա այդ իրավահարաբերությունները կարելի է դասակարգել: Դրանք, որպես կանոն, դասակարգվում են ըստ իրենց նյութական բովանդակության և իրավահարաբերության սուբյեկտների:

Ըստ նյութական բովանդակության բանկային հարաբերությունները կարելի է դասակարգել հետևյալ խմբերի՝

ա) վարկային
բ) վճարահաշվարկային
գ) դրամական շրջանառության, արժութային և արտարժութային օրենսդրության
դ) ավանդների կազմակերպման և այլն:

Բանկային իրավական հարաբերությունների ուսումնասիրությունը ըստ իրավահարբերության սուբյեկտների դասակարգվում են՝



1) ՀՀ ԱԺ և ՀՀ Կենտրոնական բանկի
2) ՀՀ Կենտրոնական բանկի և կառավարության միջև ծավալվող հարաբերությունների
3) Կենտրոնական բանկի և ֆինանսական մարմինների
4) Առևտրային բանկերի և կազմակերպությունների
5) Առևտրային բանկերի և քաղաքացիների:

Ի տարբերություն այլ իշխանական-գույքային /օրինակ՝ վարչական/ իրավահարաբերությունների բանկային իրավահարաբերություններին բնութագրական է բանկային գործունեության ուղղակի կապը ինչպես դրամական միջոցների հավաքման, այնպես էլ բաշխման հետ: Բանկային իրավունքը, որպես ենթաճյուղ, իր վրա կրում է ֆինանսական իրավունքի առանձնահատկություններ:

Անհրաժեշտ է նկատել բանկային իրավական հարաբերությունների մեկ առանձնահատկություն ևս. դրանք չեն կարող ծագել երկու քաղաքացիների միջև: Նմանություններով հանդերձ, բանկային իրավական հարաբերությունները տարբերվում են ինչպես ֆինանսական, այնպես էլ վարկաիրավական հարաբերություններից: Եթե վարչական կամ ֆինանսական հարաբերությունների մեջ սուբյեկտներից մեկը, որպես կանոն, հանդես է գալիս որպես պետական կառավարման մարմին, ապա բանկային իրավական հարաբերությունների սուբյեկտներից մեկը կարող է լինել միայն ու միայն Կենտրոնական բանկի կողմից տրված արտոնագրի հիման վրա գործող բանկային մարմինը:

Ակնհայտ է նաև բանկային իրավական հարաբերությունների նմանությունը քաղաքացիաիրավական հարաբերություններին: Քաղաքացիաիրավական հարաբերությունները, որպես իրավահարաբերության տեսակ, ունեն կամային բնույթ: Դրանք ծագում են քաղաքացիական իրավունքի առարկան հանդիսացող գույքային դրամական հարաբերությունները կարգավորելու հետևանքով: Այս հարաբերությունների ձևավորման համար կարևոր է սուբյեկտների կամահայտնությունը, որը և պայմանավորված է հիմնականում իրավահարաբերության մասնակիցների շահագրգռվածությամբ. բավարարել սեփական պահանջմունքները:

Քաղաքացիական իրավահարաբերություններին ներհատուկ է նաև իրավաբանորեն միմյանցից անկախ մասնակիցների իրավահավասարությունը: Պետությունը քաղաքացիաիրավական հարաբերություններում հանդես է գալիս որպես հատուկ սուբյեկտ՝ իրավաբանական անձի կարգավիճակով, և անկախ դիրքից, ուժից, այդ հարաբերություններում չի կարող թելադրել իր կամքը, մի հանգամանք, որ, ինչպես նկատեցինք, ընդունելի չէ իրավունքի մի շարք ճյուղերում: Այս սկզբունքներով են ձևավորվել բանկային գործունեությունից բխող վարկային, հաշվարկային, ավանդներին վերաբերող պայմանները:

Բանկային հարաբերությունները փոխադարձ կապի և պայմանավորվածության մեջ են բանկային նորմերի հետ: Նորմ-հարաբերություններ կապը բանկային իրավունքում արտահայտվում է նրանով, որ միասնական ճյուղի շրջանակներում, ելնելով բանկային իրավական նորմերի բնույթից, բանկային իրավական հարաբերությունները բաժանվում են՝ ա) նյութական և բ) պրոցեսուալ բնույթի բանկային իրավական հարաբերությունների:

Բանկային իրավական հարաբերությունների միջոցով իրականացվում են բանկային իրավունքի սուբյեկտների այնպիսի իրավունքներ և պարտականություններ, ինչպիսիք են դրամական միջոցների ձեռք բերումը և բաշխումը. դրանով ձևավորվում են դրամական անհրաժեշտ ֆոնդերը:

Պրոցեսուալ բնույթի բանկային իրավական հարաբերությունները արտահայտում են պետության՝ հանձինս Կենտրոնական բանկի, այնպիսի լիազորություններ, որոնք ուղղված են բանկային օրենսդրության խախտումներ թույլ տված առևտրային բանկերի նկատմամբ պատժամիջոցների կիրառման կարգին գործընթացին:

Պրոցեսուալ բնույթի բանկային իրավական հարաբերությունները հանդես են գալիս որպես ֆինանսաիրավական հա-րաբերությունների մասնակիցների՝ օրենքով նախատեսված իրավունքների և պարտականությունների իրացման ձև:



## §3. Բանկային իրավական հարաբերությունների սուբյեկտները

Բանկային իրավական հարաբերությունները իրավական նորմերով կարգավորվող հասարակական հարաբերությունների տարատեսակ են: Կառուցվածքով չեն տարբերվում մյուս իրավահարաբերություններից: Ինչպես ամեն մի իրավահարաբերություն, բանկային իրավահարաբերությունը ունի իր տարրերը. դրանք են՝ իրավահարաբերության սուբյեկտները, օբյեկտները և բովանդակությունը:

Գործնականում կարելի է սահմանազատել «բանկային իրավունք» և «բանկային իրավահարաբերություն» սուբյեկտները: Բանկային իրավունքի սուբյեկտը ավելի լայն հասկացություն է. իր մեջ ներառնում է «բանկային իրավահարաբերություն» սուբյեկտներին վերագրվող տարրեր: Բանկային իրավունքի սուբյեկտները պոտենցիալ իրավունակությամբ օժտված իրավաբանական անձինք են, որոնք ցանկացած ժամանակ կարող են հանդես գալ որպես բանկային հարաբերությունների մասնակիցներ՝ օժտված լինելով որոշակի իրավունքներով և պարտականություններով: Բանկային իրավունքի սուբյեկտները կոնկրետ հարաբերություններին մասնակցելով՝ իրականացնում են օրենքով իրենց վերապահված իրավունքները և պարտականությունները, ձեռք են բերում սուբյեկտիվ իրավունքներ կամ պարտականություններ, հանդես են գալիս որպես բանկային իրավահարաբերությունների մասնակիցներ:

Բանկային իրավունքի սուբյեկտները ի տարբերություն իրավունքի մյուս ճյուղերի սուբյեկտներին վերապահված իրավունքների և պարտականությունների, որոնց շրջանակը ընդարձակ է և իրավահարաբերության ընթացքում կարող են ձեռք բերել մի շարք իրավունքներ կամ կատարել պարտականություններ՝ ինչպես քաղաքացիական իրավունքում, բանկային իրավունքի սուբյեկտները նման հնարավորություններից զրկված են, որովհետև արտահայտում են այնպիսի հասարակական հարաբերություններ, որոնք

առաջանում են բանկային գործունեության ոլորտում և հատուկ են սոսկ այդ ոլորտին:

Բանկային իրավունքի սուբյեկտները կարելի է բաժանել երեք խմբի՝

ա ) ՀՀ Ազգային ժողով,

բ) ՀՀ Կառավարություն

գ) Կենտրոնական բանկ:

Հայաստանի Հանրապետությունը, որպես միատարր ազգային պետական միավոր, որպես ինքնիշխան, ժողովրդավարական պետություն՝ հանձինս ՀՀ Կառավարության, կարող է հանդես գալ իբրև բանկային **հատուկ սուբյեկտ**:

Պետությունը իրավունքի հատուկ սուբյեկտ է համարվում, որովհետև հանդես է գալիս որպես պետական, տնտեսական, քաղաքական և քաղաքացիական իշխանության կրող, հանրային իրավունքի սուբյեկտ, ինքն է սահմանում դրամական շրջանառության, փոխառությունների և վարկային քաղաքականության շրջանակները, իր և բանկային իրավունքի մյուս սուբյեկտների իրավահարաբերություններին մասնակցելու սահմանները, ծավալն ու բովանդակությունը: Նա բանկային հարաբերություններին մասնակցում է անսահմանափակ պետական-իշխանական լիազորություններով: Միայն քաղաքացիաիրավական հարաբերություններին է, որ մասնակցում է քաղաքացիների և իրավաբանական անձանց հետ հավասար հիմունքներով: Այս դեպքում նրա նկատմամբ կիրառվում են իրավաբանական անձանց մասնակցությունը կարգավորող իրավական նորմեր:

ՀՀ Կառավարության, որպես բանկային իրավունքի հատուկ սուբյեկտի իրավաբանական ռեժիմը ամրապնդված է ՀՀ Սահմանադրությամբ, և «ՀՀ Կենտրոնական բանկի» ու «ՀՀ բանկային գործունեության» մասին օրենքներով: ՀՀ Սահմանադրության 89-րդ հոդվածի 4-րդ կետում ասված է, որ կառավարությունը ապահովում է ֆինանսա-տնտեսական, վարկային և հարկային միասնական պետական քաղաքականության իրականացումը, իսկ Կենտրոնական բանկի մասին օրենքի 4-րդ գլխուխը ամբողջովին սահմանում է այն



բանկային իրավահարաբերությունները, որոնց մասնակցում է ՀՀ Կառավարությունը:

Հանրապետության բարձրագույն օրենսդիր մարմնի՝ Ազգային ժողովի որպես բանկային իրավունքի հատուկ սուբյեկտի կարգավիճակը ամրագրված է Սահմանադրության 77-րդ և 83-րդ հոդվածներով: Բավական է հիշատակել ելակետային այն դրույթը, որ ԱԺ հանրապետության նախագահի աջակցությամբ նշանակում է Կենտրոնական բանկի նախագահին և նրա տեղակալին, որպեսզի պարզ դառնա Կենտրոնական բանկի գործունեության ակունքը:

Ինչ վերաբերում է ՀՀ Կենտրոնական (պետական) բանկին, ապա նա բանկային համակարգում պետական իշխանությունը ներկայացնող միակ մարմինն է, որով իրավաբանորեն ճանաչվում է ՀՀ բանկային համակարգը:

Բանկային իրավունքի սուբյեկտներից անհրաժեշտ է սահմանազատել **բանկային իրավահարաբերությունների սուբյեկտներին,** որոնք մեծաթիվ են և հանդես են գալիս տարբեր իրավական կարգավիճակով:

Բանկային իրավահարաբերության սուբյեկտները ըստ սեփականության ձևի կարելի է բաժանել.

1) պետական իշխանության և կառավարման մարմիններ,

2) կոլեկտիվ սուբյեկտներ,

3) անհատական սուբյեկտներ:

Հանրապետության Սահմանադրության 104-րդ հոդվածի համաձայն Հայաստանի Հանրապետության վարչատարածքային միավորներ են մարզերը և համայնքները: Մարզերը կազմված են գյուղական և քաղաքային համայնքներից: Համայնքները, որպես բանկային իրավունքի հասարակական-տարածքային սուբյեկտներ, «ՀՀ տեղական ինքնակառավարման մասին» օրենքի 16-րդ հոդվածի 23-րդ կետով օժտված են բանկային գործունեության իրավունքով: Համայնքի ավագանին որոշում է կայացնում վարկեր և օրենքով սահմանված կարգով այլ միջոցներ ներգրավելու վերաբերյալ:

Հայաստանի հանրապետությունը և վարչատարածքային միջոցները, որպես բանկային իրավունքի սուբյեկտներ, հանդես են գալիս ֆինանսական այլ իրավահարաբերություններում, կրում են իրավունքներ և պարտականություններ: Այսպես, պետությունը պատասխանատու է ներքին պարտքի, Կենտրոնական բանկից ստացած վարկերի և բանկային գործառնությունների այլ տեսակների համար:

Բանկային իրավունքի **կոլեկտիվ սուբյեկտների** բանկային գործունեությունից բխող վարկավորման վճարահաշվարկային գործարքները բազմազան են: Որպեսզի տնտեսավարող մարմինները բանկային իրավական հարաբերությունների մեջ մտնեն, անհրաժեշտ է, որ նրանք լինեն իրավունակ: Իրավունակությունը օրենքով նախատեսված կամ օրենքով թույլատրված` իրավունքներն ունենալու և պարտավորություններ կրելու ունակությունն է: Բանկային իրավունակությունը իրավահարաբերության սուբյեկտի` իրավունքներ ունենալու և իրավաբանական պարտավորություններ կրելու ունակությունն է բանկային գործունեության ոլորտում:

Բանկային գործունեության ոլորտում պետական իշխանության և կառավարման, ինչպես նաև տեղական կազմակերպությունների բանկային իրավունակությունը գործում է տվյալ մարմնի կազմակերպման և նրա իրավասության որոշման պահից: Հենց այդ պահից էլ սկսվում է նրա գործունեությունը, այսինքն իր իրավունակությունը կենսագործելու ունակությունը: Բանկային գործունեությունը ենթադրում է տվյալ սուբյեկտի բանկային իրավունակության առկայություն:

Պետական իշխանությունը և կառավարությունը, ինչպես նաև տնտեսական կազմակերպությունները ունեն օրենքով կամ այլ նորմատիվ ակտերով սահմանված որոշակի իրավասություն և այդ իրավասության շրջանակներում կարող են հանդես գալ որպես բանկային հարաբերությունների սուբյեկտներ: Բանկային իրավունակությունը ենթադրում է, որ պետական և տնտեսական բոլոր մարմինները օժտված են պետական իշխանությամբ և գործադիր-



կարգադրիչ լիազորություններով` բանկային գործունեություն իրականացնելու համար: Այդ լիազորությունների բնույթը և ծավալը պայմանավորված է տվյալ մարմնի իրավասությամբ: Հետևաբար կարելի է ասել, որ բանկային գործունեությունը իրականացնող բոլոր մարմինների բանկային իրավունակությունը ևս որոշվում է նրա իրավասության ծավալով:

Բանկային գործունեությանը մասնակցող բոլոր մարմինների և տնտեսական կազմակերպությունների իրավասությունն արտացոլվում է իրենց կանոնադրություններում, և այլ նորմատիվ ակտերում: Դրանցով կարելի է սահմանել բանկային հարաբերությունների այն տեսակները, որոնցում որպես մասնակիցներ կարող են հանդես գալ բանկային ծառայությունից օգտվող մարմինները:

Որպես բանկային հարաբերությունների կոլեկտիվ սուբյեկտներ, պետական իշխանությունը, կառավարման ընդհանուր (կառավարություն, տեղական ինքնակառավարման մարմիններ) և ճյուղային, նաև հատուկ իրավասության մարմինները հիշյալ հիմնադիր իրավական ակտերի ուժով, որպես բանկային իրավական հարաբերությունների մասնակիցներ, իրենց իրավասության սահմաններում կարող են հրատարակել նորմատիվ և անհատական (որոշումներ, հրամաններ, հրահանգներ, կարգադրություններ) բնույթի իրավական ակտեր` իրենց ենթակա կառույցների համար սահմանելով բանկային ծառայություններից օգտվելու կարգը:

Բանկային իրավունակությամբ օժտված են ոչ միայն իշխանության և կառավարման մարմիններն ամբողջությամբ վերցրած, այլև գործադիր մարմինների ներքին կառուցվածքային ստորաբաժանումները: Օրինակ, եթե նախարարությունն, ամբողջությամբ վերցրած հանդես է գալիս որպես բանկային իրավական հարաբերության մասնակից, այսինքն օժտված է բանկային իրավունակությամբ, ուրեմն բանկային իրավունակությամբ է օժտված նաև այդ նախարարության կենտրոնական ապարատի յուրաքանչյուր օղակ` գլխավոր վարչություն, վարչություն և բաժին, քանի որ դրանք ևս այս կամ այն չափով մասնակցում են բանկային գործունեությանը,

օգտվում են բանկային ծառայություններից՝ ուղղված նախարարության ընդհանուր խնդրի կենսագործմանը:

Իշխանության և կառավարման մարմնի կառուցվածքային ստորաբաժանումները ևս կարող են լինել բանկային իրավական հարաբերությունների սուբյեկտներ, սակայն դրանք չեն ճանաչվում որպես իշխանություն կամ կառավարման ինքնուրույն մարմիններ: Դրանց ֆինանսական իրավունակության սահմանը ավելի նեղ է: Առավել նեղ իրավունակությամբ են օժտված ֆունկցիոնալ օղակները:

Բանկային իրավունքի կոլեկտիվ սուբյեկտների բանկային իրավունակությունը կարող է լինել **ընդհանուր և հատուկ:**

Ընդհանուր իրավունակության համար ընդհանրապես բնորոշ է բանկային գործունեության իրականացման ընդհանրական մակարդակը, իսկ հատուկ իրավունակության համար բնորոշ է բանկային ծառայությունների շնորհիվ հատուկ խնդիրների և հանձնարարությունների իրականացման ունակությունը, ինչպիսիք հասարակական կյանքում իրականացնում է հանրապետության Կենտրոնական բանկը և բանկային համակարգի մյուս մարմինները:

Բանկային իրավունքի կոլեկտիվ սուբյեկտների համակարգում անհրաժեշտ է առանձնացնել հատկապես **պաշտոնատար անձանց,** որոնց բանկային իրավունակության և գործունեության իրավական գնահատման հարցերը ժամանակի ընթացքում երբեք չեն լուսաբանվել: Բանկային գործունեության ժամանակակից հիմնախնդիրները և իրավական հարաբերությունների կարգավորմանն ուղղված օրենսդրությունը պահանջ են առաջադրում՝ սահմանել պետական ծառայողների, հատկապես բանկային գործարքների ոլորտում տնտեսական մարմինների պաշտոնատար անձանց (հիմնարկներ, կազմակերպության ղեկավար, գլխավոր հաշվապահ) բանկային իրավունակության և գործունեության ծագման, դրանց ծավալի, բովանդակության և իրավական պատասխանատվության կանոնները:



Պետական բոլոր ծառայողները բանկային իրավունակությամբ օժտված չեն: Ծառայողների բանկային իրավունակությունը որոշվում է իշխանության և գործադիր ոլորտում նրանց զբաղեցրած պաշտոնով: Տնտեսական ղեկավարների, գլխավոր հաշվապահների բանկային իրավունակությունը և գործունեությունը որոշվում է պետական ու տնտեսական մարմինների բանկային իրավունակության բնույթով: Պետական կառույցներում ծառայողների բանկային իրավունակությունը որոշվում է իշխանության, գործադիր և տնտեսական ապարատում նրանց զբաղեցրած պաշտոնով, տեղով, իրավասության շրջանակներով: Պատահական չէ, որ տնտեսական մարմինների բանկային գործառնությունների իրականացման իրավունքը և պատասխանատվությունը ըստ «Հաշվապահական հաշվառման մասին» ՀՀ Աժ 2002թ. դեկտեմբերի 26- ի օրենքի՝ դրված է տնտեսական մարմնի ղեկավարի և գլխավոր հաշվապահի վրա: Այս պաշտոնատար անձանց ֆինանսական ու բանկային գործառնությունների իրականացումը իրավական նշանակություն ունի միայն տվյալ մարմնի սահմաններում:

Բանկային հարաբերությունների կոլեկտիվ սուբյեկտների ամենատարածված տեսակը սեփականության տարբեր ձևերի վրա հիմնված կազմակերպությունները, հիմնարկներն ու ընկերություններն են:

Պետական իշխանությունը և կառավարական մարմինները եթե կենսագործում, ղեկավարում են պետության գործառույթները, ապա կազմակերպությունները, ընկերությունները նյութական ու մշակութային բարիքներ են արտադրում և բավարարում հասարակության նյութական և հոգևոր անմիջական պահանջները: Նրանց գործունեության բովանդակությունը արտադրությունն է, բաշխումը, կենցաղային սպասարկումը և այլն: Կազմակերպությունների, հիմնարկների և ընկերությունների ֆինանսական իրավունակությունը ևս ծագում է հիմնադրման, կազմակերպման պահից: Սրանց իրավասությունը որոշվում է իրենց կանոնադրությամբ:

Հիմնարկի, կազմակերպության, որպես բանկային իրավունքի (այլ ոչ որպես բանկային հարաբերությունների սուբյեկտի) հասկացությունների սուբյեկտի լիարժեք ընկալմանը նպաստում է քաղաքացիական իրավունքի տեսությունը և գործող «ՀՀ քաղաքացիական» օրենսգիրքը: Ըստ քաղաքացիական իրավունքի գործնականում քաղաքացիները շատ հաճախ արտադրատնտեսական գործունեություն իրականացնելու համար միավորվում են զանազան կազմակերպությունների մեջ, ստեղծում տնտեսական միավորներ: Որպեսզի քաղաքացիների նպատակային միավորումները կարողանան հանդես գալ բանկային հարաբերությունների մեջ, ձեռք բերել իրավունքներ, կրել պարտականություններ, կարողանան պաշտպանել իրենց իրավունքները և օրինական շահերը, պետք է ճանաչվեն իրավահարաբերության սուբյեկտ, ավելի կոնկրետ՝ հանդես գան որպես իրավաբանական անձ: Իրավաբանական անձ կարող է ճանաչվել ոչ թե անձանց ցանկացած միավորում կամ միություն, այլ առանձնահատուկ միավորվող այն կազմակերպությունը, որն օժտված է օրենքով պահանջվող յուրատիպ հատկանիշներով, որոնցից յուրաքանչյուրն անհրաժեշտ է, իսկ բոլորը միասին բավարար են, որպեսզի կազմակերպությունը ճանաչվի քաղաքացիական իրավունքի սուբյեկտ՝ իրավաբանական անձ[1]: «ՀՀ քաղաքացիական օրենսգիրքը» իրավաբանական անձ ճանաչվելու համար սահմանում է չորս հիմնական հատկանիշ՝ կազմակերպական միասնություն, առանձնացված գույքի առկայություն, իր անունից հանդես գալու իրավունք և ինքնուրույն գույքային պատասխանատվություն: Կազմակերպությունը, հիմնարկը և տնտեսական ցանկացած միավոր որպեսզի հանդես գա որպես բանկային իրավունքի սուբյեկտ, պետք է օժտված լինի իրավասուբյեկտությամբ, լինի իրավունակ և գործունակ: Այսինքն նա կարող է ձեռք բերել այնպիսի իրավունքներ և կրել այնպիսի պարտականություններ, որոնք ապահովում են իր նպատակների ու խնդիրների իրականացումը:

[1] Տե'ս Ãðàæäàíñêîå ïðàâî, ×àñòü 1. Èçä-âî “Ïðîñïåêò”, Ì., 1999, էջ 123.



Ի տարբերություն քաղաքացիների, իրավաբանական անձն օժտված է ոչ թե ընդհանուր, այլ հատուկ իրավունակությամբ, այսինքն հանդես է գալիս կանոնադրային իրավունակությամբ[1]: Կազմակերպության, հիմնարկի, ընկերության հատուկ իրավունակությունը վերջնական սահման չէ, քանի որ ՀՀ քաղաքացիական օրենսգրքի 52-րդ հոդ. ամրապնդում է այն դրույթը, որ առևտրային կազմակերպությունները օրենքով չարգելված գործունեության ցանկացած տեսակի համար կարող են ունենալ անհրաժեշտ քաղաքացիական իրավունքներ և կրել պարտականություններ: Օրենսդիրը թույլատրելի է համարում **ունիվերսալ (համընդհանուր) իրավունակությունը**, որով և տնտեսավարող բոլոր մարմինները կարող են հանդես գալ որպես բանկային իրավահարաբերությունների սուբյեկտներ, վճարել հարկեր, բաշխել շահույթ, բյուջետային ֆինանսավորման եղանակով ստանալ ֆինանսական միջոցներ, տնօրինել դրանք, ինչպես նաև վարկային պայմանագրով բանկային մարմիններից ստանալ վարկեր, սահմանել հաշվարկների չեկեր և այլն:

Կազմակերպությունը, հիմնարկը որպես իրավաբանական անձ ստեղծված է համարվում պետական գրանցման պահից:

Կազմակերպությունը որպես բանկային իրավահարաբերության սուբյեկտի իրավունակություն, իրավասուբյեկտության միայն մեկ տարրն է: Նրա երկրորդ տարրը գործունակությունն է, որը ծագում է իրավունակության հետ միասին, կազմակերպվում հիմնարկի, ընկերության ստեղծման պահին:

Միասնական նպատակային գործունեություն ծավալելու, իրավաբանական անձի կամքը ձևավորելու, նրա գործունեությունը ղեկավարելու, իրավունքներ ձեռք բերելու և պարտականություններ ստանձնելու համար ՀՀ քաղաքացիական օրենսգրքի 57-րդ հոդ-

[1] Տե'ս Ïðåäïðèíèìàòåëüñêîå ïðàâî, Êóðñ ëåêöèé, Èçä-âî “Þðèä. ëèò.”, Ì., 1993.

վածը սահմանում է **իրավաբանական անձի մարմին** հասկացությունը: Հետևաբար իրավաբանական անձի իրավունակությունը և գործունեությունը իրականացնում է ոչ թե իրավաբանական անձը, որպես այդպիսին, այլ նրա մարմինները: Այլ խոսքով, բանկային գործունեություն իրականացնելիս իբրև բանկային իրավական հարաբերությունների սուբյեկտներ հանդես են գալիս ոչ թե իրենք՝ կազմակերպությունները, այլ նրանց գործադիր մարմինները, այսինքն՝ նրանց տնօրինությունները: Կազմակերպության բանկային գործունեությունը իրականացնում է նրա գործադիր տնօրինությունը (ղեկավարները), այլ ոչ թե աշխատավորների կոլեկտիվը: Հետևաբար, որպես բանկային իրավական հարաբերությունների սուբյեկտ կարող է հանդես գալ ոչ թե ամբողջ կազմակերպությունը, այլ նրանց տնօրինությունը, քանի որ բոլոր վարչական լիազորությունները իրականացնում է տնօրինությունը, որը գործում է կառավարության անունից և լիազորված է կազմակերպելու տվյալ մարմնի կառավարումը:

Բանկային իրավունքի կոլեկտիվ սուբյեկտներ են անհատական և ընտանեկան, գյուղական և գյուղացիական կոլեկտիվ տնտեսությունները, որոնք հանդես են գալիս որպես ինքնուրույն տնտեսավարող սուբյեկտներ վարկահաշվարկային և այլ բնույթի բանկային իրավահարաբերություններում: Վերջապես բանկային իրավունքի **անհատական** սուբյեկտներ կարող են հանդես գալ քաղաքացիները:

Բանկային հարաբերությունների սուբյեկտներ կարող են լինել ոչ միայն մեր հանրապետության քաղաքացիները, այլև օտարերկրացիներ և քաղաքացիություն չունեցող անձինք:

ՀՀ քաղաքացու բանկային իրավունակությունը ծագում է նրա ծննդյան պահից և դադարում է նրա մահվամբ:

Քաղաքացիների բանկային գործունեությունը վրա է հասնում որոշակի տարիքի հասնելու դեպքում:

Քաղաքացիների, որպես բանկային իրավական հարաբերությունների սուբյեկտների գործունեության բացահայտման համար



էական նշանակություն ունեն քաղաքացիական իրավունքի մշակած և օրենսդրական ամրապնդում ստացած գործունեության սկզբունքները:

ՀՀ քաղ. օր. 24-րդ հոդ. համաձայն գործունակություն է համարվում քաղաքացու՝ իր գործողություններով քաղաքացիական իրավունքներ ձեռք բերելու և իրականացնելու, իր համար քաղաքացիական պարտավորություններ ստեղծելու ու դրանք կատարելու ունակությունը: Հանրապետության քաղաքացիական օրենսգիրքը, որպես կանոն, քաղաքացուն լրիվ գործունակ է ճանաչում 18 տարեկանը լրանալու պահից: Այս սկզբունքը առանց բացառությունների կիրառվում է նաև բանկային իրավունքի սուբյեկտների համար: 18 տարին չլրացած քաղաքացիները բանկային իրավունքում նույնպես անվանվում են անչափահասներ, որոնք բաժանվում են երկու խմբի՝ ա) մինչև 14 տարեկաններ (փոքրահասակներ), բ) 14-ից 18 տարեկաններ (անչափահասներ):

Քաղաքացիական օրենսդրությունը կարգավորելով բանկային իրավական հարաբերությունները, սահմանում է, որ անչափահասները առանց օրինական ներկայացուցիչների կարող են տնօրինել իրենց աշխատավարձը, կենսաթոշակը, կրթաթոշակը և այլ եկամուտներ, ավանդներ ներդնել վարկային հիմնարկներ և տնօրինել դրանք: Փոքրահասակները և հոգեկան հիվանդները օժտված չեն բանկային գործունեությամբ: Բանկային գործառնությունները նրանց փոխարեն կատարում են ծնողները, որդեգրողները, խնամակալները կամ պետական լիազոր մարմինները:

Հայաստանի Հանրապետությունում քաղաքացիների բանկային իրավունակության ծավալը որոշվում է Սահմանադրությամբ, ինչպես նաև բանկային իրավական նորմերի ողջ համակցությամբ: Բանկային մարմինները իրականացնելով իրենց վրա դրված խնդիրները՝ բանկային իրավական հարաբերությունների մեջ են մտնում ինչպես հանրապետության, այնպես էլ օտարերկրյա և քաղաքացիություն չունեցող անձանց հետ: Քաղաքացիները, իրենց հերթին, կենսագործելով իրենց սուբյեկտիվ իրավունքները և կա-

տարելով բանկային գործառույթներից բխող վճարահաշվարկային, վարկային, խնայողությունների և այլ բնույթի պարտականություններ՝ մշտական իրավական հարաբերությունների մեջ են մտնում բանկային մարմինների հետ:

Բանկային իրավական նորմերը կարգավորելով քաղաքացիների և բանկերի միջև ծագող իրավական հարաբերությունները՝ քաղաքացիներին լայն իրավունքներ են վերապահում գանգատարկելու բանկային մարմինների ու նրանց պաշտոնատար անձանց անօրինական գործողությունները:

Բանկային օրենսդրությունը կարգավորում է նաև այն դեպքերը, երբ օտարերկրյա և քաղաքացիություն չունեցող անձինք կարող են հանդես գալ հանրապետության վարկային իրավահարաբերությունների սուբյեկտ: Բանկային իրավական հարաբերությունների վերլուծությունները վկայում են, որ իբրև այս հարաբերությունների սուբյեկտներ հանդես են գալիս ազգային, պետական, վարչատարածքային, տնտեսական մարմինները, ինչպես նաև հանրապետության, օտարերկրյա և քաղաքացիություն չունեցող ֆիզիկական անձինք, որոնք առօրյա մասնակցություն ունեն բանկային գործունեությանը, հանդես են գալիս որպես այդ միջոցների օգտագործողներ, որոնց ֆինանսական իրավունակության և գործունեության ծավալը սահմանված է բանկային իրավական նորմերով:



## §4. Բանկային իրավական հարաբերությունների ծագման, փոփոխման և դադարեցման հիմքերը

Իրավահարաբերությունները ընդհանրապես ինքնին չեն առաջանում: Նրանք ծագում, փոփոխվում կամ դադարում են կյանքի որոշակի հանգամանքների (փաստերի) վրա հասնելու հետևանքով: Իրավահարաբերությունները ձևավորվում և փոփոխվում են իրականության մեջ գոյություն ունեցող այնպիսի հանգամանքների առկայությամբ, որոնք առաջացնում են որոշակի իրավական հետևանքներ: Այսպիսի հանգամանքները իրավագիտության մեջ ընդունված է անվանել իրավաբանական փաստեր:

Բանկային իրավական հարաբերությունների ծագման, փոփոխման և դադարեցման համար հիմք են հանդիսանում իրավաբանական փաստերը, այսինքն գործողությունները (օրինակ, ավանդատուները) կամ եղելությունները (օրինակ՝ ծնունդը, մահը, երկրաշարժը, ջրհեղեղը և այլն): Բանկային իրավական նորմերը դրանց առկայության հետ են կապում որոշակի իրավական հետևանքների առաջացումը: Իրավաբանական փաստերը կյանքի կոնկրետ հանգամանքներ են, որոնց հետ իրավունքի նորմը կապում է իրավահարաբերությունների ծագումը, փոփոխումը կամ դադարեցումը:

Իրավաբանական փաստերը սուբյեկտի անհատական կամքի հետ ունեցած կապի տեսակետից բաժանվում են երկու խմբի՝ գործողությունների և եղելությունների[1]:

Գործողություններն այնպիսի փաստեր են, որոնք կատարվում են մարդկանց կամքով. դրանք փաստորեն մարդկանց կամքի արտահայտություններ են: Օրինականության տեսակետից մարդկանց բոլոր գործողությունները լինում են **իրավաչափ** և **ոչ իրավաչափ**:

**Իրավաչափ գործողությունները** իրավաբանական այնպիսի փաստեր են, որոնք հանգեցնում են իրավունքի նորմով նախատես-

[1] Տե՛ս Վ.Ն.Խրոպանյուկ, Պետության և իրավունքի տեսություն, «Գոչ», Ե., 1997, էջ 376:

ված իրավաբանական իրավունքների և պարտականությունների ծագման:

Իրավաչափ գործողությունները, իրենց հերթին, բաժանվում են իրավաբանական ակտերի և իրավաբանական արարքների:

Բանկային իրավական հարաբերությունները մեծամասամբ ծագում են իրավաչափ այնպիսի գործողությունների հետևանքով, ինչպիսիք են նորմատիվային և անհատական բանկային իրավական ակտերը: Այդպիսի նորմատիվային իրավական ակտ է «ՀՀ Կենտրոնական բանկի մասին» օրենքը:

Բանկային իրավական հարաբերության փոփոխություններ, որպես կանոն, մեծամասամբ չեն կարող տեղի ունենալ նրանց մասնակիցների ցանկությամբ: Այդ փոփոխությունները կարող են կյանքի կոչվել ինչպես նորմատիվային ակտերի պահանջով, այնպես էլ կողմերի համաձայնությամբ, որոնք փոփոխություններ են սահմանում հանգամանքների և եղելությունների շրջանակներում: Օրինակ, բանկային վարկի կամ հաշվի պայմանագրի պահանջները առաջ են բերում համապատասխան բանկային իրավական հարաբերության փոփոխություններ:

Իրավաբանական արարքները այնպիսի իրավաչափ գործողություններ են, որոնք հատկապես ուղղված չեն իրավահարաբերությունների առաջացմանը, փոփոխմանը կամ դադարեցմանը, սակայն կարող են առաջ բերել այդպիսի հետևանքներ: Օրինակ, տնտեսավարող սուբյեկտի բողոքի հիման վրա բանկային մարմինը իրավունք ունի մինչև բողոքի լուծումը դադարեցնել վարկավորումը: Այս օրինակում բողոքը իրավաբանական արարք է, որի ուժով բանկը դադարեցնում է վարկավորումը: Բանկային իրավաբանական արարքները, որպես իրավաչափ գործողությունների համակցություն, կարելի է բաժանել երկու հիմնական խմբի՝

1) Իրավաբանական արարքներ, որոնք ուղղվում են բանկային իրավական հարաբերությունների սուբյեկտների իրավունքների պաշտպանությանը, այսինքն երբ իրավահարաբերության մասնա-



կիցը օգտվում է բանկային գործունեության ոլորտում իրեն վերապահված իրավունքներից (վարկային հայտ ներկայացնելը):

2) Իրավաբանական արարքներ, որոնք ուղղվում են բանկային իրավահարաբերությունների մասնակիցների պարտավորությունների կատարմանը (վարկ վերցնելը, տոկոսներ վճարելը):

**Ոչ իրավաչափ** գործողություններ են համարվում այն փաստերը, որոնց կատարելն արգելված է օրենքով, այսինքն չեն համապատասխանում իրավական նորմի պահանջներին, առաջ են բերում բանկային իրավական խախտումներ: Ոչ իրավաչափ գործողությունները բանկային գործողության ոլորտում այնպիսի խախտումներ են, որոնք ուղղված են ՀՀ Կենտրոնական բանկի կողմից սահմանված տնտեսական նորմատիվների պահանջների ոտնահարմանը: Ոչ իրավաչափ գործողությունները բանկային իրավունքում դրսևորվում են բանկային իրավախախտումների և հանցագործությունների տեսքով: Այսպես, ՀՀ քրեական օրենսգիրքը բանկային վարկը ոչ իր նպատակին, աննպատակ օգտագործելը դիտում է ոչ իրավաչափ գործողություն, իրավախախտում, որի համար նախատեսում է քրեական պատասխանատվություն: Ոչ իրավաչափ ճանաչվում է այն գործողությունը, որը կարող է արտահայտվել օրենքով սահմանված գործողությունների կատարումից ձեռնպահ մնալու կամ պարտավորությունների չկատարելու եղանակներով:

Անգործության դրսևորումը, որպես ոչ իրավաչափ գործողություն, առաջ է բերում բանկային պատասխանատվություն:

Բանկային իրավահարաբերությունները գործնականում կարող են առաջանալ ինչպես մեկ, այնպես էլ մեկից ավելի իրավաբանական փաստերի հիման վրա: Այսպիսի իրավահարաբերությունների ծագման հիմքը համարվում է բարդ: Այսպես, ներդրումների կապակցությամբ, հատկապես կապիտալ շինարարության և վերանորոգման ոլորտում, վարկային իրավահարբերություններ կարող են առաջանալ, եթե առկա են իրավաբանական մի քանի այնպիսի փաստեր, ինչպիսիք են շինարարության թույլտվությունը, նախագծային-նախահաշվային փաստաթղթերը, ֆինանսավորման ընդ-

հանուր և տարեկան պլանները և այլն: Սրանցից մեկի բացակայության դեպքում կապիտալ շինարարությունը չի սկսվի, հետևաբար վարկային հարաբերություններ չեն առաջանա:

Ֆինանսաիրավական հարաբերությունները ծագում, փոփոխվում և դադարեցվում են նաև եղելության հիման վրա, որոնք վրա են հասնում մարդկանց կամքից անկախ, անկանխատեսելի են: Օրինակ՝ մահը, ծնունդը, բնական աղետները, դժբախտ դեպքերը և այլն: Քաղաքացու մահվամբ դադարում է վարկի կամ հաշվի պայմանագիրը բանկի և հաճախորդի միջև:

Բանկային իրավահարաբերությունների ծագման, փոփոխման և դադարեցման պայմանները, այսինքն իրավաբանական փաստերը նախատեսվում են բանկային իրավական նորմերի հիպոթեզով:



# ԳԼՈՒԽ V

# ՀՀ ԲԱՆԿԱՅԻՆ ՀԱՄԱԿԱՐԳԻ ՄԱՐՄԻՆՆԵՐԻ ԻՐԱՎԱՍՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԳՈՐԾԱՌՈՒՅԹՆԵՐԸ

## §1.Բանկային մարմինների գործունեության իրավակազմակերպական և վարկային մեթոդների բանկային առանձնահատկությունները

ՀՀ Կենտրոնական բանկի առջև դրված խնդիրները ըստ իրավական գործունեության բովանդակության կարելի է դասակարգել երկու խմբի՝

ա) իրավա - կազմակերպչական

բ) վարկային:

Իրավա-կազմակերպչական խնդիրները Կենտրոնական բանկը իրականացնում է գործադիր,կարգադրիչ և վերահսկողական գործառույթների միջոցով, որոնք հիմնականում դրսևորվում են դրամական էմիսիայի, դրամաշրջանառության կազմակերպման, դրամավարկային և արժութային քաղաքականության մշակման և իրականացման ու այլ պետական մարմինների բանկային սպասարկման կազմակերպման ձևերով: Կենտրոնական բանկի հիմնական վերահսկողական գործառույթները որոշակիորեն սահմանված են գործող օրենսդրությամբ, որոնց ընդհանուր բովանդակությունը հանգում է բանկային գործունեություն և արտարժույթով բանկային գործառնություններ իրականացնելու արտոնագրերի տրամադրմանը, հանրապետության տարածքում գործող բանկերի, այլ ֆինանսավարկային կազմակերպությունների գործունեության հսկողությանը:

Կենտրոնական բանկի վերահսկիչ գործունեությունը ամրապնդված է ինչպես «ՀՀ Կենտրոնական բանկի մասին» օրենքի 36-րդ, այնպես էլ «Բանկերի և բանկային գործունեության մասին»

օրենքի մի շարք հոդվածներում[1]:

Օրենքով սահմանված բանկային գործառնությունների թվում իրավական կարգավորման առանձնահատկություններով, որպես համալիր իրավական ինստիտուտ, կարևոր դեր ունի բանկային վարկավորումը, որի իրավական կարգավորումը տեսական և գործնական մեծ հետաքրքրություն է ներկայացնում: Բանկերը ժամանակակից աշխարհում հանդես են գալիս որպես վարկային կազմակերպություններ, որոնք կենտրոնացնում են ժամանակավորապես ազատ դրամական միջոցները և օգտագործում վարկի ձևով: Բանկերը կատարում են վճարային կանխիկ հաշվարկներ, վարկավորման և ֆինանսավորման գործառնություններ, բաց են թողնում դրամ և տարատեսակ արժեթղթեր[1]:

Շուկայական հարաբերություններին անցնելու պայմաններում արմատապես վերակառուցվում է բանկերի և բանկային համակարգի գործունեությունը: Բանկային վարկերի օգտագործման արդյունավետությունը խիստ կախվածության մեջ է դրվում պատվիրատուների՝ կազմակերպությունների և քաղաքացիների սպասարկման որակից, ինչպես նաև ավանդների ու փոխատվության տոկոսների չափից: Շուկայական հարաբերությունների զարգացմանը զուգընթաց բանկային համակարգը առևտրային հաշվարկի և ինքնաֆինանսավորման սկզբունքներին անցնելու կապակցությամբ կիրառվում են վարկավորման ժամանակակից արդյունավետ նոր ձևեր ու մեթոդներ, որոնք կոչված են ապահովելու վարկային ռեսուրսների վերադարձելիությունը և շրջանառելիությունը:

Բանկերը ներկայումս դարձել են ինքնուրույն կազմակերպություններ և նրանց գործունեությունն ավելի մեծ չափով առևտրային բնույթ է ստացել: Առևտրային սկզբունքներով են աշխատում բանկային համակարգի բոլոր մարմինները՝ բացառությամբ Կենտրոնական բանկի:

---

[1] Տե՛ս «ՀՀ Բանկերի և բանկային գործունեության մասին» օրենքի 6-րդ և 7-րդ գլուխները:

[1] Տե՛ս մանրամասն Ë.Ã. Âôèìîâ, Áàíêîâñêîå ïðàâî, Èçä. ÁÅÊ, Ì., 1994, էջ 6:



Անհրաժեշտ է նկատել, որ վարկային մարմնի առկայությունը և նրա կողմից վարկային գործառությունների կատարումը, ավանդների ընդունումը և վճարումը դեռևս բավարար պայման չէ տվյալ պետության վարկային համակարգի մասին լիարժեք դատողություններ անելու համար: Վարկային համակարգը ցանկացած պետության միևնույն նպատակի և խնդիրների իրականացման համար կազմակերպաիրավական ձևերով միավորված վարկային մարմինների համակցություն է, որը գլխավորում է կենտրոնական կամ ազգային բանկը՝ իրականացնելով բանկային համակարգի կառավարման գործառույթ: Պատահական չէ, որ վարկային համակարգ ստեղծելու նպատակով ինքնիշխան Հայաստանի Հանրապետությունը անկախության առաջին օրից ձեռնամուխ եղավ հանրապետության Կենտրոնական բանկի ստեղծմանը:

1996 թ. հունիսի 30-ին, ինչպես ասվել է, ԱԺ ընդունեց օրենք «Հայաստանի Հանրապետության Կենտրոնական բանկի» ու «Բանկերի և բանկային գործունեության մասին», որով նախկին օրենքները կորցրեցին իրենց ուժը: Կենտրոնական բանկի համար նման իրավական նոր ռեժիմի սահմանումը բնավ չի խոսում այն մասին, որ վերջինս դուրս է պետական իշխանության և կառավարման բարձրագույն մարմինների տնտեսական համագործակցությունից, ընդհակառակը, Կենտրոնական բանկը մասնակցում է կառավարության տնտեսական ծրագրերի մշակմանը և աջակցում է կառավարության կողմից իրականացվող միջոցառումներին:

Բանկային համակարգի մարմինների ամենօրյա գործունեության, ձևերի շարքում իր հասարակական-տնտեսական անհրաժեշտությամբ, իրավական կարգավորման ժամանակակից ձևերով ու մեթոդներով առանձնանում է բանկային վարկը: Բանկային վարկը դրսևորվում է որպես տնտեսական հարաբերությունների համակցություն, որի գործընթացում պետության, իրավաբանական և ֆիզիկական անձանց ժամանակավորապես ազատ դրամական միջոցները հավաքվում են բանակային մարմիններում և վերադարձելիության պայմանով տրվում են տնտեսավարող սուբյեկտներին ու քաղաքացիներին:

Ընդլայնված վերարտադրության գործընթացում մշտապես առաջանում են դրամային ազատ միջոցներ, խոշոր գումարներ: Օրինակ՝ միանգամից, ամբողջ ծավալով չեն օգտագործվում կազմակերպություններին հատկացված հաշիվներին՝ արտադրանքի իրացման համար փոխանցված գումարները: Ժամանակավորապես ազատ են նաև ամորտիզացիոն մասհանումները, չբաշխված շահույթը և այլն: Ազատ միջոցներ ունեն նաև խնայբանկերը, ապահովագրական մարմինները: Մի շարք կազմակերպությունների, ձեռնարկությունների և քաղաքացիների մոտ տնտեսական գործառնություններ իրականացնելու ընթացքում առաջանում է լրացուցիչ դրամական միջոցներ օգտագործելու կարիք:

Ակնհայտորեն աննպատակահարմար է ձեռնարկությունը ապահովել նրա առավելագույն պահանջները բավարարող շրջանառու միջոցներով, քանի որ դրա հետևանքով ձեռնարկության միջոցների զգալի մասը երկար ժամանակ կմնա առանց օգտագործման փոխանակ տնտեսության կարիքների վրա օգտագործվելու: Դրա համար էլ ձեռնարկությունները օժտված են իրենց նվազագույն կարիքները բավարարող շրջանառու միջոցներով: Իսկ այն դեպքում, երբ կարիք է առաջանում ժամանակավորապես մեծացնել ձեռնարկության շրջանառու միջոցները, ապա նրան օգնության է գալիս բանկը՝ տալով կարճատև վարկեր: Նման վարկավորման պրակտիկայում ներկայումս վարկերը ձեռք են բերում կայուն բնույթ և ներկայացնում են բանկի բաժնային մասնակցությունը տնտեսական կազմակերպությունների շրջանառու միջոցների ձևավորման մեջ:

Համաձայն ՀՀ Կենտրոնական բանկի մասին օրենքի 38-րդ հոդվածի, բանկային վարկը լինում է կարճատև և երկարատև: Կարճատև բանկային վարկը տրվում է 6 ամսից ոչ ավելի ժամկետով: Կարճատև վարկերն իրենց հիմնական զանգվածով տրվում են առևտրային կազմակերպություններին և քաղաքացիներին: Կարճատև վարկավորման օբյեկտներ են տնտեսական կազմակերպությունների ընթացիկ ակտիվները: Կարճատև վար-



կերը բանկերի կողմից տրվում են վարկային պլանին համապատասխան:

Բանկային երկարատև վարկավորման իրավական հիմքը՝ վարկի ժամկետի տևողության իմաստով, ՀՀ Կենտրոնական բանկի մասին օրենքի 38-րդ հոդվածով բանկին վերապահված իրավունքն է, որով Կենտրոնական բանկը բանկային համակարգի մյուս մարմիններին բացառության կարգով կարող է տրամադրել մեկ տարի մարման ժամկետ ունեցող վարկեր:

Շուկայական հարաբերությունների պայմաններում նշանակալից չափով աճել է տնտեսական կազմակերպությունների կապիտալ ներդրումների երկարատև վարկավորման դերը: Երկարատև վարկավորման օբյեկտներ են հանդիսանում նոր ձեռնարկությունների, բնակարանային շինարարության, տեխնիկական վերազինման, նաև սոցիալ-տնտեսական նշանակության ծախսերը:

Բանկային վարկավորումը իրականացվում է որոշակի սկզբունքներով, որոնք սահմանված են բանկային օրենսդրությամբ: Վարկավորման սկզբունքները իրենց ուղղակի և անուղղակի դրսևորումներն են գտել ինչպես բանկային գործունեությունը կարգավորող իրավունքի ակտերում,այնպես էլ «ՀՀ քաղաքացիական օրենսգրքի» 47-րդ գլխում, որով կարգավորվում են բանկային վարկավորման գործընթացում ծագող իրավահարաբերությունները: Ընդհանրացնելով բանկային և քաղաքացիական օրենսդրությունը վարկավորման ոլորտում՝ կարելի է առանձնացնել հետևյալ սկզբունքները՝ վարկավորման ուղղակիություն, նպատակայնություն, ժամկետայնություն, վերադարձելիություն, հատուցանելիություն, ապրանքա-նյութական արժեքներով ապահովվածություն, որոնցից յուրաքանչյուրը ունի իրավական կարգավորման անհրաժեշտություն: Այդ սկզբունքները դեռևս պատշաճ ուշադրության չեն արժանացել հայրենական իրավագիտության տեսական մշակումներում:

Բանկային վարկավորման նպատակային բնույթն արտահայտվում է նրանում, որ բանկային վարկերը ծախսվում են այն օբյեկտների վրա, որոնց համար հատկացվել են կոնկրետ, ճշգրիտ ժամ-

կետով, որի ընթացքում տնտեսական մարմինները դրանք կարող են օգտագործել մինչև 12 ամիս: Այս ժամկետը անցնելուց հետո այդ մարմինները պարտավոր է վարկը վերադարձնել բանկին: Սրանում է արտահայտվում նրա ետադարձ լինելը:

Բանկային վարկի վերադարձնելիության ապահովման և հատկապես տոկոսայնության (հատուցանելիության) հիմնահարցերը այսօր գտնվում են մեր հանրապետության տնտեսագետների և իրավաբանների ուշադրության կենտրոնում: Այս ելակետային սկզբունքների օրենսդրական ամրապնդման նպատակով բազմաթիվ առաջարկներ են ներկայացվել ՀՀ ԱԺ, որոնց իրավական կարգավորումը առաջին հերթին կնպաստի բանկային վարկի միջոցով տնտեսության տարբեր ոլորտներում կատարվող ներդրումների և արտադրության աճի տեմպերի բարձրացմանը:

Վարկը հատուցանելի է, քանի որ տրամադրված վարկերի դիմաց տնտեսական մարմինները բանկին մուծում են որոշակի տոկոսներ:

Հայտնի է, որ ՀՀ բանկային օրենսդրությամբ խիստ կարևորվում է տրամադրված վարկերի վերադարձելիության ապահովումը: Հատկապես անկախության առաջին տարիներին Հայաստանի Հանրապետության դեռևս փորձ չունեցող նորաստեղծ առևտրային բանկերը մեկը մյուսի հետևից անընդհատ սխալներ էին թույլ տալիս՝ ինչպես հաճախորդներից ավանդների ներգրավման, այնպես էլ վարկերի տրամադրման ժամանակ: Դեռևս նոր մշակված բանկային օրենքներն իրենց չէին արդարացնում՝ կապված երկրում գործող տնտեսական հարաբերությունների տարերային բնույթի հետ: Ուստի խիստ անհրաժեշտ դարձավ տրամադրվող վարկերը ժամանակին վերադարձնելու մասին օրենսդրության սահմանումը և աստիճանաբար կատարելագործումը:

«Վարկի վերադարձելիություն» հասկացությունն առաջին հայացքից թվում է, թե հեշտ իրականացվող գործընթաց է: Բայց միջազգային փորձը ցույց է տալիս, որ այն իր էությամբ բավականաչափ բարդ է: Եվ այդ առումով ըստ մի շարք վերլուծաբանների «վարկի վերադարձելիությունը» տվյալ բանկի կողմից նախնա-



կան և հաջորդական աշխատանքների այն ամբողջականությունն է, որն ապահովում է տրամադրված վարկերի և հասանելիք տոկոսային եկամուտների վերադարձ, ինչպես նաև անհրաժեշտ չափով եկամտաբերության մակարդակ:

Կարծում ենք, որ վարկավորման գործընթացում կիրառվող սկզբունքներից ամենահիմնականներն են՝ վերադարձելիությունը, ժամկետայնությունը, վճարելիությունը, իսկ դրանցից իր էությամբ կարևորվում է վարկի վերադարձելիությունը, քանի որ դրանով է պայմանավորված վարկատու - վարկառու փոխհարաբերության արդյունավետ և հուսալի գործունեության իրականացումը: Վարկի վերադարձելիության հիմնախնդրին նվիրված բավարար չափով գիտական հետազոտություններ ու մշակումներ, հատկապես իրավագիտության ոլորտում, իսպառ բացակայում են:

Վարկի վերադարձելիությունը օժտված է այնպիսի հատկանիշով, որը բնորոշ է տվյալ վարկին՝ որպես տնտեսական կատեգորիայի: Միաժամանակ այն բնութագրում է ժամանակավոր օգտագործման նպատակով վերցված գումարի վերադարձն իր տիրոջը, որը սեփականատիրոջ սեփական իրավունքն է: Վերադարձելիությունը երկկողմանի գործընթաց է, այսինքն այն հավասարապես կարևոր է թե' վարկատուի և թե' փոխառուի համար: Վարկի վերադարձելիությունը, ի տարբերություն այլ տնտեսական հարաբերությունների, հանդես է գալիս որպես վարկային իրավահարաբերությունների դրսևորման ձև և գործնականում արտահայտվում է որոշակի իրավական կարգավորման մեխանիզմով: Այսինքն՝ մի կողմից այն հիմնվում է վարկի հետադարձ շարժման հիմքում ընկած տնտեսական գործընթացի, իսկ մյուս կողմից էլ վարկատուի և վարկառուի իրավական հարաբերությունների վրա:

Վարկավորման և դրա վերադարձելիության ապահովման արդյունավետության բարձրացման ուղղությամբ կարևորագույն և առաջնահերթ քայլ է բանկի կողմից խելամիտ վարկավորման գործընթացի նախաձեռնումը, դրա որդեգրումը և կյանքի կոչելը: Բանկը պետք է գործի վարկավորման խելամիտ և ճիշտ սահմանված չափանիշների սահմաններում և հստակ պատկերացնի իր

նպատակային շուկան, խորապես տեղյակ լինի վարկառուի կամ գործընկերոջ մասին, առաջարկվող վարկի նպատակին և մարման աղբյուրներին:

Վարկավորման չափանիշները պետք է սահմանեն վարկարժանության օբյեկտներն ու վարկի գումարի չափը, առկա վարկերի տեսակները և վարկերի հատկացման ժամկետներն ու պայմանները:

Բանկային վարկի վերադարձելիության առումով մեր հանրապետությունում կարևորվում է նաև ռիսկի գործոնը: Այսպես, երբ խոսում ենք ռիսկի և հատկապես բանկային ռիսկի մասին, այն ներկայանում է իբրև ոչ միայն ընտրված որոշումների, այլև այդ որոշումների իրականացմանն ուղղված գործողությունների լավ և վատ հետևանքների ամբողջություն, այսինքն ընտրության գործընթացն էլ իր արտահայտությունն է գտնում «ռիսկ» հասկացության մեջ: Ռիսկի կարող են ենթարկվել գրեթե բոլոր բանկային գործառնությունները: Կարելի է նաև ասել, որ ռիսկը ցանկացած, այդ թվում՝ բանկային գործունեության իրավիճակային բնութագիրն է, որն արտացոլում է դրա արդյունքի անորոշությունը և անհաջողության դեպքում՝ առաջացած հնարավոր բացասական հետևանքները:

Այսօր խիստ կարևորվում է ՀՀ Կենտրոնական բանկի կողմից մեկ փոխառուի և նրա հետ փոխկապակցված անձանց գծով ռիսկի առավելագույն չափի սահմանումը՝ որպես բանկի կողմից մեկ փոխառուին և նրա հետ փոխկապակցված անձանց տրամադրված վարկերի, այդ թվում՝ բանկային հաշվի վարկավորման, բոլոր այլ փոխառությունների, ֆակտորինգային, լիզինգային գործառնությունների, տրամադրված նախավճարների, կանխավճարների, բանկի կողմից մատուցված ծառայության կամ ապրանքի դիմաց տարժամկետ վճարումների, ակրեդիտիվների, փոխառուի կամ նրա հետ փոխկապակցված անձանց թողարկած արժեթղթերում ներդրումների, ինչպես նաև բանկի նկատմամբ ցանկացած հիմքով ծագած այլ դեբիտորական պարտքերի, նրա պարտավորությունների դիմաց տրված երաշխիքների և երաշխավորությունների (բացառությամբ բանկի թղթակցային հաշիվները) գումարի ու բանկի ընդհանուր կապիտալի հետ հարաբերակցության առավելագույն չափի[1]:



Կախված ռիսկային գործունեության իրականացումից՝ միջազգային փորձը վկայում է, որ բանկերի արդյունավետությունը կամ դրանց գործունեությունը գնահատող ամենահիմնական ցուցանիշներն են սեփական (բաժնետիրական) կապիտալի և ակտիվների շահութաբերությունը բնութագրող ցուցանիշները:

Վարկի վերադարձումն ապահովելու տնտեսական մեխանիզմի իրավական կարգավորման դերի մասին խոսելիս անհրաժեշտ է նկատել, որ Հայաստանի Հանրապետության՝ դեպի շուկայական տնտեսություն անցում կատարելու հանգամանքը չի բացառում դրամավարկային իրավահարաբերությունների, այդ թվում՝ բանկային վարկի վերադարձելիության պետական կարգավորումը: Այստեղ կարևոր է համարվում նրա բոլոր բաղկացուցիչ մասերի իրավական կարգավորումը, որը ներկայումս իրավագետների կարծիքով դեռևս բավարար մակարդակով մշակված չէ:

Իրավական կարգավորման ներկա վիճակը գնահատելու, նրա կատարելագործման վերաբերյալ առաջարկություններ ձևակերպելու համար հարկավոր է բացահայտել վարկավորմանը մասնակցող սուբյեկտների շահերի ամբողջությունը: Որպես կանոն, բանկային վարկավորման մեխանիզմում առկա են մի շարք սուբյեկտների՝ երրորդ անձանց, շահեր, դրանք երաշխավորող և ապահովագրող անձինք են, որոնք շահագրգռված են վարկային պարտավորությունների կատարման մեջ, իսկ չկատարման դեպքում նրանք օրենքի ուժով ձեռք են բերում ինքնուրույն իրավունքներ՝ կապված պատասխանատվության իրականացման հետ: Երբեմն որպես սուբյեկտ հանդես են գալիս պետությունը, հասարակությունը, որոնք որոշակի դրամական և արտարժութային միջոցներ են տրամադրել սոցիալապես կարևոր նախագծերի ապահովման համար և հետաքրքրված են նրանում, որ այդ

[1] Տե՛ս ՀՀ օրենքը «Բանկերի և բանկային գործունեության մասին», հոդ. 49,50-րդ:

միջոցները հասնեն հասցեատերերին՝ փոխառուներին: Գոյություն ունի նաև մեկ այլ բարդ սուբյեկտ, որն ունի իր շահերը վարկային գործընթացում: Դա Հայաստանի Հանրապետության ամբողջ բանկային համակարգն է, որը հետաքրքրված է վարկավորման իրականացման կայունությամբ, այդ գործունեության կարգավորման համաչափությամբ և չափորոշիչների ներդրմամբ: Թեև մի բանկը մյուսի համար մրցակից է համարվում, բայց բոլորն էլ շահագրգռված են ողջ համակարգի կայունության համար:

Վարկի վերադարձման մեխանիզմը կարգավորվում է Հայաստանի Հանրապետության օրենքներով և ենթաօրենսդրական ակտերով: Միաժամանակ էական նշանակություն ունեն ՀՀ Կենտրոնական բանկի հրահանգները, որոշումները, կանոնակարգերը՝ կապված նրա իրավասությանը վերաբերող և նորմատիվ բնույթ ունեցող հարցերի հետ: Բանկային վարկի ստացումը ենթադրում է վարկի տրամադրման մասին որոշման ընդունում, տրամադրում և վերադարձում: Դա, որպես կանոն, կարգավորվում է ներքին նորմատիվ ակտերով, որոնք էապես տարբերվում են իրարից տարբեր բանկերում: Հիմնական օրենսդրական ակտը, որտեղ պարունակվում են իրավական նորմեր բանկային վարկավորման և հատկապես պարտավորությունների կատարման ապահովման մասին, դա ՀՀ քաղաքացիական օրենսգիրքն է, նաև՝ ՀՀ ԿԲ և ՀՀ բանկերի ու բանկային գործունեության մասին օրենքները:

Նախկին օրենսդրության համեմատությամբ նոր ընդունված օրենսգիրքը, ապա և բանկային գործունեությունը կարգավորող օրենսդրական ակտերում կատարված փոփոխությունները ավելի մեծ նշանակություն են տալիս նորմատիվ կանոնակարգմանը, ինչն, ըստ երևույթին, դրական փոփոխություն է: Վարկավորումը, ի տարբերություն բանկային գործունեության այլ տեսակների (վճարումներ, դրամարկղային ծառայություն), մանրամասնորեն չի կարգավորվում ՀՀ Կկենտրոնական բանկի իրավական ակտերով:

Նպատակահարմար ենք գտնում պարզաբանել մի շարք հիմնահարցեր, որոնք գործնականում առաջանում են վարկերի վերադարձման իրավական ապահովման գործընթացում:



ՀՀ քաղաքացիական օրենսգրքում որպես պարտավորությունների կատարման միջոցներ նշվում են տուգանքները (369-372-րդ հոդվածներ), գրավը (226-259-րդ հոդվածներ), պարտապանի ունեցվածքի պահումը (373-374-րդ հոդվածներ), երաշխավորությունը (375-382 հոդվածներ), բանկային երաշխիքը (383-394 հոդվածներ), նախավճարը (395-396 հոդվածներ): Ի դեպ, նախկին օրենսդրության համեմատությամբ, պարտավորորությունների ապահովման միջոցների ցանկը համալրվել է Հայաստանի համար նոր հոդվածներով, որոնք են՝ պարտապանի գույքի պահումը և բանկային երաշխիքը:

Օրենսդրության մեջ սկզբունքորեն նոր են բանկային երաշխիքի մասին սահմանված նորմերը: Բանկային երաշխիքի մասին նորմերի իրականացման ժամանակ իրավահարաբերության մեջ են մտնում երեք անձ՝

ա) երաշխավորը, այսինքն՝ բանկը, երաշխիք տվող վարկային կամ ապահովագրական կազմակերպությունը,

բ) երաշխավորվողը, այսինքն այն անձը, որի խնդրանքով և որի համար երաշխիք է տրվում,

գ) շահառու (բենեֆիցիար), որը ստանում է նշված գումարը:

Բանկային երաշխիքով վարկային պարտավորությունների կատարման ապահովման այս միջոցի էությունը այն է, որ բանկը կամ այլ վարկային հիմնարկություն (երաշխավորը) որոշակի անձի (վարկառու երաշխավորվող) խնդրանքով գրավոր պարտավորություն է ստանձնում այդ պարտավորության պայմաններին համապատասխան որոշակի գումար վճարելու պրինցիպալի վարկատու բանկին (շահառուին)՝ նրա (շահառուի) կողմից վճարման մասին գրավոր պահանջ ներկայացնելու դեպքում:

Վարկի վերադարձելիության ապահովման իրավական կարգավորման համար կարևորվել է վարկառուի վարկունակության (իրավունակության) վերլուծությունը և գնահատումը: Վարկառուի վարկունակությունը վարկի վերադարձելիությունն ապահովելու մեխանիզմին վերաբերող ամենաբարդ խնդիրներից մեկն է: Դա պայմանավորված է նրանով, որ վարկունակություն հասկացությունը

տարբեր հեղինակների կողմից տարբեր կերպով է ընկալվում և, երկրորդ, նրա գնահատումը բավականին համակողմանի բնույթ ունի ու կանխորոշում է բանկի կողմից առանձին ցուցանիշների կամ ֆինանսական գործակիցների ընտրության անհրաժեշտությունը, որոնց օգնությամբ հնարավոր կլինի գնահատել վարկառուի կողմից իր պարտականությունների կատարման հավանականությունը: Կարծում ենք՝ վարկունակությունը ընդհանուր իրավունակության դրսևորումն է բանկային վարկավորման սուբյեկտների, որոնց մասին իրավագիտության բնագավառում առ այսօր ոչինչ ասված չէ, և, կարծում ենք, սա նորույթ է վարկային իրավունքում: Ուստի անհրաժեշտ է ավելի մանրամասն ներկայացնել վարկունակության իրավական բովանդակությունը:

Վարկունակության հասկացության ներկայացված սահմանումն այն կապում է որոշակի նախադրյալների հետ, որոնք, այլ խոսքով, իրավաբանական փաստեր են, որ անհրաժեշտ են վարկ ստանալու համար, որոնց գնահատումը չի կապվում հաճախորդի ֆինանսական կայունության հետ: Ըստ երևույթին, այս բարդ հասկացության մակերեսային մեկնաբանությամբ անհնար է հասնել նրա իրավական բովանդակության լրիվ ծավալի բացահայտմանը:

Վարկերի տրամադրման գործընթացի էական կողմը վարկառուի վարկունակության գնահատումն է: Այդ գործընթացը բաղկացած է հարցերի պատասխաններից ու գործնական տեղեկատվության վերլուծության հիման վրա կատարված դատողություններից: Փորձ և արհեստավարժություն է պահանջվում, քանի որ բանկը պարտավոր է իմանալ վարկառուի իրավական կարգավիճակի մասին և այն, թե ում է պատկանում տվյալ ձեռնարկությունը, կազմակերպությունը և հիմնարկությունը: Սեփականության կառուցվածքը հաճախ բարդ է լինում և ներառում է անհատների, ընկերությունների ու կազմակերպությունների միջև տարաբնույթ կապեր: Անհրաժեշտ է հստակ պարզել այդ փոխհարաբերությունների բնույթը՝ դրանց հետ կապված ռիսկերի հետ միասին: Բանկը պետք է տեղյակ լինի վարկառուի ձեռնարկատիրական գործունեության բոլոր տեսակներին:



Վարկունակությունը գնահատելիս պահանջվում է գործարարության շուկայի, հաճախորդների, գների, մատակարարների ու մրցակիցների մանրամասն վերլուծություն ու գնահատում, բանկը պետք է հաշվի առնի, թե արդյո՞ք միջոցների օգտագործումը համապատասխանում է վարկառուի նպատակներին:

Բանկը պետք է վերլուծի վարկառուի գործառնական փուլի տևողությունը և որոշի շրջանառու կապիտալի հետագա կարիքները: Կարևորվում է նաև այն, որ վերլուծության ընթացքում բանկը կարողանա ստուգել վարկառուի տրամադրած տեղեկությունների արժանահավատությունը, հարկային կամ նման այլ նպատակների համար պատրաստված ֆինանսական հաշվետվությունները, որոնք հնարավոր է, որ բանկի համար ստույգ կամ պիտանի տեղեկատվություն չպարունակեն: Այդ առումով բանկը կարող է ֆինանսական հաշվետվություններ կազմել վարկառուի հետ ծավալած քննարկումների միջոցով, ստուգել դրանց հավաստիությունը: Եթե վարկառուն հրաժարվում է տեղեկատվություն տրամադրել կամ տրամադրում է այնպիսի տեղեկատվություն, որը հնարավոր չէ հաստատել կամ ստույգ չէ, բանկը պետք է լրջորեն վերանայի վարկավորման իրավահարաբերությունները շարունակելու հարցը: Վարկ տրամադրելիս բանկը պետք է հաշվի առնի նաև վարկառուի բոլոր պարտքերի տեսակները և դրանց գումարի չափը: Բանկը պետք է վարկառուից պահանջի ծախսերի և գնագոյացման վերաբերյալ մանրամասն տեղեկություններ, որպեսզի հնարավոր լինի այդպիսի վերլուծություն կատարել:

Գոյություն չունի վարկի սպասարկման կոնկրետ մակարդակ, որը ճիշտ լինի բոլոր վարկերի համար, և յուրաքանչյուր բանկի վարկային քաղաքականությունը պետք է տարբեր վարկերի համար պարտքի սպասարկման նվազագույն ցուցանիշներ սահմանի:

«Արդշինինվեստբանկ» և «ՀՀ խնայողական բանկ»-երի գործնական փորձը վկայում է, որ վարկառուն ի վիճակի կլինի կատարել իր վրա վերցրած բոլոր պարտականությունները այն դեպքում, եթե օժտված է վարկի օգտագործման ունակությամբ, շահույթ

ստանալու կարողությամբ, սեփական կապիտալի առկայությամբ, վարկի վերադարձելիության երաշխիքներով ապահովվածությամբ:

Վարկառուի կողմից ֆինանսատնտեսական գործունեություն իրականացնելու ունակության գնահատման առումով անհրաժեշտ է մանրամասն ուսումնասիրել հիմնախնդիրները, առանձին ստորաբաժանումների ղեկավար անձանց և ավելի շատ ընդհանուր տեղեկատվություն ստանալ տնտեսավարող սուբյեկտի վերաբերյալ: Այսպիսի գնահատումը հնարավորություն է տալիս որոշելու վարկառուի պատասխանատվության չափը վարկային գործարքի պայմանների խախտման ժամանակ:

Այսպիսով, վարկի վերադարձման ապահովումը, ինչպես և վարկային իրավական կարգավորումը բանկի համար բավականաչափ բարդ, նպատակաուղղված գործունեություն է, որը ներառում է կազմակերպական, տնտեսական ու իրավական միջոցառումների մի ամբողջություն, որոնք էլ կազմում են տրամադրված վարկային միջոցների, դրանց մարման աղբյուրների, ժամկետների ու եղանակների, վարկի վերադարձումն ապահովող փաստաթղթերի սահմանման մեխանիզմը:

Վարկերի վերադարձման աղբյուրները պայմանականորեն կարելի է բաժանել երկու տեսակի՝ առաջնային և երկրորդային (լրացուցիչ): Առաջնային աղբյուր է համարվում վարկառուի եկամուտը, որն իրավաբանական անձանց համար հասույթն է՝ կանխիկ կամ անկանխիկ տեսքով, իսկ ֆիզիկական անձանց համար՝ նրանց աշխատավարձը կամ այլ լրացուցիչ եկամուտները: Լրացուցիչ են համարվում գրավադրված գույքի իրացումից ստացված հասույթը և երաշխավորի կամ ապահովագրման կազմակերպության կողմից փոխանցված միջոցները: Վարկերի մարման առաջնային և լրացուցիչ աղբյուրները օգտագործելու կարգը բանկի կողից տարբեր է լինում:

Վարկառուի եկամտի հաշվին վարկի մարումը կարգավորվում է վարկային պայմանագրով: Մարումն իրականացվում է վճարման ժամկետը լրանալու օրը կամ էլ այն ժամանակամիջոցը, երբ հաճախորդի հաշվարկային հաշվում առկա են լինում միջոցներ: Կանխիկ դրամով վարկի մարման դեպքում վարկառուն համապատասխան ժամկետներում վարկատուի բանկի դրամարկղ է մուտքագրում հասանելիք գումարը: Վարկատուն կարող է երկարաձգել վարկի մարման ժամկետը, եթե վարկառուն դեռևս եկամուտների է սպասում: Այս դեպքում հաճախորդը կամովին կատարում է բանկի առջև ստանձնած իր վճարային պարտավորությունները, որոնք ամրագրված են վարկային պայմանագրում:



ՀՀ բանկային համակարգի վարկային գործունեության ուսումնասիրությունը վկայում է, որ վերջին տարիներին ավելացել են վարկը չվերադարձնելու փաստերը: Զանգվածային կերպով վարկերը չվերադարձնելը հանգեցրել է ժամկետանց պարտքերի գումարի ավելացմանը: Բացի այդ, առաջնային աղբյուրներից վարկի մարման իրավական մեխանիզմը անբավարար է մշակված նույնիսկ տեսականորեն, այսինքն բանկերը դեռևս չունեն հուսալի իրավական պաշտպանվածություն, եթե վարկառուն օգտագործում է միայն սեփական եկամուտը:

Բանկերի գործունեության ուսումնասիրությունը վկայում է, որ տնտեսավարող սուբյեկտների կողմից դիտավորությամբ զանգվածայնորեն խախտվում է ամորտիզացիոն հիմնադրամի միջոցների նպատակային օգտագործումը, որը շատ հաճախ կազմակերպությունները օգտագործում են որպես վարկի մարման առաջնային աղբյուր: Ուստի նպատակահարմար է նախևառաջ վերանայել ներկայումս իրականացվող, տարերային բնույթ ունեցող ամորտիզացիոն քաղաքականությունը: Մի կողմից՝ այդ միջոցառումը թույլ կտա կանխել ամորտիզացման հիմնադրամի միջոցների ոչ նպատակային օգտագործումը, մյուս կողմից էլ՝ նախադրյալներ կստեղծի առևտրային բանկերի ներդրումային վարկավորման ռեսուրսների ավելացման համար: Բացի այդ, դա կնպաստի վարկային ռիսկերի նվազեցմանը, ինչն առավել կարևոր է, քանի որ հատուկ ամորտիզացիոն հաշիվներում գտնվող բավականաչափ մեծ գումարներ կդառնան վարկի վերադարձման երաշխիք:

Որպես կանոն, յուրաքանչյուր բանկ, հաշվի առնելով վարկի մարման աղբյուրները, կիրառում է պարտապանների վրա ներգործելու իր միջոցները և կարելի է ասել, որ դրանք համարվում են առևտրային գաղտնիք: Վարկի վերադրաձման ապահովման համակարգը պետք է ձևավորել այնպես, որ այն գործի ոչ միայն վարկի վերադարձման ժամկետը լրանալուց հետո, այլև վարկ տալու մասին որոշում կայացնելուց առաջ: Այս գործընթացի անընդհատությունը կարող են ապահովել նաև այն հաճախորդները, որոնք վստահություն են ցուցաբերում ազնվության, հարկերի վճարման ու վճարային փաստաթղթերի ձևակերպման ճշտապահության, իրավաբանական նուրբ հարցերում գրագիտության նկատմամբ:

Բացի այդ, Հայաստանի Հանրապետության տնտեսական ճգնաժամի պայմաններում, երբ բանկում վարկ ստանալու ժամանակ հաճախ է տեղի ունենում ֆինանսական օրինախախտում, անհրաժեշտ է վարկի վերադարձման երկրորդային աղբյուրները դասել առաջնային աղբյուրների հետ մի շարքում, որպեսզի երաշխավորված լինի վարկատուների շահերի պաշտպանվածությունը:

Բանկի շահերի պաշտպանության ընտրված միջոցները առաջարկում ենք բաժանել երեք խմբի և օգտագործել ըստ դրանց նշանակության: Առաջին խմբի մեջ ներառվում են պարտավորությունների կատարման ապահովման այն ավանդական եղանակները, որոնք նախատեսված են օրենսդրությամբ: Դրանցից, որպես կանոն, ավելի հաճախ օգտագործվում են տուժավճարը, գրավը, երաշխավորությունը, բանկային երաշխիքը:

Երկրորդ խումբը կազմում են ապահովագրության գծով զանազան պայմանագրերը, որոնք չլինելով պարտավորությունների կատարման ապահովման միջոցներ՝ այնուամենայնիվ բանկի շահերի բավարարման երաշխիք են ստեղծում հատկապես այն դեպքում, երբ հաճախորդի կողմից վարկը չի վերադարձվում:

Երրորդ խմբում կարող են ներառվել վարկային պարտավորությունների կատարման ֆինանսական հարկադրանքի միջոցները: Տվյալ դեպքում խոսքը գնում է բանկերի պարտավորությունների միակողմ դադարեցման մասին:



Ընդհանրացնելով վարկի վերադարձելության սկզբունքը և հիմք ընդունելով հանրապետության առևտրային բանկերի գործունեությունը, գլխավոր սկզբունքը, որով պետք է շարժվի բանկը՝ համատեղ ապահովման ժամանակ փոխզիջման գնալն է, այսինքն ստեղծել այնպիսի պայման, որը հարմար լինի ոչ միայն բանկին, այլև հաճախորդին՝ փոխադարձ շահավետ հարաբերություններ ունենալու համար:

Բանկային վարկի վերադարձումը վարկատուի ու վարկառուի միջև գոյություն ունեցող բանկային իրավահարաբերությունների կարգավորման հիմքն է և միաժամանակ վարկավորման բոլոր կառույցների ու վարկային գործընթացի հենարանը:

Այսօր անցումը շուկայական տնտեսության չի նվազեցնում դրամավարկային հարաբերությունների պետական կարգավորման նշանակությունը, այդ թվում՝ բանկային վարկի վերադարձման բնագավառում: Վարկային գործընթացի իրավական ապահովման համակարգը, լինելով վարկի վերադարձման ապահովման մեխանիզմի բաղկացուցիչ մասը, կոչված է վարկային իրավահարաբերությունների սուբյեկտներին ապահովելու, մի կողմից՝ իրավունքների ու պարտականությունների առավելագույն զուգակցում, մյուս կողմից՝ գործող նորմատիվ ակտերի համաձայնեցման կարգ և հիերարխիա: Բանկի համար վարկը ձեռնարկատիրական գործունեության տեսակ է, որի նպատակը շահույթի ստացումն է: Փոխառուի համար այն ֆինանսական ռեսուրսների ներգրավման միջոց է, որին հետաքրքրում է ստանալ առավել էժան ու երկարաժամկետ վարկ: Երրորդ անձինք (երաշխավորը) շահագրգռված են, որ վարկային պարտավորությունները կատարվեն, իսկ դրանց չկատարման դեպքում իրենք կարողանան ստանալ ինքնուրույն իրավունքներ:

Էապես կարևորվում է նաև մշակել ավելի մանրամասն ու ընդգրկուն, առավելապես գործող օրենսդրություն, որպեսզի այն դառնա բանկային իրավական ամբողջական ինստիտուտ: Այդ պատճառով վարկի վերադարձումը կարգավորող բոլոր իրավական նորմերը պետք է զետեղվեն ոչ թե Հայաստանի Հանրապե-

տության քաղաքացիական օրենսգրքում, այլ բանկային օրենսդրության մեջ, և պետք է նախատեսել դրանում ամրագրված դրույթների իրացման միջոցները: Բանկային գործունեության ու վերահսկողության կարգավորման կատարելագործման առաջնային ուղղություններն են՝ առաջին՝ վերահսկման իրավական մեթոդների համապատասխանեցումը միջազգային չափանիշներին, երկրորդ՝ վերահսկման գործունեության կազմակերպման կատարելագործումը, երրորդ՝ իրավական, այդ թվում՝ օրենսդրական բազայի կատարելագործումը, որը կամրագրի վարկատու բանկի և վարկառուի տնտեսական շահերը:

Հայաստանի Հանրապետության բանկային գործունեության իրավական կարգավորման հիմնահարցերի թվում այսօր ինչպես տնտեսագիտական այնպես էլ իրավաբանական գրականության էջերում հատուկ ուշադրության են արժանանում բանկային վարկի տոկոսայնության (հատուցանելիության) սկզբունքի իրավական կարգավորմանն ուղղված առաջարկությունները, որոնց վերլուծությունների հիման վրա արված առաջարկությունները կարծում ենք տեսական հստակ հիմք են վարկավորման սկզբունքների իրավական կարգավորման արդյունավետության բարձրացման ճանապարհին: Ժամանակակից պայմաններում աշխարհի առաջատար տնտեսագետներն առանձնահատուկ ուշադրություն են հատկացնում վարկի տոկոսի քաղաքացիաիրավական գործառույթին՝ ներկա և ապագա բարիքների, եկամուտների ու արժեքների չափման հնարավորությանը: Բանկային վարկի տոկոսի գործառույթը բնորոշ է զարգացած շուկայական տնտեսություն ունեցող երկրներին, որոնք օժտված են զարգացած վարկային համակարգով: Ակնհայտ է, որ տոկոսադրույքների շերտավորված սանդղակի առկայությունն ու դրամական միջոցների ներդրումների ձևերի տարատեսակությունը դրամական միջոցների տեղաբաշխման ընտրանքի լայն հնարավորություններ են ընձեռում:

Բանկային համակարգի զարգացման և կայուն գործելու հիմքը տնտեսության կարգավորման դրամավարկային քաղաքականության ճկուն մեխանիզմի ձևավորումն է, որը պետությանը, ազգա-



յին բանկին (ԿԲ) թույլ է տալիս արդյունավետ ներգործել տնտեսական ակտիվության վրա, վերահսկել բանկային հաստատությունների գործունեությունը, ձգտել կայունացնել դրամաշրջանառությունը:

Դրամավարկային քաղաքականությունը Կենտրոնական բանկի նպատակաուղղված գործունեությունն է, որով իրագործվում են համապետական խնդիրներ: Պատահական չէ, որ ՀՀ ԿԲ գործունեությունը սահմանող և կարգավորող հիմնական իրավական ակտի 38-րդ հոդ. 4-րդ կետում ասվում է, որ Կենտրոնական բանկի խորհուրդը կարող է առանձին տեսակի վարկերի համար վարկավորման տարբերակված տոկոսադրույքներ և վարկավորման հատուկ կարգ ու պայմաններ սահմանել[1]: Դրամավարկային կարգավորման հիմնական օբյեկտը տնտեսությունում կանխիկ և անկանխիկ համախառն դրամական զանգվածն է:

ԿԲ կողմից իրականացվող դրամավարկային քաղաքականությունը պետք է ազդի՝

1) արտարժույթի փոխարժեքի վրա,
2) տոկոսադրույքների վրա,
3) բանկային համակարգի, ուստի նաև տնտեսության իրացվելիության ընդհանուր ծավալի վրա:

Դրամավակային ընթացիկ քաղաքականության արդյունավետությունը կախված է այն բանից, թե որքա՞ն են ԿԲ կողմից ընտրված նպատակներն ու դրանց հասնելու ուղիները ներդաշնակում տվյալ պահին երկրում տիրող տնտեսական ու ֆինանսական մթնոլորտին: ԿԲ-ն տոկոսադրույքների վրա ազդում է տոկոսային քաղաքականության միջոցով: Տոկոսային քաղաքականությունը տոկոսի կարգավորման բնագավառում իրականացվող միջոցառումների ամբողջությունն է՝ ուղղված վարկային համակարգի եկամտաբերության և տնտեսության զարգացման առավելագույն տեմպերի ապահովմանը: Բարձրացնելով փոխատվական գործառնությունների դրույքը՝ ԿԲ-ն նվազեցնում է առևտրային

[1] Տե'ս ՀՀ օրենքը «Կենտրոնական բանկի մասին», հոդ. 38:

բանկերի և դրանց հաճախորդների՝ վարկ ստանալու հնարավորությունը, որը, իր հերթին, հանգեցնում է դրամական զանգվածի կրճատմանը և բարձրացնում շուկայական տոկոսի մակարդակը: Դրույքների բարձրացումը նպաստում է օտարերկրյա կապիտալի ներհոսքին: Արդյունքում ակտիվանում է վճարային հաշվեկշիռը, մեծանում է արտարժույթի առաջարկը, համապատասխանաբար նվազում է արտարժույթի փոխարժեքը և բարձրանում է ազգային արժույթի փոխարժեքը: ԿԲ դրույքի նվազեցումը հանգեցնում է հակառակ երևույթին:

Տոկոսային քաղաքականության նպատակները միկրոմակարդակում բավական դժվար է միանշանակ սահմանել: Թվում է, թե կոնկրետ առևտրային կամ մասնագիտացված բանկի տոկոսային քաղաքականությունը կոչված է ապահովելու բանկի առավելագույն շահութաբերությունը և, հետևաբար, պետք է ուղղված լինի գործառնական եկամուտների մեծացմանն ու գործառնական ծախսերի կրճատմանը: Սակայն բանկը պետք է հոգա ոչ միայն կարճաժամկետ, այլև երկարաժամկետ շահութաբերության ձեռքբերման ուղղությամբ: Այդ պատճառով առավել հեռատես առևտրային բանկերը ձգտում են ոչ թե միանգամից դիմել «եկամուտները քամելու» մեթոդին, այլ ստեղծել և ընդլայնել մշտական հաճախորդների շրջանակ, աջակցել նրանց ֆինանսատնտեսական դրության ամրապնդմանը, զարգացնել նրանց ակտիվ գործարարությունը: Բացի այդ, մի շարք պատճառներով ոչ բոլոր առևտրային և մասնագիտացված բանկերն են շահութաբերության առավելագույն չափով մեծացումը դիտարկում որպես իրենց գործունեության կազմակերպման պարտադիր կողմնորոշիչ և անհրաժեշտ պայման: Դրա համար առևտրային բանկի մակարդակով կատարվող տոկոսային քաղաքականությունը կարելի է ընդհանուր գծերով բնորոշել որպես տոկոսադրույքների կարգավորման միջոցառումների համալիր՝ ուղղված բանկի իրացվելիության, շահութաբերության և բանկային գործառնությունների ու ծառայությունների զարգացմանը:



Հանրապետության բանկային պրակտիկայում տոկոսային քաղաքականությունն իրագործվում է ԿԲ կողմից իրականացվող դրամավարկային քաղաքականության անուղղակի գործիքների միջոցով: Դրամավարկային կարգավորման անուղղակի գործիքներն են՝ պարտադիր պահուստավորման պահանջների կարգավորումը, հաշվառման դրույքի կարգավորումը, որը թույլ է տալիս կարգավորել դրամական բազան՝ վերաֆինանսավորման միջոցով, գործառնությունները բաց շուկայում:

Համաշխարհային բանկային համակարգում պահուստների նկատմամբ պահանջները հիմնավորվում են այնպիսի գործոններով, ինչպիսիք են՝

1. Յուրաքանչյուր բանկի մրցունակության մակարդակի պահպանումը:
2. Հաճախորդներին կանխիկ միջոցների վերադարձման հուսալիության ապահովումը:

Պահուստավորման պահանջների կատարումը ցանկացած դեպքում կրճատում է բանկերի տրամադրության տակ եղած ռեսուրսների ծավալը՝ մեծացնելով ներգրավվող միջոցների արժեքը, որն անհրաժեշտ է պահանջվող ծավալով վարկ տրամադրելու համար: Բանկային պահուստները լինում են պարտադիր և լրացուցիչ: Եթե պարտադիր պահուստները կախվածության մեջ են առևտրային բանկերի ներգրաված ֆինանսական միջոցների գումարից և ԿԲ սահմանած նվազագույն պահուստների սխեմայի չափերից, ապա լրացուցիչ պահուստները անմիջականորեն որոշվում են հենց առևտրային բանկերի կողմից՝ կախված դրա գործունեության չափից, ծավալից: Պարտադիր պահուստների գործակցի ավելացումը կրճատում է դրամական զանգվածը, քանի որ կրճատում է բանկերի ազատ միջոցների ծավալը, որոնք բանկը կարող էր որպես վարկ տրամադրել: Արդյունքում բարձրանում է վարկավորման տոկոսադրույքը: Որքան բարձր է ավանդի իրացվելիությունը, այնքան բարձր է դրա նկատմամբ պահուստային պահանջը: Այդ պատճառով պահուստավորման պահանջներն

առավել բարձր են ցպահանջ ավանդների գծով և առավել ցածր են խնայողական և ժամկետային ավանդների գծով:

ԿԲ կողմից առևտրային բանկերին հաշվառման դրույքով վարկերի տրամադրման քաղաքականությունը կոչվում է դիսկոնտային քաղաքականություն: Դիսկոնտային քաղաքականության իմաստը այն է, որ առևտրային բանկերի վերաֆինանսավորման պայմանների փոփոխման մեթոդով ԿԲ-ն ազդում է կապիտալի և փողի շուկաներում իրավիճակների վրա:

Վերաֆինանսավորման առավելագույն սահմանի փոփոխումը թույլ է տալիս ԿԲ-ին հասնել հետևյալ արդյունքի. առավելագույն սահմանի իջեցման դեպքում առևտրային բանկերը ստիպված են դիմել վարկավորման առավել թանկ աղբյուրների, ինչը նշանակում է նրանց վարկային ներուժի նվազեցում և վարկերի թանկացում: Եթե ԿԲ նպատակը վարկային հաստատությունների վերաֆինանսավորման թանկացումն է՝ նրանց վարկային պոտենցիալի նվազեցման համար, ապա այն պետք է բարձրացնի հաշվառման դրույքը: Այլ հավասար պայմաններում հաշվառման դրույքի բարձրացման դեպքում առևտրային բանկերի համար վերաֆինանսավորումը թանկանում է, որը հանգեցնում է երկրում վարկերի արժեքների աճին:

Դիսկոնտային և վերաֆինանսավորման քաղաքականության ուղղությունները մշակվում են տվյալ երկրի ԿԲ-ի կողմից: Վերջինս դիսկոնտային քաղաքականությունն իրականացնում է պաշտոնական տոկոսադրույքների հիմնական տեսակների սահմանման և վերանայման միջոցով:

Վերաֆինանսավորման տոկոսադրույքը կամ ԿԲ կողմից առևտրային և մասնագիտացված բանկերին տրամադրվող վարկային ռեսուրսների վճարաչափի մակարդակը ավելի բարձր է վերահաշվառման տոկոսադրույքից, քանի որ բանկերի վարկավորման գործառնություններն ավելի թանկ են գնահատվում, քան առևտրակոմիսիոն գործառնությունները: Այդ է պատճառը, որ առևտրային բանկերը ձգտում են ստանալ միջբանկային վարկեր:



Համաձայն ՀՀ ԿԲ խորհրդի կողմից ընդունված «ՀՀ բանկային տոկոսի հաշվարկային դրույքի հաշվարկման կարգի», ՀՀ ԿԲ խորհուրդը յուրաքանչյուր ամսվա 1-8-ն ընկած ժամանակահատվածում սահմանում է ՀՀ բանկային տոկոսի հաշվարկային դրույք, որը հիմնականում կիրառվում է քաղաքացիա-իրավական փոխհարաբերությունները կարգավորելու նպատակով: Հաշվարկային դրույքի հաշվարկման հիմքում դրված են առևտրային բանկերի կողմից տնտեսությանը ՀՀ դրամով և արտարժույթով տրամադրված վարկերի ու տնտեսությունից ՀՀ դրամով ու արտարժույթով ներգրավված ավանդների տոկոսադրույքները:

Ապրանքների արժեքներով ապահովված լինելը արտահայտվում է նրանում, որ բանկը տրամադրած վարկերի համար ընդունում է գրավ, որը անհրաժեշտության դեպքում կիրացնի (կվաճառի), եթե վարկերի գումարը ժամանակին ետ չստանա: Վարկերի նյութական ապահովվածության էությունը բացատրվում է նրանով, որ բանկը տնտեսական մարմիններին վարկ է տալիս որոշակի նյութական արժեքներ ձեռք բերելու համար, որոնք և հանդես են գալիս բանկային վարկը ապահովող գրավի դերում:

## ԳԼՈՒԽ VI

# ԴՐԱՄԻ ՇՐՋԱՆԱՌՈՒԹՅԱՆ ԵՎ ԱՆԿԱՆԽԻԿ ՀԱՇՎԱՐԿՆԵՐԻ ԲԱՆԿԱՅԻՆ ԻՐԱՎԱԿԱՆ ԿԱՐԳԱՎՈՐՈՒՄԸ

## §1. Դրամական շրջանառության իրավական կարգավորումը

Հայաստանի Հանրապետության Կենտրոնական բանկի իրավական կարգավիճակի անբաժան մասն են կազմում դրամաշրջանառության, ավանդների ընդունման և անկանխիկ հաշվարկների գործընթացում ծավալվող ֆինանսական այն հարաբերությունները, որոնց իրավական կարգավորումը ընդգրկում է ազգային բանկի, որպես յուրահատուկ պետական մարմնի գոյության անհրաժեշտությունը ազգային պետական կյանքի հիմնահարցերը լուծելիս:

Բանկային գործունեության իրավական հրատապ կարգավորման կարիք ունեն դրամաշրջանառության և հաշվարկների իրավական ռեժիմի հիմնախնդիրները, որոնք ինչպես նախկին պետականության ֆինանսաիրավական գիտության այնպես էլ ՀՀ-ում անկախության հաստատումից հետո հայրենական ֆինանսաիրավական տեսության բնագավառում ուշադրության չեն արժանացել՝ անկախ այն կենսական անհրաժեշտությունից, որ ունեն բանկերը պետության ֆինանսական համակարգում:

Դրամական շրջանառության իրավական կարգավորումը պետության բացառիկ իրավասությունն է, որի նպատակն է անհրաժեշտ համաչափություն ապահովել շրջանառության մեջ մտնող ապրանքային և դրամական զանգվածների, նաև ապրանքների ու ծառայությունների առաջարկի և բնակչության գնողական ֆոնդերի միջև:



Դրամաշրջանառության իրավական կարգավորման համար կարևոր նշանակություն ունի նրա պլանավորումը, որն իրականացվում է ՀՀ Կենտրոնական բանկի կողմից: Դրամաշրջանառության պլանավորումը առաջին հերթին ելնում է բնակչության դրամական եկամուտների և ծախսերի մոտավոր հաշվեկշռի սահմանումից: Այս հաշվեկշիռը արտացոլում է բնակչության՝ տարբեր աղբյուրներից ստացած ինչպես դրամական եկամուտները, այնպես էլ կատարած ծախսերը: Կենտրոնական բանկի կողմից դրամական շրջանառության օպերատիվ կազմակերպման իրավական ձևը դրամարկղային պլանն է, որի միջոցով պարզվում է բանկային համակարգի դրամարկղեր մուծվող կանխիկ դրամի չափը և աղբյուրները, բաց թողնվող դրամի չափն ու նպատակային ուղղվածությունը, որոշվում է շրջանառության մեջ դրվելիք դրամի քանակը: Դրամաշրջանառության ծրագիրը սերտորեն կապված է բնակչության դրամական եկամուտների ու ծախսերի հաշվեկշռի վարկային ծրագրի և պետական բյուջեի հետ:

Դրամաշրջանառության համակարգը անկանխիկ և կանխիկ դրամի շրջանառության և հաշվարկման միասնությունն է:

Պատմական իրողությունները վկայում են, որ այսօր զարգացման ինքնուրույն ուղի բռնած Հայաստանի Հանրապետությունը 1993թ. սկսած՝ ձեռնամուխ է եղավ ազգային դրամական նոր համակարգի, հետևաբար նաև դրամաշրջանառության նոր սկզբունքներով արմատավորմանը: ՀՀ Գերագույն խորհրդի 1993թ. հոկտեմբերի 13-ի որոշմամբ ստեղծվեց ու շրջանառության մեջ դրվեց ազգային դրամը և լուման: Խորհրդային ռուբլին ազգային դրամով փոխանակվեց մեկ դրամը երկու հարյուր ռուբլի հարաբերությամբ:

Ազգային դրամաշրջանառությունը կարգավորող առաջին իրավական ակտը հանդիպեց լուրջ դժվարությունների, իսկ դրամը՝ արժեզրկման: Պատճառներից մեկն այն էր, որ Հայաստանը ռուբլու գոտու վերջին հանրապետություններից մեկն էր, որ սահմանեց իր ազգային դրամը: Հանրապետության ներքին շուկան ողողված

էր խորհրդային ռուբլով, որը հանրապետություն էր բերվում նախկին Միության տարբեր հանրապետություններից:

Իրադրությունը շտկվեց «ՀՀ Կենտրոնական բանկի մասին» 1993թ. ապրիլի 27-ին ընդունված օրենքով, որով հանրապետության դրամական շրջանառության ոլորտում դրամի ներքին ու արտաքին կայունության երաշխավորը հանդիսացավ Կենտրոնական բանկը: Առաջին անգամ ազգային բանկին իրավունք վերապահվեց կարգավորել շրջանառությունը, իրականացնել դրամի էմիսիան:

Ազգային դրամի կայունության և միասնական հաշվարկային ու վարկային քաղաքականության ապահովման նպատակով, այլ անհրաժեշտությունից ելնելով՝ ՀՀ Ազգային ժողովը 1996թ. հունիսի 30-ին ընդունեց օրենք «Հայաստանի Հանրապետության Կենտրոնական բանկի մասին», որով ուժը կորցրած ճանաչվեց նախկին օրենքը: Օրենքի 5-րդ հոդվածում նշվում է, որ Կենտրոնական բանկը թողարկում է ՀՀ արժույթը, կազմակերպում և կարգավորում է դրամաշրջանառությունը, վերահսկում է վճարահաշվարկային համակարգի գործունեությունը:

Դրամաշրջանառությունը դիտարկելով որպես կանխիկ և անկանխիկ դրամի շարժ, որն ապահովում է ապրանքաշրջանառությունը[1], ինչպես նաև ոչ պլանային վճարումները և հաշվարկները, դժվար չէ նկատել, որ գործնականում, անկախ սեփականության ձևից, տնտեսական կազմակերպությունների ու ֆինանսավարկային մարմինների միջև ապրանքային մատակարարումների, կատարվող աշխատանքների ու ծառայությունների վճարումները, հարկային և ոչ հարկային մուծումները պետբյուջե, ապահովագրական, սոցապահովագրական վճարումները ֆինանսական համակարգի մյուս օղակներին, բանկերից վարկերի ստացումը, մարումը և տոկոսների վճարումը, ինչպես նաև տնտեսական ու սոցիալական ոլորտների ֆինանսավորման դրամական գործարքները իրականացվում են բանկերի միջոցով՝ կանխիկ և անկանխիկ

[1] Տե՛ս «Ֆինանսներ և վարկ», ԵՊՏԻ, Ե.,2003թ, էջ 385:



վճարումների հաշվարկների կարգով: Կանխիկ դրամական վճարումներն ընդգրկում են հիմնականում բնակչության և կազմակերպությունների, բնակչության տարբեր խմբերի, բնակչության և ֆինանսավարկային մարմինների միջև գոյություն ունեցող դրամական հարաբերությունները: Ընդ որում, դրամի շրջանառության երկու ոլորտները՝ անկանխիկ ու կանխիկ, միմյանց սերտորեն կապված են: Այն դեպքում, երբ կազմակերպությունները բանկերից փող են ստանում բնակչությանը աշխատավարձ, կենսաթոշակներ, նպաստներ և այլն վճարելու, անկանխիկ դրամական հաշվարկները վերածվում են կանխիկ դրամական հաշվարկների: Իսկ այն դեպքում, երբ առևտրային և այլ կազմակերպություններից բանկեր են մուտք լինում կանխիկ փողային գումարներ և գրանցվում են կազմակերպությունների համապատասխան հաշիվներում, կանխիկ փողային վճարումները վերածվում են անկանխիկ փողային վճարումների[1]:

Դրամական վճարային գործարքների մեջ անկանխիկ դրամական վճարումների համեմատ կանխիկ դրամական շրջանառության տեսակարար կշիռը թեպետ փոքր է, այնուամենայնիվ դրա հաշվարկների անհրաժեշտությունը անխուսափելի է: Տնտեսության և բնակչության պահանջը բավարարելու համար բանկերը, հատկապես Կենտրոնական բանկը, ամեն օր շրջանառության մեջ բաց են թողնում կանխիկ դրամ և հետ գանձում այն: Սակայն կանխիկ դրամը անմիջապես և լրիվ չափով հետ չի վերադառնում բանկեր, այլ որոշ ժամանակ մնում է շրջանառության ոլորտում՝ բնակչության և կազմակերպությունների մոտ: Աշխատողներն աշխատավարձ են ստանում, մինչև մյուս աշխատավարձ ստանալը նրանց մոտ մնում է որոշ քանակությամբ կանխիկ դրամ: Բացի այդ, ձեռնարկությունները և կազմակերպությունները, այդ թվում՝ վարկային հիմնարկները, ամենօրյա վճարային գործառնություններն անխափան իրականացնելու համար իրենց դրամարկղնե-

[1] Տե՛ս Ë.Äîëàì Ý.Äæ., Êýìïáåëë Ê., Êýìïáåëë Äæ., Äåíüãè, áàíêîâñêîå äåëî è äåíåæíî-êðåäèòíàÿ ïîëèòèêà, Ìîñêâà, Ëåíèíãðàä, 1991, էջ 58:

րում ունենում են որոշ քանակի կանխիկ դրամ: Սակայն վերարտադրության կարևոր պայմաններից մեկն էլ այն է, որ շրջանառության մեջ, այսինքն բնակչության և իրավաբանական անձանց դրամարկղներում եղած կանխիկ դրամի քանակը համապատասխանի տնտեսության ռեալ պահանջներին, հատկապես իրացվող ապրանքային ֆոնդերի քանակին, որը հանարավոր է միայն ճշգրիտ հաշվարկային գործառնությունների պահպանմամբ:

Դրամը պտույտ է կատարում տարբեր արագություններով, որը կախված է մի շարք գործոններից, հատկապես ապրանքների առկա քանակից, որակից, տեսականուց և այլն: Այդ պատճառով էլ դրամի պտույտի արագությունը կարևոր տնտեսական ցուցանիշ է: Այն արտահայտում է ապրանքների շրջանառության արագությունը, այսինքն ապրանքների շրջանառության ոլորտով անցնելիս դրանք նոր ապրանքներով փոխարինելու արագությունը: Նշանակում է, դրամի շրջանառության դանդաղումը բացասական ցուցանիշ է, որը վկայում է տնտեսության մեջ առկա լուրջ թերությունների մասին:

Շրջանառության համար անհրաժեշտ կանխիկ դրամի քանակը կախված է նաև դրամի վճարելամիջոցի գործառույթի օգտագործումից: Հայտնի է, որ իրացվող ապրանքների մի մասը վաճառվում է վարկով, և դրանց արժեքը վճարվում է որոշ ժամանակից հետո: Դրա հետ կապված՝ տվյալ ժամանակում համապատասխան գումարով կրճատվում է կանխիկ դրամի պահանջը: Մյուս կողմից, տվյալ ժամանակում վրա է հասնում ապառիկ վաճառված ապրանքների դիմաց վճարելու պահը, որը մեծացնում է կանխիկ դրամի պահանջը: Եվ վերջապես, հարկավոր է հաշվի առնել նաև այն, որ վճարման պարտավորությունների մի մասը փոխադարձորեն մարվում է: Դժվար չէ նկատել, որ դրամի պտույտի տվյալ արագության ժամանակ, լինի շրջանառության միջոց, թե վճարելամիջոց, որոշ պահի շրջանառության մեջ գտնվող դրամի ընդհանուր գումարը որոշվում է իրացվելիք ապրանքների գների ամբողջ գումարով:



Շրջանառության մեջ անհրաժեշտ փողի քանակի որոշումը, կամ ինչպես կոչվում է փողի շրջանառության տնտեսական օրենքն ընդհանուր է բոլոր այն հասարակարգերի համար, որտեղ գոյություն ունեն ապրանքադրամական հարաբերություններ[1]:

Դրամի շրջանառության կազմակերպման ու կարգավորման գործառույթը գործող բանկային օրենսդրությամբ վերապահված է Կենտրոնական բանկին: Նա է կազմակերպում թղթադրամի և մետաղադրամի պատրաստումը, կանխիկ դրամի պահպանման, տեղափոխման և ինկասացիայի կարգը, նաև թղթադրամների ու մետաղադրամների պահուստային ֆոնդերի ստեղծման ապահովումը[2]:

Բանկային տոմսերը ապահովում են ոսկով, թանկարժեք մետաղներով և բանկի այլ ակտիվներով, իսկ գանձարկղային տոմսերը՝ պետության ամբողջ ունեցվածքով: Ըստ էության, բանկային տոմսերի և գանձարկղային տոմսերի միջև տարբերություն չկա, քանի որ երկուսն էլ բանկը բաց է թողնում շրջանառության ռեալ պահանջները բավարարելու համար: Դրանց հիմքում ընկած են ապրանքանյութական արժեքները, որոնք դուրս են բերվում շուկա բնակչության շրջանում իրացնելու:

Պատահական չէ, որ նյութական բարիքների արտադրության գործընթացը օբյեկտիվորեն հանդիսանում է հասարակության և ապա ցանկացած պետության գոյության տնտեսական հիմքը, որի իրավական կարգավորումը նույնպես օբյեկտիվ անհրաժեշտություն է, որը շուկայական հարաբերություններում արտահայտվում է գների կայունության ապահովման երաշխիքով: Իրական երաշխավորողը մեր հանրապետությունում ՀՀ Կենտրոնական բանկն է, որի մասին գործող օրենքի 4-րդ հոդվածում ասված է, որ «Կենտրոնական բակի հիմնական խնդիրը ՀՀ-ում գների կայունության ապահովումն է»: Այնուհետև ասված է, որ «Եթե Կենտրոնական

[1] Տե՛ս «Հայաստանի Հանրապետության Կենտրոնական բանկի մասին» օրենքի 43-րդ հոդվածները («ՀՀ գործող օրենքների ժողովածու, 1995-1999 թթ.», գիրք Ա):
[2] Տե՛ս Ïîëÿêîâ Â.Ï., Ìîñêîâêèíà Ë.À. Îñíîâû äåíåæíîãî îáðàùåíèÿ è êðåäèòà, Ì., “Öûôðà–Ì”, 1996, էջ 141.

բանկի մյուս խնդիրները հակասում են իր հիմնական խնդրին, Կենտրոնական բանկը առաջնություն է տալիս հիմնական խնդրին և ղեկավարվում է դրա իրագործման անհրաժեշտությամբ»[1]:

Շրջանառության մեջ բանկային, գանձարկղային և մանր մետաղյա դրամներ բաց են թողնվում որոշակի համամասնությամբ: Այդ համամասնությունը կոչվում է դրամական զանգվածի կուպյուրային կառուցվածք: Դրա գործնական անհրաժեշտությունը կարևորվում է նրանով, որ շրջանառության մեջ բաց թողնված բանկային, գանձարկղային և մետաղյա դրամը պետք է համապատասխանի ապրանքաշրջանառության պահանջներին և ամենից առաջ՝ ապրանքների գների մակարդակին: Եթե ապրանքների գները ցածր են, ապա պետք է ավելի շատ փոքր արժողության գանձարկղային և մետաղյա դրամ բաց թողնել՝ ապրանքաշրջանառության արագ կատարման համար, և՝ ընդհակառակը: Նշանակում է, դրամական զանգվածի կուպյուրային կառուցվածքի խախտումը բացասաբար է անդրադառնում ապրանքաշրջանառության նորմալ ընթացքի ապահովման վրա: Շրջանառության մեջ նոր դրամ բաց թողնելու, հին և մաշված դրամը նորերով փոխարինելու և, վերջապես, դրամի զանգվածի կուպյուրային կառուցվածքը կարգավորելու համար Հայաստանի բանկն ունի պահուստային ֆոնդ, որտեղ պահվում են բանկային, գանձարկղային և մետաղյա դրամի նշումներ, որոնց իրավական ռեժիմը սահմանված է ՀՀ Կենտրոնական բանկի մասին օրենքի 37-րդ և 47-րդ հոդվածներով: Հայաստանի Կենտրոնական բանկն ունի շրջանառու դրամարկղեր, որոնց միջոցով օպերատիվ կարգով կարգավորվում են կանխիկ փողի մուտքը և ելքը: Այդ դրամարկղերը լիմիտավորվում են. բանկի բաժանմունքը աշխատանքային օրվա ընթացքում լիմիտի և օրվա մուտքերի հաշվին պետք է բավարարի ընթացիկ դրամական վճարումների պահանջը: Այն դեպքում, երբ օրվա վերջում դրամարկղային լիմիտից ավելի կանխիկ գումար է մնում, ապա այն փոխադրվում է պահուստային ֆոնդ և տեղի է ունենում

[1] Տե՛ս «ՀՀ Կենտրոնական բանկի մասին» օրենքի 4–րդ հոդվածը («ՀՀ գործող օրենքների ժողովածու, 1995- 1999թթ.», գիրք Ա, Եր. 1999):



արժույթի վերածում նմուշի: Իսկ երբ լիմիտը և օրվա մուտքը չեն բավարարում ելքը, ապա հատուկ թույլտվությամբ պակասը լրացվում է պահուստային ֆոնդից, և տեղի է ունենում նմուշի վերածում արժույթի[1]:

Բանկը իրավունք ունի իր մեկ կամ մի քանի մասնաճյուղերի դրամարկղերի կանխիկ դրամի ավելցուկի հաշվին ծածկել իր մյուս, մեկ կամ մի քանի մասնաճյուղերի դրամարկղների կանխիկ դրամի պակասի պահանջը: Այս գործարքները բոլորովին էմիսիոն բովանդակություն չեն պարունակում և ըստ էության բխում են շրջանառու դրամարկղերի գործնական կարգավորման ու մասնակիորեն գոյացող ավելորդ դրամական միջոցներով տվյալ ժամանակում շրջանառության ողջ համակարգի նորմալ կազմակերպման պահանջներից: Միայն այն դեպքում, երբ ամբողջ հանրապետության մակարդակով կանխիկ դրամի մուտքը չի բավարարում ելքը, Հայաստանի բանկը ՀՀ ԱԺ որոշմամբ լրացուցիչ դրամ է բաց թողնում շրջանառության մեջ: Այս դեպքում տեղի է ունենում դրամի էմիսիա:

Կանխիկ դրամի մուքտի և ելքի հարցերը գործնականորեն կարգավորելու և լուծելու նպատակով Կենտրոնական բանկի կողմից յուրաքանչյուր եռամսյակի համար կազմվում է կանխիկ դրամի շրջանառության գործուն ծրագիր կամ դրամարկղային հաշվեկշիռ: Շրջանառության մեջ գտնվող դրամի քանակի գերազանցումն ապրանքների գների գումարից և դրա հետևանքով ապրանքով չապահովված դրամի առաջացումը կոչվում է արժեզրկում (ինֆլյացիա): Վերջինս բարձրացնում է իրացվող ապրանքների գները: Դրամի արժեզրկումն առաջանում է տարբեր տնտեսական պատճառներով: Դա շրջանառության մեջ և՛ դրամի միավորների ավելորդ քանակի բաց թողումն է, և՛ ապրանքների արտադրության հետ մնալը վճարունակ պահանջարկի աճից, և պահանջարկ չվայելող ապրանքներ շուկա մտնելն ու այլ պատճառներ: Բայց և

[1] Տե՛ս Ս.Մուրադյան, Գ.Սուքիասյան, ՀՀ ֆինանսական իրավունք, Ե., 1996, էջ 211; Ս.Մուրադյան, «Ֆինանսական իրավունք» (ուսումնական ձեռնարկ), Ե., 2003, էջ 266-270:

այնպես փողի արժեզրկման, հատկապես գերաժեզրկման ընդհանուր հիմնական պատճառը տնտեսության անկայուն ու խոր ճգնաժամն է, մասնավորապես թերարտադրության խրոնիկական վիճակը, անառողջ ֆինանսական դրությունը, պետբյուջեի սղաճը և այլն:

Դրամական շրջանառության իրավական կարգավորման անբաժան մասն են կազմում բանկային գործունեության վճարահաշվարկային ծառայությունները, որոնք սահմանված են «Բանկերի և բանկային գործունեության մասին» օրենքի 34-րդ հոդվածում: Ազատ շուկայի գոյության պայմաններում, որպես տնտեսական կազմակերպությունների աշխատանքը գնահատող ցուցանիշ, ներկա ժամանակաշրջանում կարևորվում է տնտեսության մեջ տնտեսավարող սուբյեկտների փոխադարձ հաշվարկների արդյունավետ և տնտեսապես հիմնավորված օգտագործումը: Իրավունքը, հանդես գալով որպես հասարակական հարաբերությունների կարգավորիչ, միաժամանակ կարգավորում է բազմաբովանդակ տնտեսական հարաբերությունները:



## §2. Հաշվարկային հարաբերությունների բանկային իրավական կարգավորման առանձնահատկությունները

Տնտեսավարման երկու ժամանակաշրջանում, երբ իրավունքի դերը ավելի է բարձրացել որպես տնտեսական բնույթի հարաբերությունների կարգավորիչ, դժվար թե գտնվի ապրանքային արտադրության մի այնպիսի բնագավառ, որը զերծ լինի իրավական կարգավորումից: Անկախ իրավական կարգավորման առարկաների և մեթոդների բազմազանությունից՝ անհավանական է պատկերացնել իրավունքի որևէ ամփոփ ճյուղ, որը ամենաընդհանուր գծերով կարգավորի միայն տնտեսական գործունեությունից բխող հասարակական հարաբերություններ: Հետևաբար, այսպիսի բազմածավալ գործունեության ամրապնդումը, կարգավորումը և վերջինիս իրավական պաշտպանության հարցերը իրենց դրսևորումն են ստանում իրավունքի ամենատարբեր ճյուղերում: Այսպես, տնտեսական գործունեությունից ծագող հասարակական հարաբերությունների մի խումբ կարգավորվում է քաղաքացիա-իրավական նորմերով, հարաբերությունների երկրորդ խումբը՝ վարչաիրավական, իսկ մեկ այլ հարաբերություններ՝ ֆինանսա-իրավական նորմերով:

Հաշվարկային հարաբերությունների տնտեսական և գործնական ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ վերջիններս նույնպես համասեռ չեն: Տարասեռության չափանիշով, այն գույքային հարաբերությունները, որոնք ծագում են հաշվարկների գործընթացում և պայմանավորված են իրավահարաբերության սուբյեկտների իրավական հավասարությամբ, կարգավորվում են քաղաքացիական իրավունքով, իսկ այսպես կոչված ուղղահայաց փոխհարաբերություններից առաջացած գույքային հարաբերությունները կարգավորվում են վարչական և ֆինանսական իրավունքի ճյուղերի նորմերով:[1]

[1] Տե՛ս ß.À. Êóíèê, Êðåäèòíûå è ðàñ÷åòíûå îòíîøåíèÿ â òîðãîâëå, “Ýêîíîìèêà” Ì., 1976, էջ 6: Տ.Կ.Բարսեղյան, Հայաստանի Հանրապետության քաղաքացիական իրավունք, ԵՀՀ, Տ., 2000թ., էջ 10:

Իրավական գրականության մեջ ինչպես ժամանակին, այնպես էլ այսօր հաշվարկային հարաբերությունների հասկացության և իրավական կարգավորման հարցում մեկ միասնական տեսակետ գոյություն չունի: Հիմնախնդրով զբաղվող իրավագետներից Վ.Ֆ.Կուզմինը այն կարծիքին է, որ հաշվարկային հարաբերությունները իրենց բնույթով, բովանդակությամբ և նպատակաուղղվածությամբ տնտեսական ուղղվածություն ունեն և կարգավորում են տնտեսական իրավունքով[1]: Հետևողականորեն պաշտպանելով այս տեսակետը՝ հեղինակը հանգում է այն համոզման, որ անհնար է հաշվարկային հարաբերությունները առանձնացնել իրավահարաբերություններից և բաժանել քաղաքացիական, վարչական ու ֆինանսաիրավական հարաբերությունների: Իրավագետներից Վ.Պ.Կորյակովը հաշվարկային իրավահարաբերությունները կառուցվածքի բարդության պատճառով համարում է համալիր (կոմպլեքսային) իրավական ինստիտուտ և գտնում է, որ միևնույն հաշվարկային իրավահարաբերությունները պարունակում են քաղաքացիա-իրավական և ֆինանսա-իրավական տարրեր: Գրեթե նույնաբովանդակ կարծիք է հայտնում Մ.Լ. Կոգանը՝ ընդգծելով, որ ցանկացած հաշվարկային իրավահարաբերության ընթացքում Կենտրոնական բանկի գործունեության մեջ նկատելի է իշխանական - կազմակերպական և գույքային հարաբերությունների միասնություն[2]:

Հաշվարկային իրավահարաբերությունների իրավական կարգավորման հարցի կապակցությամբ իրավաբանական գրականության մեջ արտահայտված տարբեր կարծիքներն էական չեն, քանի որ բավական է մատնացույց անել Հայաստանի Հանրապետության քաղաքացիական օրենսգրքի առաջին հոդվածի 6-րդ կետը,

---

[1] Á.Ô. Êóçüìèí, Êðåäèòíûå è ðàñ÷åòíûå ïðàâîîòíîøåíèÿ â ïðîìûøëåííîñòè, “Þðèäè÷åñêàÿ ëèòåðàòóðà”, Ì., 1975. էջ 30.
[2] Ō.Ë. Êîãàí, Ïðàâîîòíîøåíèÿ ìåæäó Ãîñáàíêîì è îáúåäèíåíèÿ, “Ñîâåòñêîå ãîñóäàðñòâî è ïðàâî” 1974. էջ 59 Ñîâåòñêîå ãðàæäàíñêîå ïðàâî, ó÷åá. ïîä ðåä. ïðîô. Î.À.Êðàñàâ÷èêîâà, òîì II, “Âûñøàÿ øêîëà”, Ì., 1969, էջ 292-293.



որտեղ ասված է, որ քաղաքացիական օրենսդրությունը կարգավորում է գույքային հարաբերությունները և չի կիրառվում վարչական կամ իշխանական այլ ենթակայության վրա հիմնված գույքային, ներառյալ հարկային, ֆինանսական և վարչական հարաբերությունների նկատմամբ, եթե այլ բան նախատեսված չէ օրենսդրությամբ ու իրավական ակտերով:

Այսօր իրավագիտության տեսական հետազոտությունների բնագավառում ընդհանուր ճանաչում ստացած տեսակետն այն է, որ հաշվարկային հարաբերությունները ծագում են դրամական պարտավորության տեսքով և հանդես են գալիս որպես քաղաքացիա-իրավական պարտավորությունների տարատեսակ:

Դրամական պարտավորությունները մշտապես կապված են որոշակի դրամական փոխանցումների հետ, որոնք արտահայտվում են արժույթով: Ընդ որում դրամական պարտավորություններին բնութագրական է այն, որ դրանց համար էական չէ, թե ինչ ձևով է կատարվում հաշվարկը՝ կանխիկ, թե անկանխիկ[1]: Հետևաբար, դրամական պարտավորությունները քաղաքացիա - իրավական այնպիսի իրավահարաբերություններ են, որտեղ կողմերից մեկը՝ պարտապանը, պարտավոր է մի ուրիշ անձի՝ պարտատիրոջ, վճարել որոշակի դրամական գումար, իսկ պարտատերը իրավունք ունի պարտապանից պահանջելու, որ նա կատարի իր պարտականությունը:

Պայմանագրային այսպիսի պարտավորությունների բնական մասն են կազմում նաև հաշվարկային իրավահարաբերությունները, քանի որ ամեն կարգի հատուցանելի իրավահարաբերություններին ներհատուկ է ցուցաբերած ծառայությունը և վերջինիս փոխհատուցումը: Իրավական նման հարաբերությունների առանձնահատկությունը ոչ այնքան դրամական պարտավորության կատարումն է, որքան ծառայության մատուցումը: Գրեթե բոլոր տնտեսական պայմանագրերում (մատակարարման, փոխադրման,

---

[1] Տե՛ս Ïðàâîâûå îñíîâû áàíêîâñêîé äåÿòåëüíîñòè â Ðîññèè (ïîä ðåä. Ê.Ã.Áîðèñîâà, Í.Ñ.Áàð÷óêîâà), Ì., ÌÝÃÓ, 1995, էջ 36:

կապիտալ շինարարության, կապիտալի, պահատվության) դրամը հանդես է գալիս որպես համարժեք փոխհատուցման միջոց: Նշված տնտեսական պայմանագրերը իրարից տարբերվում են ծառայության բնույթով և ոչ թե վճարվող դրամով, որպես փոխհատուցում: Հետևաբար, դրամական պարտավորության կատարումը ցանկացած հատուցանելի պայմանագրային պարտավորության անհրաժեշտ ու բավարար տարր չէ, այլ վերջինիս նկատմամբ ածանցյալ տարրը և հանդես է գալիս որպես երկրորդական գործառույթ:

Գործնականում քաղաքացիական իրավունքում հանդիպում է հասարակական հարաբերությունների մի ինքնուրույն խումբ, որը կապված է միայն դրամական հաշվարկների հետ և բանկային օրենսդրության համաձայն այդպիսի հաշվարկներ է թույլ տալիս տնտեսական կազմակերպությունների միջև ծավալվող փոխհարաբերություններում: Նման հաշվարկային հատուկ իրավահարաբերություններն ունեն իրենց բնորոշ առանձնահատկությունները, քանի որ ծագում են այն ժամանակ, երբ հաշվարկներին մասնակցում են բանկային հիմնարկները, և պայմանագրային հիմնական սուբյեկտները չեն համընկնում հաշվարկային իրավահարաբերության մասնակիցների հետ[1]:

Ուսումնասիրությունները վկայում են, որ ժամանակին արտահայտված այս տեսակետը, բնավ չի կորցրել իր հնչեղությունը և, անկախ սեփականության ձևերից ու տնտեսվարման եղանակներից, բանկային գործունեության և հաշվարկների ձևերի շարքում ոչ թե պակասել, այլ ժամանակի թելադրանքով ավելացել են հաշվարկների պահանջները, որոնց առնչությամբ ծագող իրավահարաբերություններին բանկերից բացի մասնակցում են այլ սուբյեկտներ, որոնք պայմանագրերից բխող պարտավորության կողմեր չեն, և որոնց իրավունքներն ու պարտականությունները սահ-

[1] Տե՛ս, ß.À.Êóíèê, Êðåäèòíûå è ðàñ÷åòíûå îòíîøåíèÿ â òîðãîâëå, "Ýêîíîìèêà" Ì., 1976, ¿ç 17. Ë.Ã.Åôèìîâà, Áàíêîâñêîå ïðàâî, Ó÷åáíîå è ïðàêòè÷åñêîå ïîñîáèå, Èçä. ÁÅÊ, Ì., 1994. էջ 127-128.



մանվում են բանկային իրավունքի նորմերով, ինչպիսիք են՝ ֆինանսական լիզինգի, արտարժույթային, գործող ձեռնարկությունների բանկային վաճառքի, գույքի վստահության կառավարման, ֆակտորինգային և բանկային գործառույթներից բխող այլ հաշվարկները:

Վերը հիշատակվածը վկայում է այն մասին, որ ոչ բոլոր դրամական հաշվարկներն են կարգավորվում ինքնուրույն հաշվարկային իրավահարաբերությունների ինստիտուտի նորմերով: Սրանք ինքնուրույն իրավական ինստիտուտի տեսք են ձեռք բերում միայն այն ժամանակ, երբ հանդես են գալիս որպես պայմանագրային պարտավորության իրացման եղանակ: Հաշվարկային իրավահարաբերությունների ինքնուրույնությունը հիմնականում պայմանավորված է բանկային գործունեությունը կարգավորող հատուկ կանոններով, որոնք շատ հաճախ բանկային ծառայության ընթացքում տնտեսական պայմանագրերից դուրս կողմերի նկատմամբ կարող են ցուցաբերել տարբերակված մոտեցում[1]:

Այսպիսով,հաշվարկային իրավահարաբերությունները դրամական այն պարտավորություններն են, պարտապանը պարտավոր է բանկային մարմնի միջոցով մյուս կողմի պարտատիրոջ օգտին վճարելու որոշակի դրամական գումար կատարված աշխատանքի և ստացված ապրանքների համար:

Բանկում բացված հաշիվների հիման վրա կազմակերպությունների միջև ծավալվող իրավահարաբերությունները բնույթով բարդ (համալիր) են: Դա պայմանավորված է հաշվարկային իրավահարաբերություններին ներհատուկ երկու առանձնահատկություններով: Առաջինն այն է, որ հաշվարկային յուրաքանչյուր գործառնության մասնակցում են ոչ թե երկու, այլ ***երեք սուբյեկտ՝ բանկը, վճարող կողմը և այն կողմը***, որի օգտին կատարվում է վճարումը: Երկրորդ՝ բանկը հաշվարկային գործառնություններին մասնակցում է միաժամանակ և՛ որպես իրավաբանական անձ (առևտրա-

[1] Տե՛ս Òîñóíÿí Ã.À., Âèêóëèí À.Þ., Ýêìàëÿí À.Ì. Áàíêîâñêîå ïðàâî (îáùàÿ ÷àñòü), Ì., “Þðèñò”, 1999, էջ 201.

յին կազմակերպություն), և՛ իշխանության բնույթի լիազորություններով օժտված պետական մարմին: Հետևաբար, հաշվարկների կատարման պրոցեսում ծագած հարաբերությունները կարգավորվում են իրավունքի ոչ թե մեկ, այլ երկու ճյուղերի՝ քաղաքացիական և ֆինանսական իրավունքի նորմերով: Այսպես, վճարողի և մատակարարի միջև ծագած հարաբերությունները կարգավորում է քաղաքացիական իրավունքը: Տվյալ դեպքում հաշվարկը իրավաբանական փաստ է, որով դադարեցվում են այն քաղաքացիա - իրավական հարաբերությունները, որ ծագել էին մատակարարողի և վճարողի միջև մատակարարման և այլ պայմանագրերի հիման վրա: Վճարելով իրենց պարտքի գումարը՝ վճարողը դրանով իսկ կատարում է մյուս կողմի հետ կնքված պայմանագրով իր վրա դրված պարտականությունը: Հաշվարկային հարաբերությունները նախնական չեն, այլ հանդես են գալիս որպես հետևանք նախկինում բանկի հաճախորդների միջև ծագած քաղաքացիա-իրավական հարաբերությունների: Դրա համար էլ հաշվարկային կոնկրետ ձևերը կարգավորվում են քաղաքացիական իրավունքի նորմերով:

Հաշվարկների մասնակիցների և բանկի միջև ծագող հարաբերությունները առավել բարդ են: Մի կողմից՝ կրում են քաղաքացիա-իրավական բնույթ, քանի որ հիմնված են բանկային հաշվի կամ նրա տարատեսակներին պատականող պայմանագրերի վրա, համաձայն որի պայմանադիր տնտեսական մարմինը պարտավոր է հաշվարկային հաշվի մեջ մտցնել իր բոլոր դրամական միջոցները, իսկ բանկն էլ պարտավոր է կատարել հաշվետիրոջ օրինական կարգադրությունները, ընդ որում բանկը հանդես չի գալիս իր հաճախորդի կարգադրությունները պասիվ կատարողի դերում: Հանդես գալով որպես իշխանական լիազորություններով օժտված մարմին՝ բանկը հաշվարկների գործընթացում ամենօրյա վերահսկողություն է իրականացնում հաշվետիրոջ գործողությունների վրա, ստուգում նրա կարգադրությունների օրինականությունը, հասնում այն բանին, որ հաշվարկները կատարվեն ժամանակին ու



ճիշտ, ինչպես նաև իր հայեցողությամբ, առանց կողմերի կամքը հարցնելու կատարում է հաշվի վարկավորում, տոկոսների դրույքաչափերի միակողմ որոշում և վճարում[1]:

Այսպիսի վերլուծությունը վկայում է, որ պետական բանկի և հաշվետիրոջ միջև եղած հարաբերությունները չեն կարող կարգավորել սոսկ քաղաքացիական իրավունքի նորմերը: Դա կարգավորվում է նաև բանկային իրավունքի նորմերով:

[1] Տե՛ս մանրամասն, Í.Ä.Ýðíàøâèëè, Áàíêîâñêîå ïðàâî, ÞÍÈÒÈ, Çàêîí è ïðàâî Ì., 2002, էջ 243: ՀՀ օրենքը «Վճարման հանձնարարականով միջոցների փոխանցումների մասին», հոդ. 31-րդ և 34-րդ, ՀՀ Կենտրոնական բանկ, հատուկ թողարկում, Ե., 1999: ՀՀ Կենտրոնական բանկի խորհրդի 1997թ. մարտի 25 –ի թիվ 100 որոշումը «Վճարման հանձնարարականները չեղյալ համարելու և հաճախորդի հաշվի մասին տեղեկացման վավերապայմանները սահմանելու մասին», (Բանկային տեղեկագիր, N 8, 1997, էջ 42-45):

## §3. Կանխիկ և անկանխիկ հաշվարկների իրավական հիմքերը, հաշվի տեսակները

Հաշվարկը պարտատիրոջ կողմից որոշակի դրամական գումարի վճար է: Հաշվարկների կատարման՝ օրենքով սահմանված կարգը կոչված է ապահովել դրանց ժամանակին լինելը: Ժամանակին լինելը ներկայումս ձեռք է բերում սկզբունքային նշանակություն, քանի որ տնտեսվարման նոր կարգի անցած ձեռնարկությունների աշխատանքը գնահատվում է ոչ թե նրանց կողմից պատրաստած և մատակարարած արտադրանքի, այլ միայն ու միայն իրացված (բեռնաթափված և վճարված) արտադրանքի ծավալով: Հաշվարկը, որպես ընդհանուր կանոն, նախնական բնույթ չի կրում,այլ կատարվում է բեռնաթափումից, աշխատանք կատարելուց, ծառայություն մատուցելուց հետո: Դրանով իսկ կանխվում է մի կազմակերպության կողմից մյուս կազմակերպության վարկավորումը[1]:

Այսօր, ավելի քան երբևէ, տնտեսական կազմակերպությունները իրենց դրամական միջոցները պահելով բանկի համապատասխան հաշիվներում՝ իրավական փոխհարաբերության մեջ են մտնում բանկի հետ, որի իրավական հիմքը բանկային հաշիվը չէ: Ըստ գերատեսչությունների, միավորումների, հիմնարկների և կազմակերպությունների գործունեության բնույթի բանկային հաշիվները լինում են ***հաշվարկային հաշվի և ընթացիկ հաշվի*** իրավական հարաբերությունների տեսքով:

Իրավական մի շարք ակտերով, այդ թվում և հանրապետության Քաղաքացիական օրենսգրքի 912 հոդվածում սահմանված են կազմակերպությունների ու բանկային մարմինների իրավական փոխհարաբերության հիմքերը, որոնք նախատեսում են կազմակերպությունների՝ վարկային հիմնարկներում ունեցած հաշիվներում պահվող դրամական միջոցների տնօրինման կարգը:

[1]Տե'ս Ñîâåòñêîå ãðàæäàíñêîå ïðàâî, ó÷åá. Ïîä ðåä. ïðîô. Î.À.Êðàñàâ÷èêîâà, òîì II, "Âûñøàÿ øêîëà", Ì., 1969, էջ 304.



Ըստ գործող քաղաքացիական օրենսդրության բանկային հաշվի պայմանագրով բանկը պարտավորվում է ընդունել և հաճախորդի (հաշվի տիրոջ) բացած հաշվի վրա մուտքագրել մուտք եղող դրամական միջոցները, հաշվից փոխանցումներ կատարելու, համապատասխան գումարներ տալու և հաշվով այլ գործառնություններ իրականացնելու վերաբերյալ հաճախորդի կարգադրությունները:

Օրենսդիրը, սահմանելով բանկի լիազորությունները, միաժամանակ սահմանափակում է նրա իրավունքները այն ծավալով, որ նա իրավունք չունի որոշել և վերահսկել հաճախորդի դրամական միջոցների օգտագործման ուղղությունները կամ սահմանել բանկային հաշվի պայմանագրով օրենքով չնախատեսված այլ սահմանափակումներ իր դրամական միջոցները սեփական հայեցողությամբ տնօրինելու իրավունքների նկատմամբ: Առևտրային կազմակերպությունները և միավորումները, որոնք օժտված են սեփական շրջանառու միջոցներով և ունեն ինքնուրույն հաշվեկշիռ, պայմանագրային պարտավորություններից բխող հաշվարկների կատարման համար բացում են ***հաշվարկային հաշիվ***: Հաշվարկային հաշվում արտացոլում են կազմակերպությունների գործունեության արդյունքները: Կառավարության թույլտվությամբ հաշվարկային հաշիվ կարող են բացել և նոր բյուջետային կազմակերպությունների համար:

Հաշվարկային հաշիվներում գումարները գոյանում են դրանց շրջապտույտի ընթացքում միջոցների ազատման հետևանքով և ի հաշիվ այլ ձեռնարկություններից ու կազմակերպություններից առաքված ապրանքների, մատուցած ծառայությունների դիմաց ստացվող վճարումների: Այստեղից է կատարվում դրամի հոսքը վճարումների ձևով: Հաշվարկային հաշիվների միջոցով ***բանկի հսկողությամբ տեղի է ունենում դրամի շրջանառություն***: Այսպես, տնտեսական կազմակերպությունները հիմնականում հաշվարկային հաշվից են կատարում բոլոր ծախսերը, կանխիկ դրամ ստանում աշխատավարձի, գործողումների, տնտեսական ու այլ

կարիքների համար, անկանխիկ հաշիվներ կատարում, մարում իրենց պարտավորությունները[1]:

Այսօր, ավելի քան երբևէ, մեր երկրում գիտատեխնիկական նվաճումների հիման վրա ամրապնդվում և լայնորեն ներդրվում է զարգացած պետությունների տնտեսափորձը, էապես աճում է հաշվարկային հաշվի դերը ձեռնարկությունների և միավորումների օպերատիվ տնտեսական ինքնուրույնության ամրապնդման գործում: Տնտեսական գործունեության մեջ առաջավոր մեթոդների արմատավորումը ընդլայնում է կազմակերպությունների նախաձեռնությունը ազատ և նպատակասլաց տեղաբաշխելու հաշվարկային հաշվում ունեցած դրամական միջոցները: Այսպես, ազատ շուկայական հարաբերություններում տնտեսական կազմակերպությունները ինքնուրույնաբար, իրենց սեփական դրամական միջոցների հաշվին իրականացնում են կապիտալ ներդրումներ:

Բանկային հաշվի մյուս տեսակը ***ընթացիկ հաշիվն*** է, որը բացվում է բյուջետային կազմակերպությունների կամ ֆինանսական այլ աղբյուրների համար:Հաշվարկային կամ ընթացիկ հաշիվ բացելու համար կազմակերպությունները բանկի հաստատություններին ներկայացնում են դիմում՝ կցելով տվյալ կազմակերպության ստեղծման օրինականությունը հաստատող փաստաթղթերի պատճենները, վերադաս կազմակերպության տեղեկանքը ղեկավարի և գլխավոր հաշվապահի լիազորությունների մասին, նրանց ստորագրությունների նմուշները և տնտեսական կազմակերպության կնիքի դրոշմը:

Ընթացիկ հաշիվները բացվում են բոլոր բանկերում որոնք ընթացիկ հաշվարկային գործառնությունները կատարում են ինչպես հասարակական կազմակերպությունների, այնպես էլ համայնքների համար:

Տնտեսության մեջ դրամական միջոցներ պահելու և հաշվարկներ կատարելու նպատակով ձեռնարկությունների, կազմակերպությունների ու հիմնարկների համար՝ նրանց գործունեության

---

[1] Տե՛ս Գ.Ա.Սուքիասյան,Ն. Գ.Սուքիասյան Ֆինանսական իրավունք, Ե., «Իրավունք», 2007թ., էջ 527:



բնույթին և ֆինանսական աղբյուրներին համապատասխան հանրապետության տարածքում գործող օրենսդրությամբ սահմանվել են հաշվարկների միասնական ձևեր: Կազմակերպությունների միջև կատարվող հաշվարկները հիմնականում տեղի են ունենում անկանխիկ դրամի մասնակցությամբ, միջոցներ վճարողի և ստացողի հաշիվներում բանկային գրանցումներ կատարելով:

Քաղաքացիական գործող օրենսգրքի 929-րդ հոդվածում սահմանված է կանխիկ և անկանխիկ հաշվարկների իրավական ռեժիմը: Քաղաքացիների մասնակցությամբ հաշվարկները, եթե նրանք կապված չեն ձեռնարկատիրական գործունեության իրականացման հետ, կարող են կատարվել կանխիկ դրամով, առանց գումարի սահմանափակման կամ անկանխիկ: Իրավաբանական անձանց միջև հաշվարկները, նաև քաղաքացիների մասնակցությամբ հաշվարկները՝ կապված նրանց ձեռնարկատիրական գործունեության հետ, կատարվում են անկանխիկ: Այդ անձանց միջև հաշվարկները կարող են կատարվել նաև կանխիկ դրամով, եթե այլ բան սահմանված չէ օրենքով: Անկանխիկ հաշվարկներ կատարվում են բանկերի, այլ վարկային կազմակերպությունների միջոցով, որոնցում բացված են համապատասխան հաշիվներ:

Անկանխիկ հաշվարկների տեսակները նույնպես սահմանված են օրենսդրությամբ: Այսպես, «ՀՀ քաղաքացիական օրենսգրքի» 930-րդ հոդվածը սահմանում է, որ անկանխիկ հաշվարկներ իրականացնելիս կիրառվում են՝ ա) հաշվարկներ վճարման հանձնարարականներով, բ) ակրեդիտիվով, գ) ինկասո հաշվարկներ, դ) չեկերով, ինչպես նաև օրենքով նախատեսված ու դրան համապատասխան բանկային կանոններով, բանկային գործունեության մեջ կիրառվող գործարար շրջանառությամբ ընդունված այլ հաշվարկներ:

ՀՀ բանկերի կողմից դրամի շրջանառության և անկանխիկ հաշվարկների գործառույթները հավասարապես կիրառվում են պետությունների միջազգային բանկային պրակտիկայում, որտեղ կիրառվող վճարման ձևերը և եղանակները բավական բազմազան են ու պայմանավորված են ինչպես տվյալ երկրի սովորույթ-

ներով ու գործող օրենսդրությամբ, այնպես էլ միջազգային առևտրային սովորույթներով և միջազգային համաձայնագրերով, երբ խոսքը միջազգային առևտրի մասին է: Սովորաբար վճարման ձևերը և եղանակները նախօրոք համաձայնեցվում են ապրանք կամ ծառայություն մատուցող և ձեռք բերող կողմերի միջև, այնուհետև արձանագրվում են վերջիններիս կողմից կնքված պայմանագրերում:

Վճարման եղանակները սահմանում են, թե երբ և ինչպես, միանվագ, թե մաս-մաս է իրականացվում ապրանքի վճարումը: Այս կամ այն վճարման եղանակի ընտրությունը կախված է կազմակերպությունների միջև հաստատված ֆինանսաարժութային հարաբերություններից, որոշակի ապրանքատեսակի առևտրի առանձնահատկություններից: Բանկային անկանխիկ հաշվարկների ձևերի գործնական կիրառման ուսումնասիրությունների հիման վրա վճարման հիմնական եղանակները կարելի է բաժանել երեք խմբի՝

1) կանխիկ վճար,
2) կանխավճար,
3) ապառիկ վճար:

Բանկային իրավունքում կանխիկ վճարի տակ հասկացվում են այնպիսի վճարումներ, որոնց ընթացքում ապրանքի դիմաց վճարումը գնորդի կամ գնորդի բանկի կողմից կատարվում են ապրանքի կամ ապրանքային փաստաթղթերի ստացումից ոչ ուշ: Կախված կողմերի պայմանավորվածությունից, վճարման ձևերից՝ գնորդը ապրանքի համար կարող է վճարել տարբեր կերպ. առաքման վերաբերյալ վաճառողի տելեքսի, վաճառողի բանկի տելեքսի դիմաց, որով վերջինս հայտնում է գնորդի բանկին տրանսպորտային փաստաթղթերի ընդունման և առաքման մասին, տրանսպորտային փաստաթղթերի, ապրանքի դիմաց և այլն:

**Կանխավճարը** ենթադրում է գնորդի կողմից որոշակի գումարի փոխանցում վաճառողին մինչև ապրանքի առաքումը կամ պատրաստումը: Այդ գումարը կազմում է որոշակի մաս ընդհանուր վճարվելիք գումարի, որը կարող են սահմանել կողմերը փոխադարձ համաձայնությամբ: Սովորաբար կանխավճարը ապահովվում է վաճառողի բանկի (կամ այլ առաջնակարգ բանկի) կողմից կանխավճարի վերադարձի երաշխիքով կամ գնորդի ու վաճառողի միջև կնքված պայմանագրում նշվում է, որ պայմանագրով սահմանված պարտականությունների չկատարման դեպքում կանխավճարը պետք է լրիվ չափով վերադարձվի գնորդին:

**Ապառիկ վճարը** բանկային գործառնական սովորույթով ենթադրում է վաճառողի կողմից գնորդին առևտրային վարկի տրամադրում: Ըստ ժամկետի առևտրային վարկերը լինում են կարճաժամկետ՝ մինչև 1 տարի, միջին ժամկետի՝ մինչև 5 տարի, երկարաժամկետ՝ 5 տարուց ավելի: Առևտրային վարկը կարող է տրամադրվել վճարի հետաձգման, երկարացման պայմաններով, կամ դրամային վարկի ձևով:

## §4. Անկանխիկ հաշվարկների ձևերը: Վճարման հանձնարարագրով և բաց հաշվով բանկային հաշվարկների իրավական կարգավորումը

ՀՀ առևտրային մի քանի բանկերի անկանխիկ հաշվարկների գործնական ուսումնասիրությունները (Արդշինինվեստբանկ, Հայխնայբանկ) վկայում են, որ նրանց առևտրային գործարքներում կիրառվում են տարբեր տեսակի վճարման ձևեր ինչպիսիք են՝ 1) վճարման հանձնարարություն, 2) վճարում բաց հաշվով, 3) չեկ, 4) մուրհակ, 5)ինկասո, 6) ակրեդիտիվ, 7) երաշխիքներ:

Վճարման հանձնարարությունը ըստ ՀՀ քաղաքացիական օրենսգրքի 931-րդ հոդվածի բանկի հանձնարարականն է իր թղթակից բանկի՝ վճարել կամ այլ բանկին հանձնարարել վճարել որոշակի գումար վաճառողին (բենեֆիցիարին) իր հաճախորդ՝ գնորդ-հանձնարարագրողի խնդրանքով և վերջինիս հաշվին: Վաճառողը տրամադրում է ապրանքը և ապրանքային փաստաթղթերը անմիջապես գնորդին, իսկ գնորդը իրականացնում է վճարը պայմանագրով սահմանված ժամկետում՝ կարգադրելով իր բանկին կատարել համապատասխան փոխանցումը: Գնորդի բանկը, ընդունելով իր հաճախորդ-գնորդի վճարային հանձնարարագիրը, իր անունից ներկայացնում է վաճառողի բանկին **բանկային** վճարային հանձնարարագիր: Վաճառողի բանկը հանձնարարագրի հիման վրա կատարում է վճարում վաճառողի օգտին[1]: Բանկերի մասնակցությունը այս տիպի գործարքներում, համեմատած վճարման այլ ձևերի (ինկասո, ակրեդիտիվ) հետ, նվազագույն է. նրանք պատասխանատու չեն ո՛չ ապրանքի առաքման, ո՛չ էլ փաստաթղթերի փոխանցման ու ստուգման համար, այլ իրականացնում են միայն գումարի փոխանցումը հանձնարարագրում նշված ժամկետների համաձայն: Վճարման այս ձևը առավելագույնս ձեռնտու է գնորդին, քանզի նա վճարում է ապրանքը ստանալուց հետո, սակայն վաճառողի համար պարու-

[1] Տե՛ս Ðåçíèêîâ Â.Â., Áåçíàëè÷íûå ôîðìû ðàñ÷åòà, Ì., “Ãëàâáóõ”, 2000, էջ 87:



նակում է չվճարման կամ վճարի ուշացման ռիսկ: Ուստի այս ձևը ցանկալի է կիրառել միայն այն դեպքերում, երբ մատակարարը և գնորդը ճանաչում և վստահում են միմյանց և գտնվում են ֆինանսա-տնտեսական մշտական կապերի մեջ:

Բանկային պրակտիկայում կիրառվում է փոխանցման այլ ձև՝ պայմանագրով նախատեսված չափով կանխավճար դեռևս չառաքված ապրանքի համար: Սովորաբար կանխավճարը կազմում է ողջ գումարի 15-30%-ը, սակայն կարող է լինել նաև 100%: Կանխավճարով փոխանցումը ձեռնտու չէ գնորդին, քանզի ապրանքը չառաքելու դեպքում առկա է կանխավճարի կորստի, չվերադարձնելու ռիսկ: Գնորդին այս տեսակի ռիսկերից ձերբազատելու համար ժամանակակից բանկային պրակտիկայում կիրառվում են ***կանխավճարի վերադարձման բանկային երաշխիք, փաստաթղթային կամ պայմանական փոխանցման մեթոդներ:*** Այս դեպքում, մինչև գնորդի կողմից կանխավճարի փոխանցումը, վաճառողը գնորդի պահանջով դիմում է իր կամ որևէ առաջնակարգ բանկի՝ գնորդի օգտին կանխավճարի վերադարձի երաշխիք տրամադրելու խնդրանքով: Ըստ այդ երաշխիքի, վաճառողի կողմից պայմանագրի չկատարման դեպքում երաշխավորող բանկը պարտավորվում է վերադարձնել գնորդին ինչպես կանխավճարի գումարը, այնպես էլ այն տոկոսները, որոնք կարելի էր ստանալ այդ միջոցների օգտագործման համար կանխավճարի փոխանցման ողջ ժամանակահատվածում:

Փաստաթղթային կամ պայմանական փոխանցման դեպքում գնորդի բանկի կողմից կանխավճարի փոխանցումը վաճառողի բանկին իրականացվում է այն պայմանով, որ վաճառողի բանկի կողմից այդ միջոցները կհաշվեգրվեն վաճառողի հաշվին միայն վերջինիս կողմից վճարման հանձնարարագրում նշված փաստաթղթերի ներկայացման դեպքում: Ընդ որում, նշվում է ժամկետը, որի ընթացքում պետք է ներկայացվեն փաստաթղթերը: Նշված ժամկետում փաստաթղթերի չներկայացման դեպքում գնորդի բանկին հարցում է ուղարկում կատարված փոխանցման վերաբերյալ:

Նշված գործնական աշխատանքի մեթոդները ձեռնտու են և՛ վաճառողի, և՛ գնորդի համար, քանի որ գնորդի համար բացառվում է վճարված ապրանքի չառաքման դեպքում կանխավճարի չվերադարձման ռիսկը, իսկ վաճառողի համար բացառվում է առաքված ապրանքի չվճարման ռիսկը: Կանխավճարը կիրառվում է նաև վճարման այլ ձևերի հետ համատեղ՝ գումարի մի մասը փոխանցվում է կանխավճարով, իսկ մյուս մասը՝ ինկասոյով կամ ակրեդիտիվով:

ՀՀ տարածքում իրականացվող բանկային գործարքներում փոխանցումը անկանխիկ վճարման ամենատարածված ձևերից մեկն է. այն կիրառվում է ինչպես կանխավճարով իրականացվող գործարքներում, այնպես էլ «վճար ապրանքի դիմաց» իրականացվող վճարումներում: Այս վճարումները պարունակում են վաճառողի և գնորդի համար տարբեր տեսակի ռիսկեր. կանխավճարի դեպքում գնորդի համար առկա է ապրանքի չառաքման և կանխավճարի չվերադարձման ռիսկը, իսկ «վճար ապրանքի դիմաց» վճարման դեպքում վաճառողի համար առկա է չվճարման կամ ուշացած վճարման ռիսկը: Այդ ռիսկերը նվազեցնելու և կողմերի համար հավասար պայմաններ ստեղծելու նպատակով նպատակահարմար ենք գտնում բանկային անկանխիկ հաշվի ձևերում կիրառել փաստաթղթային փոխանցումը: Հանրապետության առևտրային բանկերի անկանխիկ հաշվարկների ձևերի ուսումնասիրությունների ամփոփման հիման վրա առաջարկվում է ՀՀ Կենտրոնական բանկին «փոխանցման» ձևով կատարվող անկանխիկ հաշվարկի արդյունավետությունը բարձրացնելու և հանրապետության տարածքում հատկապես «փոխանցումներով» հաշվարկներ կատարու դեպքում մշակել պարզեցված հետևյալ օրինակելի կարգը:

Գնորդը իրեն սպասարկող բանկի միջոցով իրականացնում է ապրանքների դիմաց վճարվելիք գումարի փոխանցումը վաճառողի բանկին՝ «վճարման պայմանները» մասում նշելով՝ «Վճարել վաճառողի կողմից սահմանված ժամկետում, անհրաժեշտ փաստաթղթերի ներկայացման դեպքում», և բերելով անհրա-



ժեշտ փաստաթղթերի ցանկը: Որպես այդպիսի փաստաթուղթ կարող է հանդես գալ գնորդի և վաճառողի կողմից ստորագրված ու կնքված «Հանձնման-ընդունման» ակտի մեկ օրինակը:

- Գնորդի բանկը իր հաճախորդի հանձնարարության հիման վրա իրականացնում է հանձնարարագրում նշված գումարի փոխանցումը վաճառողի բանկին:

- Վաճառողի բանկը «սառեցնում է» այդ գումարը միջանկյալ հաշվում և այդ մասին տեղեկացնում է վաճառողին:

- Վաճառողը իրականացնում է ապրանքի առաքումը: Գնորդի և վաճառողի ներկայացուցիչները ստորագրում են «Ընդունման - հանձնման» ակտը:

- Վաճառողը ներկայացնում է «Ընդունման - հանձնման» ակտի մեկ օրինակը բանկ, որը հաշվեգրում է գումարը վաճառողի հաշվին:

- Այն դեպքում, երբ նշված ժամկետում վաճառողի կողմից փաստաթղթերը *չեն* ներկայացվել, վաճառողի բանկը, համաձայն գնորդի բանկի հրահանգների, պետք է կա՛մ հետ ուղարկի գումարը գնորդի հաշվին, կա՛մ պետք է տեղեկացնի գնորդին փաստաթղթերի չներկայացման մասին:

Փաստաթղթային փոխանցման առավելությունն այն է, որ գնորդը երաշխավորված է, որ գումարը հասանելի կլինի վաճառողին միայն ապրանքի առաքման դեպքում, իսկ վաճառողը երաշխավորված կլինի բանկի կողմից, որ առաքված ապրանքի դիմաց կստանա գումարը:

Բանկային անկանխիկ հաշվի ձև է բաց հաշվով վճարումը, այնպիսի վճարում, որի ժամանակ վաճառողը առաքում է ապրանքը առանց որևէ վճարման երաշխիքի, իսկ գնորդն իրականացնում է վճարումը պայմանագրով սահմանված ժամկետներում: Քանի որ վճարողը վճարման որևէ երաշխիք չունի, ուստի նման վճարումները կատարվում են կա՛մ այն կազմակերպությունների միջև, որոնք մշտական տնտեսական կապերի մեջ են և իրականացնում են փոքր քանակությամբ կանոնավոր առաքումներ, կա՛մ հիմնական իրավաբանական անձի և նրա դուստր կազմակերպություննե-

րի միջև[1]: Վճարումը բաց հաշվին առևտրային վարկի մի տեսակ է: Որոշ եվրոպական երկրներում (Գերմանիայում, Շվեյցարիայում) վաճառողի ռիսկը նվազեցնելու համար կիրառվում է վճարում բաց հաշվին, այսինքն օգտագործվում է սեփականության իրավունքի փոխանցման վերապահում, որը հատուկ պայմանագիր է, համաձայն որի մինչև ապրանքի դիմաց լիակատար վճարում կատարել, վաճառողը ապրանքի սեփականատեր է: Այս վերապահումը հնարավորություն է տալիս վաճառողին չվճարման դեպքում հետ պահանջել ապրանքը, կամ, գնորդի անվճարունակության դեպքում, հետ ստանալ իր ապրանքը այն պարտապաններից, որը պետք է բաշխվի գնորդի այլ պարտատերերի միջև: Բաց հաշվով վճարումը իրականացնում է գնորդը՝ իր բանկին վճարային հանձնարարագրի ներկայացման միջոցով:

Այսօր ՀՀ տարածքում իրականացվող ներքին առևտրային գործարքներում այս վճարման ձևը լայն կիրառություն չունի, քանի որ որպես բանկային հաշվի ձև կապված է արտադրա-տնտեսական, մատակարարման և փոխադրամների ամենօրյա գործնական կապերի մեջ գտնվող կազմակերպությունների գործունեության հետ, որոնցից շատերը տարբեր պատճառներով չեն աշխատում:

[1] Տե՛ս մանրամասն Êóðáàòîâ À.ß., Ìàêñèìîâà Ñ.À., Ïðàâîâîé ðåæèì êîððåñïîíäåíòñêèõ ñ÷åòîâ áàíêîâ, “Äåëî è ïðàâî”, íî. 4, էջ 18, 1996.



## §5. Չեկերով կատարվող բանկային հաշվարկների իրավական կարգավորումը

Հանրապետության տարածքում բանկային մարմինների անկանխիկ հաշվարկների զգալի մասը իրականացվում է չեկերի միջոցով, որոնց իրավական ռեժիմին վերաբերող առանձնահատկությունները սահմանված են ՀՀ քաղաքացիական օրենսգրքի 945-953-րդ հոդվածներում:

Չեկը վճարային փաստաթուղթ է, որը պարունակում է չեկ դուրսգրողի հրամանը իրեն սպասարկող բանկին՝ չեկատիրոջը վճարել չեկի վրա նշված գումարը:

Զարգացած երկրներից շատերը ունեն իրենց ազգային չեկային օրենսդրությունը և այլ նորմատիվ ակտեր, որոնք կանոնակարգում են չեկային գործառնությունները և այդ գործառնություններում ընդգրկված կողմերի իրավունքներն ու պարտավորությունները: Պատմական տվյալները վկայում են, որ չեկերը, որպես անկանխիկ հաշվարկի ձևեր, սահմանվել են 1931թ. Ժնևյան Կոնվենցիայում, որտեղ հաստատվել էր «Չեկերի համընդհանուր օրենքը», որը ստորագրվել էր մի շարք եվրոպական պետությունների կողմից, որոնք պարտավորվել էին չեկերի մասին իրենց ազգային չեկային օրենքներում արտացոլել չեկերի համընդհանուր դրույթները: Մի շարք անգլո-ամերիկյան երկրներում, ինչպիսիք են ԱՄՆ-ը, Կանադան, Մեծ Բրիտանիան, չեկերի և մուրհակների համար օրենսդրական հիմք է ծառայել 1882թ. անգլիական օրենքը «Փոխանցելի մուրհակների մասին»:

Այսօր Ռուսաստանի Դաշնության պետություններում առևտրային բանկերը չեկերով անկանխիկ հաշվարկներ իրականացնում են Ռուսաստանի Գերագույն խորհրդի 1992թ. ընդունած «Չեկերի մասին» օրենքի դրույթներին համապատասխան:

Որոշ զարգացած երկրներում չեկերը լայնորեն կիրառվում են: Օրինակ, ԱՄՆ-ում 2006թ. տվյալներով չեկերով իրականացվող տարեկան վճարումները կազմել են ընդհանուր անկանխիկ վճա-

ռումների քանակի 80.4 տոկոսը, Ֆրանսիայում՝ 49.1%-ը, Կանադայում՝ 98.9% -ը:

Բանկերի հաշվարկային գործարքներում կիրառվում են ինչպես հաճախորդի, այնպես էլ բանկային չեկեր:

Հաճախորդի չեկերը այն չեկերն են, որոնք դուրս են գրվում ֆիզիկական և իրավաբանական անձանց կողմից իրենց սպասարկող բանկի վրա:

Բանկային չեկերը այն չեկերն են, որոնք դուրս են գրում բանկերը իրենց թղթակից բանկերի կամ բաժանմունքների վրա:

Հաճախորդների չեկերով վճարումների գործնական կիրառումը, ինչպես ցույց են տալիս «Արդշինինվեստբանկի» գործառնությունները, իրականացվում է գնորդի կողմից ապրանքների դիմաց չեկ դուրս գրելով, որը տրամադրում է վաճառողին: Վաճառողը չեկը ներկայացնում է իրեն սպասարկող բանկ, որն էլ թղթակցային բանկերի միջոցով այն ներկայացնում է գնորդի բանկ՝ վճարման: Գնորդի հաշվին միջոցների առկայության դեպքում բանկը չեկի դիմաց իրականացնում է վճարում: Բանկը պատասխանատու չէ ներկայացված չեկի վճարման համար, եթե հաճախորդի հաշվին չկան բավարար միջոցներ և օվերդրաֆտ չի նախատեսված: Չեկերի վճարման հուսալիությունը բարձրացնելու նպատակով միջազգային առևտրում կիրառվում են բանկի կողմից երաշխավորված չեկեր: Չեկերի երաշխավորումը կատարվում է 2 եղանակով. ա) չեկի վրա բանկի կողմից համապատասխան գրառմամբ, որ բանկային իրավունքում ճանաչվում է որպես ակցեպտավորված չեկ, և բ) չեկին կցված երաշխիքային քարտի կիրառմամբ, որի առկայության դեպքում միայն չեկը կարող է ընդունվել որպես վճարման միջոց:

Բանկային չեկերի կիրառման դեպքում այն բանկը, որը դուրս է գրել չեկը, պատասխանատու է այդ չեկի վճարման համար: Քանի որ այս չեկերը ավելի ապահով են վճարման հուսալիության տեսակետից, դրանք ավելի լայն կիրառություն ունեն, քան հաճախորդի չեկերը: Բանկային չեկերով վճարումներն սկսվում են այն պահից, երբ գնորդը իրեն սպասարկող բանկին վաճառողի անունով հանձնարարություն է ներկայացնում՝ որոշակի գումարի չեկ դուրս գրելու վերաբերյալ: Դուրս գրվելիք չեկին համապատասխանող գումարը դեբետագրվում է հաճախորդի հաշվից, որից հետո բանկը դուրս է գրում բանկային չեկ վաճառողի թղթակից բանկի անունով: Չեկը ուղարկվում է վաճառողին, որը ներկայացնում է այն իրեն սպասարկող բանկին, վերջինս էլ թղթակցային բանկերի միջոցով ներկայացնում է վճարման այն բանկին, որի վրա դուրս է գրված:

Վաճառողի համար չեկով վճարումը պարունակում է չվճարման ռիսկ, քանի որ չեկի դուրս գրումը դեռ վճարում չէ, և վաճառողը չեկի վճարունակության մեջ կարող է համոզվել միայն վճարող բանկից չեկի դիմաց վճարումը ստանալուց հետո: Այդ պատճառով առևտրային գործարքներում ոչ բանկային չեկերը կիրառվում են միայն այն դեպքում, երբ կողմերը վստահում են միմյանց, հակառակ դեպքում կարող են կիրառվել առաջնակարգ բանկերի կողմից երաշխավորված ոչ բանկային չեկեր կամ առաջնակարգ բանկերի վրա դուրս գրված բանկային չեկեր:

Այսօր ՀՀ տարածքում իրականացվող ներքին առևտրային գործարքներում մասամբ կիրառվում են բանկի կողմից ակցեպտավորված և լիմիտավորված չեկեր: Չեկային օրենսդրության բացակայությունը ՀՀ- ում խոչընդոտում է չեկերի լայն կիրառմանը: Չեկերով կատարվող անկանխիկ հաշվարկները կարգավորող օրենսդրությունը բավարար մշակված չէ, զգացվում է իրավական ակտերի պահանջ, որոնց առկայությունը կնպաստեր չեկերով կատարվող անկանխիկ վճարման ձևի ավելի լայն կիրառմանը: ՀՀ առևտրային բանկերի կողմից չեկերով կատարվող հաշվարկների գործնական ուսումնասիրությունները մեզ հնարավորություն են ընձեռնում բանկային օրենսդրության կատարելագործման նպատակով անել մի շարք առաջարկություններ, որոնք կախված գնորդի և վաճառողին սպասարկող բանկից, նրա իրավունքների պաշտպանությունից, հնարավորություն կստեղծեն բարձրացնել անկանխիկ հաշվարկների արդյունավետությունը: Այսինքն եթե գնորդը և վաճառողը սպասարկվում են նույն բանկում, ապա

նպատակահարմար է օգտագործել ոչ բանկային չեկեր, որոնք կարող են կիրառվել, երբ ա) գնորդը առաքված ապրանքի դիմաց վաճառողի անունով դուրս է գրում չեկ, և վաճառողը այն ներկայացնում է բանկ, բ) բանկը, գնորդի հաշվին, համապատասխան միջոցների առկայության դեպքում, ոչ ուշ, քան հաջորդ բանկային օրվա ընթացքում հաշվեգրում է չեկի գումարը վաճառողի հաշվին:

Բանկի կողմից գործելակերպի այսպիսի կանոնների սահմանումը վաճառողի համար առավելություն է: Նա չեկը ստանում է ապրանքի վաճառքի պահին, և չեկի դիմաց գումարը վճարվում է բանկ ներկայացնելիս: Այս կարգի համար որպես տեխնոլոգիական թերություն պետք է համարել այն, որ այդ չեկերի վճարումը երաշխավորված չէ բանկի կողմից և կախված է գնորդի հաշվին բավարար միջոցների առկայությունից: Գնորդի համար առավելությունն այն է, որ վճարում է ոչ թե կանխավճարով, այլ առաքված ապրանքի դիմաց: Այս տեսակի վճարումը կարող է կիրառվել բոլոր այն դեպքերում, երբ վաճառողը վստահում է գնորդին:

Ինչ վերաբերում է բանկի կողմից ակցեպտավորված չեկերին, ապա այս չեկերը ավելի հուսալի են վաճառողի համար, քանի որ վճարումը երաշխավորված է բանկի կողմից: Եթե գնորդը և վաճառողը սպասարկվում են նույն բանկի տարբեր մասնաճյուղերում, ապա նպատակահարմար է օգտագործել ոչ բանկային, բայց բանկի մասնաճյուղի կողմից ակցեպտավորված չեկեր, որոնք կարելի է կիրառել հետևյալ կերպ: Գնորդը առաքված ապրանքի դիմաց դուրս է գրում վաճառողի անունով ակցեպտավորված չեկ: Վաճառողը չեկը ներկայացնում է իրեն սպասարկող բանկի մասնաճյուղին, որը վճարում է ներկայացված չեկի դիմաց և չեկը ուղարկում է գլխամաս, որտեղ կրեդիտագրվում է չեկը ներկայացնող մասնաճյուղի հաշիվը՝ դեբետագրելով վճարող մասնաճյուղի հաշիվը և միաժամանակ ուղարկելով չեկը վճարող մասնաճյուղին:

Առաջարկվող կանոնները վաճառողի համար առավել են նրանով, որ ապրանքի վաճառքի պահին ստանում է բանկի կողմից



երաշխավորված չեկ, և չեկի դիմաց գումարը վճարվում է բանկ ներկայանալիս: Գնորդի իրավունքներն պաշտպանված են այնքանով, որ վճարում է ոչ թե կանխավճարով, այլ առաքված ապրանքի դիմաց:

Բանկային գործառնությունների այլ կանոններ ենք առաջարկում չեկերով կատարվող հաշվարկների համար, հատկապես եթե գնորդը և վաճառողը սպասարկվում են տարբեր բանկերում: Այս դեպքում նպատակահարմար ենք համարում հաշվարկները կատարել ոչ բանկային, բայց բանկի կողմից ակցեպտավորված չեկերով: Առաջարկվող կանոնների էությունն այն է, որ գնորդը առաքված ապրանքի դիմաց վաճառողի անունով դուրս է գրում ակցեպտավորված չեկ, որը վաճառողը ներկայացնում է իրեն սպասարկող մասնաճյուղին, որն էլ չեկը ուղարկում է գլխամաս: Գլխամասը ներկայացնում է չեկը անմիջապես վճարող բանկին: Առևտրային բանկը կրեդիտագրում է չեկը ներկայացնող բանկի հաշիվը, դեբետագրելով վճարող բանկի հաշիվը, և չեկը ուղարկում վճարող բանկին: Եթե չեկը անմիջապես ներկայացվել է վճարող բանկին, որը և, փոխադարձ թղթակցային հաշիվների առկայության դեպքում, վճարում է այդ հաշիվների միջոցով:

Կարելի է նկատել, որ առաջարկվող կանոնները նույնպես ունեն առավելություններ ու թերություններ: Այսպես, վաճառողի համար առավելությունն այն է, որ բանկի կողմից ստանում է երաշխավորված չեկ ապրանքի վաճառքի պահին և չեկի դիմաց գումարը վճարվում է բանկ ներկայացնելիս: Թերությունն այն է, որ այդ չեկերի վճարումը կկատարվի որոշակի ժամանակահատվածի ընթացքում՝ կախված գնորդի և վաճառողի բանկերի գտնվելու վայրից: Գնորդի համար առավելությունն այն է, որ վճարում է ոչ թե կանխավճարով, այլ առաքված ապրանքի դիմաց:

## §6. Մուրհակով կատարվող բանկային հաշվարկների իրավական կարգավորումը

Բանկային անկանխիկ հաշվարկների ձևերի շարքում իրավական կարգավորման առանձնահատկություններով կարելի է առանձնացնել մուրհակը, որը առանց որևէ պայմանի դրամական պարտավորություն պարունակող փաստաթուղթ է: Մուրհակը պարտքի, պարտավորության տարատեսակ է՝ սահմանված ձևով կազմված, որը անվիճելի իրավունք է տալիս պահանջելու մուրհակում նշված գումարի վճարումը մուրհակի մարման ժամկետի լրանալու պես: Մուրհակը, որպես հաշվարկի ձև, վաղուց հայտնի է: Տնտեսական գործարքներում օգտագործվում է մի քանի դար շարունակ: Գոյություն ունի մուրհակով կարգավորվող հաշվարկների ինչպես ներպետական, այնպես էլ միջազգային օրենսդրություն:

Մուրհակի շրջանառությունը կարգավորող առաջին միջազգային իրավական ակտը ընդունվել է 1930թ. Ժնևյան կոնվենցիայում, որը վերաբերում էր «Փոխանցվող և հասարակ մուրհակներով» կատարվող հաշվարկներին[1]: Կոնվենցիան ստորագրած երկրները պարտավորվում էին իրենց ազգային մուրհակի օրենքներում պահպանել «Մուրհակի համընդհանուր օրենքի»՝ կոնվենցիայի դրույթները:

Մուրհակը առևտրային վարկի ամենահարմար և տարածված ձևերից մեկն է, որ տալիս են տնտեսավարող սուբյեկտները առանց բանկի միջամտության: Այս պարագայում մուրհակը ոչ միայն վարկավորման, այլ նաև վճարման միջոց է, ինչը նվազեցնում է կանխիկ փողի պահանջարկը: Քանի որ մուրհակը շրջանառու միջոց է, այսինքն կարող է փոխանցվել մեկ անձից մյուսին, ուրեմն կարող է որպես վճարման միջոց օգտագործվել որոշ գործարքներում, մարել որոշ պարտավորություններ: Որպես արժեթուղթ, մուրհակը կարող է հանդես գալ առ ու վաճառքի, գրավի և այլ արժեթղթային գործարքներում:

[1] Տե՛ս մանրամասն Í.Þ. Åðïèëåâà, Ìåæäóíàðîäíîå áàíêîâñêîå ïðàâî, Ì., “Ôîðóì” – “Öûôðà-Ì”, 1998, էջ 117:



Մուրհակներով կատարվող բանկային հաշվարկների գործնական ուսումնասիրությունների հիման վրա, ըստ իրավական հետևանքների տարբեր չափանիշների և վճարման ժամկետների մուրհակները կարելի է դասակարգել՝

ա) Ըստ ներկայացման, երբ վճարը պետք է իրականացվի մուրհակը ներկայացնելու պես: Նման դեպքերում բանկը պետք է պահանջի, որ մուրհակում նշվի՝ «Վճարել ըստ ներկայացման» արտահայտությունը: Կարող են սահմանվել ներկայացման նվազագույն և առավելագույն ժամկետները, վերջինիս բացակայության դեպքում մուրհակը վճարման կարող է ներկայացվել մեկ տարվա ընթացքում՝ դուրս գրման օրվանից սկսած:

բ) Ներկայացման օրվանից որոշ ժամանակ հետո. վճարը պետք է իրականացվի մուրհակը ներկայացնելու համար նշված ժամկետից հետո, ինչը արտահայտվում է «Վճարել ներկայացնելուց /այսքան/ ժամանակ հետո» արտահայտությամբ:

գ) Դուրս գրման օրվանից որոշ ժամանակ հետո. վճարը պետք է իրականացվի մուրհակի դուրս գրումից որոշ ժամանակ հետո, ինչը սարտահայտվում է «Վճարել մուրհակի դուրս գրումից /այսքան/ օր հետո» արտահայտությամբ:

դ) Որոշակի օրը. այս դեպքում մուրհակի վրա նշվում է վճարման որոշակի օրը:

Ըստ բանկային հաշվի մուրհակային ձևի մեր հանրապետությունում կիրառվում են հասարակ և փոխանցելի մուրհակներ:

**Հասարակ մուրհակը** պարտապանի ստորագրությամբ գրավոր պարտավորությունն է նշված ժամկետում պարտատիրոջը վճարել որոշակի գումար: Հասարակ մուրհակը կարող է փոխանցվել երրորդ անձին փոխանցագրի (ինդոսամենտի) միջոցով: Վաճառողը առաքում է ապրանքը, իսկ գնորդը դուրս է գրում հասարակ մուրհակ և փոխանցում վաճառողին: Մարման ժամկետը լրանալիս վաճառողը իր բանկի միջոցով այն ներկայացնում է գնորդին վճարման:

**Փոխանցելի մուրհակը** պարտատիրոջ գրավոր անվերապահ հրամանն է պարտապանին՝ սահմանված ժամկետում վճարել մուրհակում նշված գումարը այն անձին, որի անունով դուրս է գրված մուրհակը (ռեմիտենտ): Առանց պարտապանի ստորագրության մուրհակը հանդիսանում է պարտատիրոջ հանձնարարականը պարտապանին և կոչվում է տրատա: Միայն ստորագրելով մուրհակը՝ տրասատը իր վրա է վերցնում պարտավորություն՝ ժամանակին վճարելու մուրհակը: Փոխանցելի մուրհակում ի սկզբանե մասնակցում են երեք կողմեր՝ մուրհակ դուրս գրողը, վճարողը և այն անձը, ում օգտին դուրս է գրված մուրհակը: Վերջինս կարող է մուրհակը մեկ այլ անձի փոխանցել փոխանցագրով[1]:

Մուրհակները լայնորեն կիրառվում են առևտրային գործարքներում ինչպես ինքնուրույն վճարման միջոց, այնպես էլ որպես ինկասո և ակրեդիտիվ վճարման ձևեր: Դա պայմանավորված է նրանով, որ մուրհակատիրոջ իրավունքները պաշտպանված են մուրհակների օրենսդրությամբ և շատ երկրներում գործում են մուրհակային դատարաններ, որոնցում արագացված և հեշտացված է մուրհակների հետ կապված բողոքարկման ընթացակարգը: ՀՀ առևտրային բանկերի կողմից կիրառվող հաշվարկների գործնական ուսումնասիրությունները վկայում են, որ առավել ապահով են համարվում հայտնի ֆիրմաների, նաև գործարար համբավ վայելող բանկերի կողմից ակցեպտավորված մուրհակները:

Գնորդի համար մուրհակների կիրառման առավելությունն այն է, որ գնումը իրականացվում է հետաձգված վճարմամբ, իսկ վաճառողի համար՝ վաճառողը կարող է մուրհակը հաշվառել բանկում:

[1] Տե՛ս մանրամասն Í.Ä.Ýðíàøâèëè, Áàíêîâñêîå ïðàâî, նշ. աշխ. էջ 390:



## §7. Ինկասո հաշվարկի բանկային իրավական կարգավորումը

Հանրապետության բանկային մարմինների անկանխիկ հաշվարկների ամենատարածված ձևերից մեկը ինկասո հաշվարկն է, որի իրավական կարգավորումը սահմանված է ՀՀ քաղաքացիական օրենսգրքի 943-րդ հոդվածով:

Ինկասոն հանձնարարում է իր բանկին անմիջականորեն կամ այլ բանկի միջոցով ստանալ վաճառողից որոշակի գումար կամ հաստատում, որ գումարը կվճարվի որոշակի ժամկետի ընթացքում[1]: Ինկասոն լայն տարածում է գտել գործնական առևտրում: Այն օգտագործվում է ինչպես կանխիկ, այնպես էլ անկանխիկ եղանակով վճարումներ անող (առևտրային վարկի պայմաններով) հաշվարկներում: Ինկասոյի գործարքները այսօր ներպետական և միջազգային բանկերի հաշվարկներում կանոնակարգվում են «Ինկասոյի ունիֆիկացված կանոններով», որոնք 1995թ. սովորութային իրավունքի ոգուն համապատասխան մշակվել և հաստատվել են Փարիզի Միջազգային առևտրային պալատի կողմից[2]: Կանոններին միացել են աշխարհի բազմաթիվ երկրների բանկեր, որոնց համար, ինչպես նաև նրանց հաճախորդների համար կանոնները պարտադիր են ինկասոյի ձևով հաշվարկների իրականացման ժամանակ: Ունիֆիկացված կանոնները հնարավոր է շրջանցել ինկասոյի գործառնությունների մեջ ընդգրկված բոլոր շահագրգիռ կողմերի փոխադարձ համաձայնության դեպքում:

Ունիֆիկացված կանոնները սահմանում են ինկասոյի տեսակները, գործառնությունների իրականացման հաջորդականությունը և ձևերը, կողմերի պարտականությունները և պատասխանատվությունը: Փաստաթղթերը, որոնք իրավական հիմք են հանդի-

[1] Տե՛ս մանրամասն Â.Ï.Áóéíîâ, Ä.Ã.Àëåêñåååâà, Áàíêîâñêèå ðàñ÷åòû: àíàëèç íîðìàòèâíîãî îáåñïå÷åíèÿ, Ì., “Ýêçàìåí”, 2002, էջ 55:
[2] Տե՛ս մանրամասն Óíèôèöèðîâàííûå ïðàâèëà Ìåæäóíàðîäíîé Òîðãîâîé Ïàëàòû, ïóáëèêàöèÿ ÌÒÏ íî. 522, Ō., 1996:

սանում ինկասո հաշվարկով գործառնություններ կատարելու համար, կարելի է ստորաբաժանել երկու խմբի՝

ա) ֆինանսական փաստաթղթեր, որոնց թվին են դասվում փոխանցելի և հասարակ մուրհակները, չեկերը, վճարային ստացականները և նման այլ փաստաթղթեր, որոնք օգտագործվում են վճարը ստանալու համար և բ) առևտրային փաստաթղթեր, որոնց մեջ մտնում են առևտրային հաշիվները, տրանսպորտային փաստաթղթերը, սերտիֆիկատները, ապահովագրերը և այլն:

Բանկային անկանխիկ ինկասո հաշվարկի գործնական կիրառման հիման վրա, կարծում ենք, կարելի է առանձնացնել զուտ և փաստաթղթային ինկասո հաշվարկի ձևեր:

Զուտ ինկասո կոչվող հաշվարկը ընդգրկում է միայն ֆինանսական փաստաթղթեր, հասարակ և փոխանցելի մուրհակներ, չեկեր: Ինկասո հաշվարկի այս տեսակը արտահայտվում է նրանով, որ վաճառողը, շրջանցելով բանկը, ուղարկում է ապրանքը և առևտրային փաստաթղթերը անմիջապես գնորդին, և գնորդը, ստանալով դրանք, դառնում է ապրանքի սեփականատերը մինչև վճարի կամ ակցեպտի իրականացումը: Ռեմիտենտ բանկը ինկասո իրականացնող բանկին ներկայացնում է միայն վճարման չեկը կամ ակցեպտի վճարման փոխմուրհակը: Վճարման այս ձևը չի երաշխավորում մատակարարին գումարի ստացում, ուստի այս ձևը ցանկալի է կիրառել միայն այն դեպքերում, երբ մատակարարը և գնորդը ճանաչում ու վստահում են իրար:

Գործնականում փաստաթղթային ինկասոն ընդգրկում է ինչպես միայն առևտրային (հաշիվ-ապրանքագրեր, տրանսպորտային փաստաթղթեր, սերտիֆիկատներ և այլն), այնպես էլ առևտրային ու ֆինանսական փաստաթղթեր: Կողմերը (գնորդը և վաճառողը) կնքում են պայմանագիր, որում նշում են, որ ապրանքի դիմաց վճարումները պետք է կատարվեն փաստաթղթային ինկասոյի միջոցով: Պայմանագրի էական կետերն են՝

ա/ բանկերի անվանումը, որոնց միջոցով կատարվում են հաշվարկները,
բ/ վճարման եղանակը,



գ/ բանկային գանձումների կարգը,
դ/ վճարման ժամկետները և պայմանները,
ե/ փաստաթղթերի ցուցակը, որոնց դիմաց կատարվում է վճարումը:

Վաճառողը իրականացնում է ապրանքի առաքումը ըստ պայմանագրում նշված պայմանների:

Բեռնափոխադրողից ստանալով տրանսպորտային փաստաթղթերը վաճառողը ինկասոյի հանձնարարագրին կից փաստաթղթերի ողջ փաթեթը (տրանսպորտային փաստաթղթեր, առևտրային հաշիվներ, սերտիֆիկատներ, ապահովագրեր, գնորդի անունով դուրս գրված փոխանցելի մուրհակներ) ներկայացնում է իրեն սպասարկող բանկին: Վաճառողի բանկը, թեթևակիորեն ստուգելով ներկայացված և ինկասոյի հանձնարարագրում նշված փաստաթղթերը ինկասոյի հանձնարարագրի հետ միասին դրանք ուղարկում է գնորդին սպասարկող բանկին կամ ինկասո իրականացնող բանկին: Ինկասո իրականացնող բանկը հանձնում է փաստաթղթերը գնորդին ըստ ինկասոյի հանձնարարագրում նշված հրահանգների: Ինկասո իրականացնող բանկը կա՛մ անմիջապես է ներկայացնում ինկասոյի հանձնարարագիրը գնորդին, կա՛մ կատարում է դա այլ բանկի միջոցով: Փաստաթղթերը գնորդին հանձնելու վերաբերյալ ինկասոյի հանձնարարագրում կարող են լինել 3 տիպի հրահանգներ.

ա/ փաստաթղթերի հանձնում վճարի դիմաց,
բ/ փաստաթղթերի հանձնում փոխմուրհակի ակցեպտի դիմաց,
գ/ փաստաթղթերի հանձնում առանց որևէ պայմանի:

Այն դեպքում, երբ ինկասոյի հանձնարարագրում նշված է «Փաստաթղթերի հանձնում վճարի դիմաց», փաստաթղթերը տրվում են գնորդին միայն վճարի դիմաց: Իսկ այն դեպքում, երբ ինկասոյի հանձնարարագրում նշված է «Փաստաթղթերի հանձնում փոխմուրհակի ակցեպտի դիմաց», փաստաթղթերը տրվում են գնորդին՝ վերջինիս կողմից փոխմուրհակի ակցեպտավորման դիմաց: Ակցեպտավորված մուրհակը, ինկասոյի հանձնարարա-

գրի հրահանգներին համաձայն, կա՛մ պահվում է ինկասո իրականացնող բանկում, կա՛մ ուղարկվում է ռեմիտենտ բանկին: Վճարման ժամկետը լրանալիս փոխմուրհակը ներկայացվում է գնորդին՝ վճարման: Հաճախ վաճառողը վստահ լինելու համար, որ ժամկետը լրանալիս մուրհակը կվճարվի, կարող է պահանջել գնորդի բանկային երաշխիքը մուրհակի վրա:

Այն դեպքում, երբ փաստաթղթերը տրվում են կարճաժամկետ առևտրային վարկի պայմանով (սովորաբար մինչև 3 ամիս ժամկետով), բայց ապահովված չեն փոխմուրհակով, բանկը հանձնում է փաստաթղթերը գնորդին առանց որևէ պայմանի: Այս պարագայում, որպես վճարման երաշխիք, վաճառողը ձգտում է ստանալ գնորդից բանկային երաշխիք կամ որոշակի ժամկետում վճարը իրականացնելու գրավոր պարտավորություն: Ինկասո իրականացնող բանկը գնորդից ստանում է վճարման հանձնարարագիրը (ակցեպտավորված մուրհակը): Վճարը ստանալուց հետո ինկասո իրականացնող բանկը հասույթը փոխանցում է ռեմիտենտ բանկին (ակցեպտավորված մուրհակը պահում է իր մոտ և վճարում ժամկետը լրանալու պես կամ ակցեպտավորված մուրհակը ուղարկում է ռեմիտենտ բանկին)[1]: Ռեմիտենտ բանկը մուտքագրում է հասույթը վաճառողի հաշվին, ակցեպտավորված մուրհակը պահում է իր մոտ և վճարման ժամկետը լրանալու պես ներկայացնում է գնորդի բանկին՝ վճարման:

Առևտրային բանկերի անկանխիկ հաշվարկների գործառույթների իրավական հիմքերի ուսումնասիրությունը վկայում է, որ փաստաթղթային ինկասոն ունի թերություններ, որ բանկերը գործում են որպես ինկասո իրականացնող գործակալներ և մատուցում են զուտ «փոստային» ծառայություններ՝ պարտավորվելով միայն ստուգել ներկայացված փաստաթղթերի արտաքին համապատասխանությունը ինկասո հանձնարարագրում նշվածներին: Ինկասո իրականացնող բանկը պարտավորվում է փաստաթղթերը գնորդին հանձնել միայն ինկասոյի հանձնարարագրում

[1] Տե՛ս մանրամասն Í.Ä.Ýðíàøâèëè, Áàíêîâñêîå ïðàâî, նշ. աշխ. էջ 314:



նշված պայմանների համաձայն և չի կրում ոչ մի պատասխանատվություն գնորդի կողմից վճարումը իրականացնելու համար: Ռիսկերը, որ պարունակում են վճարման այս ձևը, ավելի քիչ են, քան «բաց հաշվով» վճարումների դեպքում:

Հաշվարկի այս տարբերակում վաճառողի համար առավելությունն այն է, որ մինչև վճար կատարելը նա ապրանքի սեփականատերն է: Վճարման այս ձևը ավելի էժան է, քան ակրեդիտիվը:

Տեխնիկական առումով բանկերը իրենց բաժանմունքներով և թղթակցային ցանցով նվազեցնում են հաշվարկների հետ կապված խնդիրները, հնարավորություն են ընձեռում ակցեպտավորված մուրհակները հաշվառել բանկում, կամ գրավ դնել: Հաշվարկի այս տարբերակում վաճառողի համար որպես թերություն կարելի է արձանագրել այն, որ գնորդը կարող է անվճարունակ գտնվել կամ հրաժարվել վճարելուց, որը վաճառողից կպահանջի հավելյալ ծախսեր կատարել ապրանքը հետ վերադարձնելու կամ այլ գնորդ գտնելու համար:

Փաստաթղթային ինկասո հաշվարկը մի շարք օբյեկտիվ առավելություններ է ապահովում գնորդի համար: Գնորդը, որպես կանոն, ազատվում է ակրեդիտիվի բացման հետ կապված դժվարություններից և ծախսերից, իսկ վճարումը նա կարող է կատարել, երբ բեռը տեղ հասնի կամ երբ ըստ մուրհակի կգա վճարման ժամկետը:

Բանկային անկանխիկ հաշվարկները կարգավորող օրենսդրության կիրառման փորձը ցույց է տալիս, որ ՀՀ տարածքում իրականացվող առևտրային գործարքներում փաստաթղթային ինկասոն կարող է օգտագործվել միայն այն դեպքում, երբ վաճառողը և գնորդը մշտական գործընկերներ են և վստահում են միմյանց, քանի որ վճարումը երաշխավորված չէ բանկի կողմից, և վաճառողի համար առկա է գնորդի կողմից չվճարման ռիսկը կամ առաքված ապրանքից հրաժարվելու ռիսկը:

## §8. Ակրեդիտիվ հաշվարկի իրավական կարգավորումը

Անկանխիկ բանկային հաշվարկի ձևերից է ակրեդիտիվ հաշվարկը, որի իրավական ռեժիմը սահմանված է ՀՀ քաղաքացիական օրենսգրքի 935-941-րդ հոդվածներով:

Ակրեդիտիվը միակողմանի պարտավորություն է, որն իր վրա է վերցնում բանկը գնորդի հանձնարարությամբ հօգուտ վաճառողի (բենեֆիցիարի): Վճարումը իրականացվում է միայն բենեֆիցիարի կողմից իր բանկի ակրեդիտիվով նախատեսված առևտրային ու ֆինանսական փաստաթղթերի ներկայացման դեպքում[1]: Ակրեդիտիվ հաշվարկը լայն տարածում ունի ինչպես միջազգային առևտրում, այնպես էլ ներպետական բանկային համակարգերում: Ակրեդիտիվը օգտագործվում է կանխիկ եղանակով և անկանխիկ եղանակով (առևտրային վարկի պայմաններով) վճարումների հաշվարկներում: Ակրեդիտիվային գործարքները կանոնակարգվում են «Փաստաթղթային ակրեդիտիվների միասնական կանոններ և կարգեր» կանոնադրությամբ, որոնք մշակվել և հաստատվել են 1993թ. Փարիզի Միջազգային առևտրային պալատի կողմից: Կանոններին հավանություն են տվել աշխարհի բազմաթիվ երկրների բանկեր, որոնց համար, ինչպես նաև նրանց հաճախորդների համար կանոնները պարտադիր են ակրեդիտիվով հաշվարկներ իրականացնելու ժամանակ: Միասնական կանոնները հնարավոր է շրջանցել ակրեդիտիվային գործառնությունների մեջ ընդգրկված բոլոր շահագրգիռ կողմերի փոխադարձ համաձայնության դեպքում[2]:

Հանրապետության տարածքում, նաև միջազգային առևտրատնտեսական գործառնություններում, փաստաթղթային ակրեդիտիվով իրականացվող հաշվարկները կատարվում են հետևյալ հաջորդականությամբ:

[1] Տե՛ս մանրամասն Ë.Ã.Åôèìîâà, Áàíêîâñêîå ïðàâî, էջ 142; Í.Ä.Ýðíàøâèëè, Áàíêîâñêîå ïðàâî, նշ. աշխ. էջ 301; Â.Ï.Áóÿíîâ, Ä.Ã.Àëåêñååâà, Áàíêîâñêèå ðàñ÷åòû, նշ. աշխ., էջ 105: Գ.Ա.Սուքիասյան, Ֆինանսական իրավունք, Ե., «Տնտեսագետ», 2001թ. էջ 340:

[2] Տե՛ս Óíèôèöèðîâàííûå ïðàâà è îáû÷àè ÌÒÏ äëÿ äîêóìåíòàðíûõ àêðåäèòèâîâ â ðåäàêöèè 1993ã. (Ïóáëèêàöèÿ ÌÒÏ íî. 500), Í.Þ. Åðïûëåâà, Ìåæäóíàðîäíîå áàíêîâñêîå ïðàâî, նշ. աշխ., էջ 203-233:



Կողմերը՝ վաճառողը և գնորդը, պայմանագիր են կնքում, որտեղ նշվում է, որ ապրանքի դիմաց վճարումները պետք է կատարվեն փաստաթղթային ակրեդիդտիվով: Ակրեդիտիվը բացվում է գնորդի հանձնարարությամբ՝ դիմումի հիման վրա, որտեղ փաստորեն կրկնվում են պայմանագրի բոլոր այն պայմանները, որոնք վերաբերում են վճարումների կարգին:

Պայմանագրում հիմնականում նշվում են՝

ա/ բանկի անվանումը, որում բացվում է ակրեդիտիվը,
բ/ ակրեդիտիվի տեսակը,
գ/ ծանուցող և կատարող բանկի անվանումը,
դ/ բանկային գանձումների կարգը,
ե/ վճարման պայմանները,
զ/ փաստաթղթերի ցուցակը, որոնց դիմաց կատարվում է վճարումը,
է/ ակրեդիտիվի գործողության, առաքման ժամկետները և այլն:

Պայմանագիրը կնքելուց հետո վաճառողը ապրանքը նախապատրաստում է առաքման, որի մասին տեղյակ է պահում գնորդին:

Ծանուցումը ստանալուց հետո գնորդը իր բանկին դիմում-հանձնարարական է ուղարկում ակրեդիտիվի բացման համար, որտեղ նշվում են բոլոր անհրաժեշտ պայմանները: Գնորդը, որ հանձնարարական է տալիս ակրեդիտիվի բացման համար, կոչվում է **հրամանգրող:** Ակրեդիտիվ բացող բանկը, որ կոչվում է նաև **էմիտենտ բանկ**, գործում է հրամանագրողի հրահանգների հիման վրա: Ակրեդիդիտիվը բացելուց հետո էմիտենտ բանկը նշում է, թե ինչ կարգով պետք է կատարվի միջոցների հաշվեգրումը: Այդ փաստաթուղթը ուղարկվում է վաճառողին, որը կոչվում է **բենեֆիցիար**, ում օգտին այն բացվել է: Էմիտենտ բանկը ակրեդիտիվն ուղարկում է բենեֆիցիարին, որպես կանոն, վերջինիս սպասարկող բանկի միջոցով, որի խնդիրն է ակրեդիտիվը ծանուցել բենեֆիցիարին: Այսպիսի բանկը գործնականում ընդունված է համարել ծանուցող բանկ: Ակրեդիտիվը ստանալուց հետո ծանուցողը բանկը ստուգում

է ակրեդիտիվի ճշտությունը և հանձնում բենեֆիցիարին: Շատ դեպքերում ծանուցող բանկը էմիտենտ բանկի կողմից նշանակվում է որպես ակրեդիտիվը կատարող բանկ, այսինքն՝ լիազորվում է կատարել վճարում:

Ստանալով ակրեդիտիվը՝ բենեֆիցիարը այն համեմատում է պայմանագրի պայմանների հետ: Եթե բենեֆիցիարը համաձայն է իր օգտին բացված ակրեդիտիվի պայմանների հետ, ապա նա սահմանված ժամկետում իրականացնում է ապրանքի առաքումը և բեռնափոխադրողից ստանալով տրանսպորտային փաստաթղթերը՝ ակրեդիտիվով պահանջվող այլ փաստաթղթերի (հաշիվներ, բնորոշումներ, սերտիֆիկատներ, անհրաժեշտության դեպքում՝ ապահովագրական փաստաթղթեր, փոխանցելի մուրհակներ) հետ միասին ներկայացնում է իր բանկին: Տարաձայնությունների հայտնաբերման դեպքում բենեֆիցիարը կարող է տեղեկացնել իր բանկին ակրեդիտիվի պայմանական ընդունման կամ չընդունման մասին և հրամանագրողից պահանջել անհապաղ փոփոխություններ մտցնել:

Վաճառողի բանկը ստուգում է բոլոր փաստաթղթերը, ուղարկում է էմիտենտ բանկին՝ վճարման կամ ակցեպտավորման՝ կից նամակում ցույց տալով, թե ինչ կարգով պետք է կատարվի հասույթի հաշվեգրումը: Ստանալով փաստաթղթերը՝ էմիտենտ բանկը ստուգում է դրանք, որից հետո վճարման ենթակա գումարը փոխանցում է վաճառողի բանկին, դեբետագրում գնորդի հաշիվը և փաստաթղթերը ուղարկում գնորդին, որը տնօրինում է ապրանքը: Բենեֆիցիարի բանկը հասույթը հաշվեգրում է բենեֆիցիարի հաշվին: Էմիտենտ բանկը կարող է անձամբ կատարել ակրեդիտիվը, այսինքն՝ կատարել վճարումը, ակցեպտավորել մուրհակը, կամ լիազորել ցանկացած այլ բանկի կատարելու ակրեդիտիվը[1]:

Փաստաթղթերի ստուգման ժամանակ, երբ բանկը պարզում է, որ դրանք չեն համապատասխանում ակրեդիտիվում նշված պահանջներին կամ հակասում են ակրեդիտիվի պայմաններին, հար-

[1] Տե՛ս Øåðñòîáèòîâ À., Øåðñòîáèòîâà Î., Ïðàâîâîå ðåãóëèðîâàíèå ìåæáàíêîâñêèõ ðàñ÷åòîâ, “Çàêîí”, Ì., 1995, էջ 11:



ցում է կատարում գնորդին այդ փաստաթղթերի ընդունման վերաբերյալ: Բանկի հետագա գործողությունները պայմանավորված են գնորդի համաձայնության կամ մերժման հետ: Բանկերի գործնական աշխատանքը ցույց է տալիս, որ այն դեպքում, երբ էմիտենտ բանկը ընդունում է ակրեդիտիվի պայմաններին չհամապատասխանող փաստաթղթեր, նա պատասխանատվություն է կրում գնորդի առջև: Եթե ակրեդիտիվով նախատեսվում է գնորդին կարճաժամկետ վարկի տրամադրում, ապա փաստաթղթերը էմիտենտ բանկի կողմից տրվում են նրան՝ առանց նրա հաշվից վճարման գումար հանելու: Վաճառողի համար դա չի նշանակում վճարման երաշխիքի անտեսում: Ակրեդիտիվը բանկի դրամական պարտավորությունն է, և հենց ինքն է նշանակում մատակարարվող ապրանքի համար վճարման ապահովում: Այդ պատճառով էլ փաստաթղթերի գումարը, որ ներկայացվում է ակրեդիտիվում հետաձգված վճարի տեսքով, բանկը վճարում է ժամկետը լրանալու պես:

Համաձայն «Փաստաթղթային ակրեդիտիվների միասնական կանոններ և կարգեր» իրավական ակտի, տարբերում են ակրեդիտիվի կատարման հետևյալ եղանակները՝

ա) Ներկայացմամբ վճարվող ակրեդիտիվներ,

բ) Հետաձգված վճարումով ակրեդիտիվներ,

գ) Ակցեպտի միջոցով վճարվող ակրեդիտիվներ,

դ) Նեգոցիացիայի միջոցով վճարվող ակրեդիտիվներ:

Ներկայացմամբ վճարվող ակրեդիտիվների դեպքում բանկը պարտավորվում է ակրեդիտիվի գումարը վճարել բենեֆիցիարին անմիջապես՝ վերջինիս կողմից ներկայացված փաստաթղթերի դիմաց, եթե դրանցում պահպանվել են ակրեդիտիվում նշված պայմանները և ժամկետները: Ներկայացմամբ վճարվող ակրեդիտիվները փաստաթղթային անկանխիկ հաշվարկներում համարվում են վճարման առավել արագ և հուսալի միջոց:

Հետաձգված վճարումով ակրեդիտիվների վճարումը հետաձգվում է մինչև սահմանված ժամկետը՝ առանց մուրհակի ներկա-

յացման պայմանի: Այդ դեպքում կատարող բանկը փաստաթղթերի դիմաց բենեֆիցիարին տալիս է ստորագրված պարտավորագիր:

Ակցեպտի միջոցով վճարվող ակրեդիտիվների դեպքում կատարող բանկը պարտավորվում է ակցեպտավորել և սահմանված ժամկետում վճարել փոխանցելի մուրհակները, որոնք ներկայացվում են բենեֆիցիարի կողմից: Ակցեպտը բանկի պարտավորությունն է՝ մուրհակը վճարել նախատեսված ժամկետում:

Նեգոցիացիայի միջոցով վճարվող ակրեդիտիվների դեպքում կատարող բանկը պարտավորվում է գնել փոխանցելի մուրհակները կամ ակրեդիտիվով ներկայացված փաստաթղթերը: Ակրեդիտիվով նախատեսված լիազորություններով պայմանավորված՝ տարբերում են ազատ նեգոցիացիայով ակրեդիտիվներ (երբ մուրհակները և փաստաթղթերը կարող են նեգոցիացնել յուրաքանչյուր ցանկացած բանկ) և ակրեդիտիվներ, որոնք նախատեսում են նեգոցիացիա՝ կոնկրետ նշված բանկի կողմից:

Հայաստանի Հանրապետության Կենտրոնական բանկի կողմից ընդունված կանոններով և ՀՀ քաղաքացիական օրենսգրքով սահմանված են ակրեդիտիվի հետևյալ հիմնական տեսակները՝

1. հետ կանչվող և հետ չկանչվող[1],
2. հաստատված և չհաստատված,
3. վերականգնող,
4. պահուստային,
5. կանխավճարային,
6. փոխանցելի,
7. հանդիպակաց:

Հետ կանչվող ակրեդիտիվը էմիտենտ բանկի կողմից ցանկացած պահի կարող է փոփոխվել կամ չեղյալ համարվել՝ առանց այդ մասին բենեֆիցիարին նախապես ծանուցելու:

Հետ չկանչվող ակրեդիտիվները չեն կարող փոփոխվել կամ չեղյալ համարվել առանց կողմերի համաձայնության: Միջազ-

[1] Տե՛ս Հայաստանի Հանրապետության «Քաղաքացիական օրենսգիրք», հոդված 936-րդ, 937-րդ:



գային հաշվարկներում որպես կանոն, օգտագործվում են հետ չկանչվող ակրեդիտիվները:

Հաստատված ակրեդիտիվի իրավական բովանդակությունը այն է, որ երրորդ, ոչ էմիտենտ բանկի կողմից հաստատված ակրեդիտիվ է, որը ենթադրում է հաստատող բանկի կողմից վճարման լրացուցիչ երաշխիք: Եթե էմիտենտ բանկը լիազորում կամ խնդրում է այլ բանկի հաստատել իր կողմից բացված ակրեդիտիվը, և վերջինս համաձայնում է, ապա այդ հաստատումը դառնում է հաստատող բանկի կայուն պարտավորություն ի լրացումն բացող բանկի նմանատիպ պարտավորության: Ակրեդիտիվը հաստատող բանկը իր վրա պարտավորություն է վերցնում վճարել փաստաթղթերի դիմաց, որոնք համապատասխանում են ակրեդիտիվի պայմաններին:

Վերականգնող ակրեդիտիվը օգտագործվում է պարբերաբար կրկնվող մատակարարումների դեպքում, որոնք սովորաբար իրականացվում են պայմանագրում նշված ժամանակացույցով: Վերականգնող ակրեդիտիվները նախատեսում են ակրեդիտիվի սկզբնական գումարի ավտոմատ ինքնահոս վերականգնում յուրաքանչյուր օգտագործումից հետո, մինչև սահմանված առավելագույն գումարը: Վերականգնող ակրեդիտիվների բացման դեպքում բանկերը, որպես կանոն, նշում են սկզբնական գումարը՝ ընդգծելով, թե ինչ լիմիտի սահմաններում և քանի անգամ պետք է վերականգնվի ակրեդիտիվը:

Պահուստային ակրեդիտիվը առանձնահատուկ ձև է և իր էությամբ ավելի մոտ է բանկային երաշխիքին: Բանկերի գործարար սովորույթի ուժով եթե առկա է երաշխիքը, ապա չվճարման պարագայում, բանկը պարտավորվում է առաջին իսկ պահանջով կատարել վճարումը բենեֆիցիարին, եթե վերջինս դիմում է բանկին, և տեղեկացնում, որ առաքված ապրանքի դիմաց իրեն չի վճարվել:

Պահուստային ակրեդիտիվը կարող է օգտագործվել արտահանողի օգտին լրացուցիչ վճարումներ կատարելու համար, նաև ինկասոյի ձևով հաշվարկների կամ բանկային փոխանցումների

դեպքում: Բայց այդպիսի ակրեդիտիվը կարող է հանդես գալ նաև որպես ներմուծողի կողմից նախօրոք վճարված կանխավճարի փոխհատուցման ապահովում կամ տուգանքների վճարման ապահովում ներմուծողի օգտին, երբ բենեֆիցիարը չի կատարել պայմանագիրը: Այն, որպես կանխավճարային երաշխիք, պաշտպանում է ներմուծողի շահերը:

Կանխավճարային ակրեդիտիվը չառաքված ապրանքի վճարումն է: Այլ խոսքով՝ ծանուցող բանկը էմիտենտ բանկի հանձնարարությամբ և նրա պատասխանատվությամբ կարող է նշված գումարը կամ դրա մի մասը վճարել բենեֆիցիարին նախքան վերջինիս կողմից անհրաժեշտ փաստաթղթերը ստանալը: Կանխավճարը, որպես կանոն, կատարում է բենեֆիցիարը անդորրագիր («առաքումը իրականացնելու պարտավորություն») կամ նույնատիպ փաստաթուղթ ներկայացնելու դիմաց: Բանկերի աշխատանքային գործունեությունից երևում է, որ նման դեպքերում բենեֆիցիարը պարտավորվում է սահմանված ժամկետում ներկայացնել ակրեդիտիվով նախատեսված փաստաթղթերը: Այդպիսի ակրեդիտիվը ծանուցող բանկին թույլ է տալիս արտահանողին վճարել ակրեդիտիվ գումարի մի մասը, որպես կանխավճար՝ ապրանքի առաքումն իրականացնելու համար: Այն դեպքում, երբ բենեֆիցիարը չի առաքում ապրանքը և հրաժարվում է վերադարձնել կանխավճարը, ծանուցող բանկը իրեն իրավունք է վերապահում հաշիվը բացող բանկից փոխհատուցում պահանջել՝ տոկոսների հետ միասին: Իր հերթին, բացող բանկը իրավունք ունի այն գանձել հրամանագրողից: ՀՀ առևտրային բանկերը կանխավճարային ակրեդիտիվները բնորոշում են որպես չապահովված վարկի ձևեր և հազվադեպ են օգտագործում:

Բանկային իրավունքում փոխանցելի ակրեդիտիվ է համարվում մեկ կամ մի քանի անձանց կողմից ակրեդիտիվի ամբողջական կամ մասնակի օգտագործումը: Փոխանցելի ակրեդիտիվը բենեֆիցիարին թույլ է տալիս ակրեդիտիվի իր իրավունքները կամ նրա մի մասը փոխանցել այլ բենեֆիցիարի: Փոխանցելի ակրեդիտիվ բացվում է այն ժամանակ, երբ բենեֆիցիարը ապ-



րանքի հիմնական մատակարարող չի հանդիսանում, այլ հանդես է գալիս որպես միջնորդ՝ գնորդի և մատակարարի միջև: Ակրեդիտիվը, որպես կանոն, փոխանցելի է և կարող է իրավական հետևանքներ առաջացնել միայն այն դեպքում, երբ ակրեդիտիվի բացման դիմումում նշվում է «փոխանցելի» բառը: Եթե ակրեդիտիվի պայմանները չեն թույլատրում ակրեդիտիվի փոխանցում, ապա միջնորդը դիմում է ծանուցող բանկին կամ այլ երրորդ բանկի՝ բացելու «հանդիպակաց» ակրեդիտիվ երկրորդ բենեֆիցիարի օգտին՝ օգտագործելով հիմնական ակրեդիտիվը: Այսպիսով, միջնորդը հիմնական ակրեդիտիվում հանդես է գալիս որպես բենեֆիցիար, իսկ «հանդիպակաց» ակրեդիտիվում՝ որպես հրամանագրող:

Բանկային անկանխիկ ակրեդիտիվային ձևի իրավական կարգավորման ուղղված օրենսդրությունից և բանկային մարմինների գործունեության փորձից դժվար չէ կռահել, որ հաշվարկների ակրեդիտիվային ձևը շահավետ է վաճառողի համար, քանի որ վճարման հաստատուն և հուսալի ձև է, որ առկա է նախքան ապրանքի տեղ հասնելը: Ակրեդիտիվի հիման վրա վճարումը իրականացվում է անկախ գնորդի համաձայնությունից: Բացի այդ, վաճառողը ակրեդիտիվի հիման վրա հնարավորություն ունի վճարումը ստանալ շատ արագ, հաճախ նաև՝ նախքան ապրանքի նշանակման կետ հասնելը: Վերջապես, բենեֆիցիարը կարող է բանկից արտոնյալ վարկ ստանալ՝ գրավ դնելով ակրեդիտիվը:

Միևնույն ժամանակ ակրեդիտիվը վաճառողի համար համարվում է հաշվարկի առավել բարդ ձև, քանի որ վճարման ստացումը կապված է փաստաթղթերի ճշգրիտ ձևակերպման և դրանք ժամանակին բանկ ներկայացնելու հետ: Խիստ պահանջներ ներկայացնելով փաստաթղթերի ձևակերպման ճշտության նկատմամբ՝ բանկերը պաշտպանում են գնորդի շահերը, քանի որ գործում են վերջինիս հրահանգների հիման վրա[1]:

[1] Տե՛ս Հայաստանի Հանրապետության «Քաղաքացիական օրենսգիրք», հոդված 933-րդ, Ե., 1998:

ՀՀ առևտրային բանկերի կողմից իրականացվող ակրեդիտիվային գործնական հաշվարկներից երևում է, որ ակրեդիտիվային ձևի հիմնական թերությունը ակրեդիտիվային հաշվարկներում ներգրավված կողմերի համար համարվում է բանկերի միջև փաստաթղթերի շարժի ծգծգումը և ակրեդիտիվի բարձր արժեքը: Ակրեդիտիվի բացման, ծանուցման, հաստատման, ընդունման և փաստաթղթերի ստուգման իրականացման համար բանկերը գանձում են կոմիսիոն վճարներ՝ կախված ակրեդիտիվի գումարի չափից: Այդպիսի ծախսերը բանկերի կողմից գանձվում են համաձայն բանկերում գործող ակրեդիտիվին վերաբերող սակագների: Ակրեդիտիվ բացելիս կատարող բանկը պարզ և հստակ նշում է, թե ում հաշվին պետք է կատարվեն ակրեդիտիվի հետ կապված ծախսերը:

Մեր հանրապետության բանկային մարմինների գործնական աշխատանքում գրեթե բացակայում կամ շատ սակավ է օգտագործվում հաշվարկի այս ձևը: Պատճառը հիմնականում պայմանավորված է կիրառման բարդության և գանձվող կոմիսիոն գումարների մեծության հետ: Մասամբ հաշվարկների ակրեդիտիվային ձևի գործնական կիրառմանը խոչընդոտում են «ՀՀ քաղաքացիական օրենսգրքով» սահմանված այն իրավանորմերը, որոնք հստակորեն չեն կարգավորում հատկապես կատարող էմիտենտ և բենեֆիցար բանկերի փոխհարաբերությունները, նրանց ֆինանսական պատասխանատվության հարցերը: Կարծում ենք՝ անհրաժեշտություն է առաջացել վերանայելու ՀՀ «Քաղաքացիական օրենսգրքի» անկանխիկ հաշվարկները կարգավորող պայմանագրերից ծագող պարտավորություններն ամբողջությամբ:



## §9. Երաշխիքը որպես անկանխիկ բանկային հաշվարկ, դրա իրավական ռեժիմը

Բանկային անկանխիկ հաշիվների ուսումնասիրման փորձը խոսում է այն մասին, որ ժամանակին գործարար սովորույթի ուժով բանկերի և հաճախորդների միջև ձևավորվել են հաշվարկների մի շարք ձևեր, որոնք չնայած սահմանված չեն գործող բանկային և քաղաքացիական օրենսդրությամբ, սակայն կողմերի փոխադարձ համաձայնությամբ կարող են պայմանագրային կարգով օգտագործվել: Դրանցից է երաշխիքը, իր դրսևորման տարատեսակներով: Երաշխիքը, որպես կանոն ներպետական և միջազգային բանկային օրենսդրությամբ կիրառվում է այն դեպքերում, երբ դժվար է գնահատել հակառակ կողմի իրական, գործնական և ֆինանսային հնարավորությունները: Ելնելով դրանից՝ և' արտահանողները, և' ներմուծողները ձգտում են լրացուցիչ ապահովել իրենց շահերը, ընդ որում այնպես ապահովել, որ ընդհանրապես բացառվի վնասների կրումը և հնարավորություն տրվի արագորեն բավարարելու պարտատերերի պահանջները այն գործընկերների նկատմամբ, որոնք չեն կատարել իրենց պարտավորությունները:

Բանկային հաշվարկների պրակտիկան վկայում է, որ երաշխիք տվող բանկի կամ վարկային կազմակերպության կամ պետության պարտավորությունն է որևէ գործողության կամ գործառնության համար վճարել այն դեպքում, երբ երրորդ կողմը հրաժարվում է որոշակի պարտավորությունների կատարումից[1]: Երաշխիքը տալիս են բանկերը միակողմանի գրավոր պարտավորության տեսքով: Դա կարելի է անվանել նաև երաշխիքային նամակ, քանի որ նամակի տեսք ունի և հասցեագրված է այն կողմին, որի օգտին տրվել է:

Այսպիսով, երաշխիքը կարելի է բնութագրել որպես երաշխավորող բանկի պարտավորություն, որ նա ստանձնում է որևէ անձի

[1] Տե՛ս մանրամասն «Ֆինանսներ և վարկ», ԵՊՏԻ, Ե., 2003, էջ 425:

հանդեպ (բենեֆիցիար) այլ անձի հանձնարարությամբ (պրինցիպալ)՝ վերջինիս բենեֆիցիարի հանդեպ պարտավորության լրացուցիչ ապահովման համար: Երաշխիքը տրամադրելով՝ բանկը պարտավորվում է վճարել ըստ բենեֆիցիարի առաջին պահանջի, եթե երաշխիքի տեքստում ամրագրվել են նշված պայմանները: Երաշխիքի իրացումը կատարվում է այն պահին, երբ երաշխավոր բանկը կատարում է բենեֆիցիարի հանդեպ իր պարտավորությունները: Երաշխիքը ինքնուրույն պարտավորություն է՝ անկախ հիմնական պարտքի հետ կապված հարաբերություններից կամ պարտատիրոջ ու հիմնական պարտապանի միջև կնքված պայմանագրից:

Երաշխիքային գործարքների մասնակից կողմերն են պրինցիպալը, երաշխավորողը և բենեֆիցիարը:

Ըստ գործող քաղաքացիական և բանկային օրենսդրության պրինցիպալն այն անձն է, որի հանձնարարությամբ տրվում է երաշխիքը, և որի պարտավորությունները ապահովվում են տվյալ երաշխիքով:

Երաշխավորողն այն բանկն է, որն իր վրա է վերցնում պարտավորություն տվյալ երաշխիքով:

Ըստ քաղաքացիական օրենսդրությամբ սահմանված կատեգորիաների բենեֆիցիարն այն անձն է, որի օգտին տրված է երաշխիքը:

Բանկային գործունեությանը հայտնի են ուղղակի երաշխիքներ և փոխերաշխիքներ: Ուղղակի երաշխիքների դեպքում երաշխավոր բանկն իր վրա պարտավորություն է վերցնում անմիջապես բենեֆիցիարի հանդեպ: Փոխերաշխիքի դեպքում որպես երաշխավորող հանդես է գալիս բենեֆիցիարի բանկը կամ այլ բանկ՝ պրիցիպալի բանկի հանձնարարությամբ: Պրինցիպալի բանկը փոխերաշխիքը ներկայացնում է թղթակից բանկին և խնդրում նրա երաշխավորությունը հօգուտ բենեֆիցիարի՝ իր լրիվ պատասխանատվության ներքո:

Ըստ իրացման հնարավորությունների երաշխիքները լինում են պայմանական և անվերապահ:



Անվերապահ երաշխիքի պարագայում երաշխավոր բանկը բենեֆիցիարի հանդեպ իր պարտավորությունը կատարում է նրա առաջին իսկ պահանջով, նույնիսկ եթե այն ոչնչով չի պայմանավորված և չի հաստատված լրացուցիչ փաստաթղթերով: Երաշխիքի այս տեսակը առավել շահավետ է բենեֆիցիարի համար, քանի որ առավելապես պաշտպանում է նրա շահերը: Բենեֆիցիարը պահանջը պետք է ներկայացնի երաշխիքի գումարի և ժամկետի սահմաններում: Անվերապահ երաշխիքները բանկերը տալիս են, որպես կանոն, մշտական հուսալի հաճախորդների հանձնարարությամբ: Նման երաշխիքների համար սովորաբար պահանջվում է ապահովման ներդրում:

Ինչ վերաբերում է պայմանական երաշխիքին, ապա այն կախված է որոշակի պայմանների կատարումից և կարող է իրացվել պայմանը վրա հասնելու դեպքում:

Բանկային անկանխիկ հաշվարկների երաշխիքները ըստ բնույթի լինում են վճարային և պայմանագրային բնույթի:

Վճարային երաշխիքները գործնականում բանկերը տալիս են գնորդներին՝ վաճառողների հանդեպ ունեցած վճարային պարտավորությունները ապահովելու համար: Նման երաշխիքները պաշտպանում են մատակարարների, արտահանողների շահերը: Դրանք օգտագործվում են առաջին հերթին առևտրային վարկի հաշվարկների իրականացման դեպքում:

Բանկային գործունեության ուսումնասիրությունից կարելի է անել այն հետևությունը, որ բանկային փոխանցումների և ինկասոյի վճարմանը զուգընթաց, հաշվարկների ընդլայնման հետ միասին, գնալով մեծանում է բանկային երաշխիքների դերը գնող կազմակերպությունների կողմից ապրանքի դիմաց ժամանակին վճարումներ ապահովելու համար: Այդպիսի վճարային երաշխիքները արտահայտվում են ինչպես անվերապահ վճարումների կատարմամբ, այնպես էլ որոշակի պայմանով:

Ինկասո գործառնությունների ժամանակ, կանխիկ վճարումների պայմաններում, անվերապահ վճարային երաշխիքներ ներկայացնելը պետք է նախատեսվի պայմանագրով, հատկապես

այն դեպքերում, երբ գնորդը հնարավորություն ունի ապրանքը ստանալ նախքան վճարելը:

Բանկային հաշվարկների ձևերի շարքին կարելի է դասել պայմանագրային երաշխիքները: Նման երաշխիքներ տալիս են բանկերը՝ պատվիրատուի շահերը պաշտպանելու համար:

Բանկային անկանխիկ հաշվարկների ձևերի համակարգում այսօր իրենց գործնական առանձնահատկություններով կարելի է առանձնացնել ժամանակակից նոր պայմանագրային երաշխիքները, որոնց թվին են պատկանում կանխավճարի վերադարձման երաշխիքները, կատարման երաշխիքները, տենդերային հաշվարկները (սակարկությունների մասնակցության երաշխիք), ժամանակավոր ներմուծման երաշխիքները (մաքսային մաքրման երաշխիքներ):

Կանխավճարի վերադարձման երաշխիքները տրվում են բանկի կողմից մատակարարի հանձնարարությամբ, որը, պայմանագրի պայմանների համաձայն, որպես կանխավճար ստանում է ապրանքի ամբողջ արժեքը կամ նրա մի մասը: Այդ երաշխիքները ենթադրում են բանկի պարտավորություն կանխավճարի գումարի վերադարձման համար, եթե մատակարարը չի կատարում ապրանքի մատակարարման իր պարտավորությունները: Եթե պայմանագիրը նախատեսում է ապրանքի մաս-մաս առաքում, ապա երաշխավոր բանկի պարտավորության ծավալները փոքրանում են մատակարարի կողմից կատարվող բեռնափոխադրումներին զուգընթաց:

Միջազգային առևտրական մատակարարման գործարքների հաշվարկները վկայում են, որ արտասահմանյան բանկերի կողմից հայրենական բանկերի օգտին տրված կանխավճարի վերադարձման երաշխիքները սովորաբար լինում են բացարձակ և կարող են իրացվել բենեֆիցիարի առաջին իսկ պահանջի դեպքում[1]:

[1] Տե՛ս մանրամասն Ýêñïîðò: ïðàâî è ïðàêòèêà ìåæäóíàðîäíîé òîðãîâëè, Ïîä ðåä, Ê. Øìèòòãîôô, Ì., «Þðèäè÷åñêàÿ ëèòåðàòóðà», Ì., 1993, էջ 205.



Բանկային գործառույթներով կատարման երաշխիքը տրվում է մատակարարի հանձնարարությամբ, գնորդի օգտին:

Պայմանագրի պայմանները սովորաբար նախատեսում են պատժամիջոցներ մատակարարի հանդեպ՝ իր պարտավորությունները չկատարելու համար: Որպես այդպիսիք, հանդես են գալիս պայմանական տուգանքները: Կատարման երաշխիքը ապահովում է երաշխավոր բանկի կողմից տուգանքների գումարների վճարումը՝ բենեֆիցիարի ներկայացրած պահանջի դիմաց մատակարարի կողմից իր պարտավորությունների չկատարման դեպքում: Հանրապետության բանկերի գործունեությունը վկայում է, որ այս երաշխիքները հիմնականում տրվում են կապալային շինարարություն իրականացնելիս: Դրանց գումարը սովորաբար չի գերազանցում պայմանագրի գումարի 10-15% -ը:

Ինչ վերաբերում է այսօր բանկային անկանխիկ հաշվարկներում տեղ գտած տենդերային երաշխիքի էությանը, ապա վերջինս ապահովում է որոշակի գումարի՝ պայմանագրի 1-5%-ի չափով վճարումը այն դեպքում, երբ սակարկությունը շահած ֆիրման հրաժարվում է կնքել պայմանագիր, և նախատեսում է վճարում բենեֆիցիարին՝ առաջին իսկ պահանջի դեպքում: Եթե սակարկության պայմանները նախատեսում են տենդերային երաշխիքի բացում հանրապետության բանկերից որևէ մեկում, ապա պրիցիպալը՝ սակարկության մասնակցի բանկը ներկայացնում է փոխերաշխիք տեղական բանկի օգտին՝ հանձնարարելով վերջինիս երաշխիք ներկայացնել սակարկության կազմակերպողի օգտին: Պայմանագրի ստորագրումից հետո տենդերային երաշխիքը կարող է վերաձևակերպվել որպես պայմանագրի կատարման երաշխիք:

Մաքսային գործունեության ոլորտում, ելնելով բանկերի միջազգային իրավական պրակտիկայից, ՀՀ բանկային համակարգ մտած բանկերը, որպես անկանխիկ հաշվարկի ձև, այսօր սկսել են կիրառել մաքսային մաքրման երաշխիքները, որոնք բանկային առօրյա գործառույթներում շատ հաճախ համարում են ժամանակավոր ներմուծման երաշխիք, որպիսիք տալիս են բան-

կերը կողմից կապալառուի հանձնարարությամբ շինարարական կամ այլ աշխատանքների կատարելու համար անհրաժեշտ սարքավորումներ ու նյութեր ժամանակավոր անմաքս ներմուծումը ապահովելու համար: Այդ սարքավորումները, նյութերը աշխատանքները կատարելուց հետո նորից արտահանվում են: Ժամանակավոր ներմուծման երաշխիքը ապահովում է մաքսերի վճարումը, եթե սարքավորումները չեն արտահանվում:

Ի տարբերություն ակրեդիտիվների և ինկասոյի, բանկային երաշխիքները միջազգային իրավական ակտերով չեն կարգավորվում: Դրանց օգտագործումը կարգավորվում է երաշխավորի երկրի օրենսդրությամբ:

Միջազգային Առևտրային պալատը 1978թ. մշակվել է «Պայմանագրային երաշխիքների ունիֆիկացված կանոններ», սակայն դրանք տարածում չեն գտել և ներկայումս միջազգային առևտրում կիրառվում են 1992թ. թողարկված «Ցպահանջ երաշխիքների ունիֆիկացված կանոնները», որոնք գործում են այն դեպքում, եթե այդ մասին հատուկ նշված է երաշխիքի տեքստում:

Մուրհակները և պահուստային ակրեդիտիվները իրենց էությամբ նույնպես երեշխիքներ են: Դրանց օգտագործումը նախընտրելի է, քանի որ կարգավորվում են ինչպես ներպետական, այնպես էլ միջազգային բանկային օրենսդրությամբ և կանոններով:

Գործող բանկային օրենսդրությամբ երաշխիքների սահմանափակումներ չկան, որը դրականապես է անդրադառնում առևտրային բանկերի անկանխիկ հաշվարկների արդյունավետության բարձրացման վրա: Հետևաբար, երաշխիքներ կարող են տրամադրվել ոչ միայն բանկեր ու այլ ֆինանսական կազմակերպությունները, այլև միջազգային ճանաչում ունեցող խոշոր ֆիրմաները:

Բանկային գործունեության իրավական կարգավորման հիմնահարցերի թվում ժամանակին ձևավորված դրամաշրջանառության և վճարահաշվարկային գործառույթների իրականացման



գործընթացում ծագող փոխհարաբերությունների համալիր բնույթին վերաբերող տարաձայնությունները այսօր էլ նույն թարմությամբ, առանց վաղեմության կորստի շարունակում են գերիշխել ֆինանսական իրավունքի տեսության ոլորտում:

ՀՀ–ում գործող ցանկացած առևտրային բանկի գործնական սպասարկումների ծավալի գերակշռող մասը, հատկապես կենցաղային կանխիկ և անկանխիկ հաշվարկների ձևով իրականացվելիս, համամասնորեն հարաբերակցվում է 20: 80–ի համեմատությամբ, որը վկայում է անկանխիկ հաշվարկների աննախադեպ աճի մասին, որոնց շարքում իրենց տեսակարար կշռով պայմանագրային հարաբերություններից առանձնացվում են առօրյա կենցաղային հաշվարկումներ պահանջող վճարումները, որոնց իրավական կարգավորումը դուրս է քաղաքացիական իրավունքի շրջանակներից: Այդպիսի գործառույթների իրականացումը տեղի է ունենում բանկային մարմինների միակողմ, ամենատարբեր ծառայությունների մատուցմամբ, որտեղ գործառույթների տեսակները ընտրելիս բանկային իրավահարաբերությունների մասնակիցներին իր անառարկելի կամքն է թելադրում ՀՀ Կենտրոնական բանկի թույլտվությամբ գործող բանկային մարմինը կամ նրա ներկայացուցչությունը[1]:

Բանկային գործունեության վերլուծությունները և գործնական կյանքը վկայում են, որ դրամաշրջանառության, վարկավորման և վճարահաշվարկային գործառույթներից ծագող հաշվարկների իրավական հատկանիշը ոչ այնքան դրամական պարտավորության կատարումն է, որքան ծառայության մատուցումը: Գրեթե բոլոր պայմանագրերում դրամը հանդես է գալիս որպես համարժեք փոխհատուցման միջոց: Հետևաբար, վճարահաշվարկային բոլոր հարաբերությունները տարբերվում են ոչ թե վճարվող դրամով, այլ ծառայության բնույթով, որը բխում է բանկային մարմինների կարգավիճակի առանձնահատկություններից:

[1] À.À.Ìàêñþòîâ, Îñíîâû áàíêîâñêîãî äåëà, Áåðàòîð–Ïðåññ, Ì., 2003, էջ 157:

## ԳԼՈՒԽ VII

# ԽՆԱՅՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԵՎ ԲԱՆԿԱՅԻՆ ԱՎԱՆԴՆԵՐԻ ԻՐԱՎԱԿԱՆ ՌԵԺԻՄԸ

## §1. Խնայողությունների և բանկային ավանդների հասկացությունը և իրավական կարգավիճակը

Հանրապետության ընդհանուր տնտեսական աճի ցածր տեմպերը, բյուջետային դեֆիցիտը, բանկային համակարգի անկայուն գործունեությունը բացասաբար են անդրադառնում բնակչության իրական կենսամակարդակի և հետևաբար խնայողությունների ձևավորման վրա:

Բանկային համակարգի ապահովագրական մարմինների ժամանակակից գործելաձևն ու մեթոդները, երաշխիքները, հանձնարարականների օգտագործումը միշտ չէ որ իրացվում է լրիվ ծավալով:

Ինչպես վկայում է հանրապետության առևտրային բանկերի գործնական աշխատանքը, նրանց մի մասը ֆինանսական դժվարությունների պատճառով չի կարողանում կատարել ստանձնած պարտավորությունները ավանդատուների հանդեպ և խուսափել սնանկացումից: Այսպիսի դեպքերում ավանդատուներին վճարում են նրանց դեպոզիտների մի մասը, իսկ լավագույն դեպքում` դեպոզիտների մաքուր գումարն առանց հասանելիք տոկոսների: Առևտրային բանկերի գործունեությունից երևում է, որ դրանց սնանկացման պարագայում կիրառում են ավանդատուների շահերի պաշտպանության հետևյալ ելակետներից որևէ մեկը.

ա) ավանդները փոխհատուցվում են բանկի լուծարման ճանապարհով, որը տևական գործընթաց է և ձեռնտու չէ ավանդատուներին,

բ) բանկը քաղաքացիական օրենսդրությամբ սահմանված կարգով վերակազմվում է (միաձուլում, միացում),

գ) օգնության նպատակով ավանդները տեղաբաշխում են:



Հանրապետության բանկային համակարգի, նրա առանձին օղակների անվճարունակությունը և սնանկացումը չի բացառվում: Դրա հիմնական պատճառները կարող են ունենալ և' օբյեկտիվ, և' սուբյեկտիվ բնույթ. մակրո մակարդակով տնտեսության ճգնաժամային իրավիճակը կամ կոնկրետ առևտրային բանկի մակարդակով բանկի անարդյունավետ կառավարումը, բանկերում արմատացած չարաշահումները, անօրինական գործառնությունները և գործարքները և այլն: Այս բացասական հետևանքների վերացման նպատակով այսօր բանկային օրենսդրության ոլորտում առաջին քայլերն են կատարվում բնակչության խնայողությունների պահպանման անվտանգության բարձրացման և երաշխավորման ուղղությամբ: Ի վերջո բանկային համակարգի վերակառուցման, բանկային օրենսդրության կատարելագործման նպատակով առաջին պլան են մղվում բանկային ավանդների ապահովագրման, բանկերի հաճախորդների շահերի երաշխավորված պաշտպանության հիմնահարցերը, որոնց իրավական կարգավորմանն է ուղղված ՀՀ ԱԺ 2004թ նոյեմբերի 24-ին ընդունած «ֆիզիկական անձանց բանկային ավանդների հատուցումը երաշխավորելու մասին» օրենքը[1]:

Բանկային ավանդը իրավական բովանդակությամբ պետական վարկի դրսևորման ձևերից է, որոնք բանկային հիմնարկներում պահվող քաղաքացիների և իրավաբանական անձանց դրամական միջոցներն են:

Ֆինանսաիրավական գրականության էջերում երբևէ չի լուսաբանվել բանկային ավանդի իրավական հասկացությունը: Առաջին անգամ օրենքի մակարդակով ավանդի ընդարձակ պարզաբանման հանդիպում ենք «ՀՀ բանկերի և բանկային գործունեության մասին» օրենքի 5-րդ հոդվածում, որտեղ ասված է, որ բանկային ավանդ է համարվում բանկ ներդրված այն ավանդը, որը, համաձայն գործարքի պայմանների, ենթակա է վերադարձման հատուցմամբ կամ առանց հատուցման գումարը տրամադրողի

[1] Տե'ս ՀՀ օրենքը «Ֆիզիկական անձանց բանկային ավանդների հատուցումը երաշխավորելու մասին» (Բանկային տեղեկագիր), N 1, Ե., «Լոգիկա - Ակունք», ՍՊԸ, 2005թ. էջ 207: Âèíîãðàäîâ Â.À., Î ñèñòåìå ãàðàíòèðîâàíèÿ âêëàäîâ ãðàæäàí â êîììåð÷åñêèõ áàíêàõ (Äåíüãè è êðåäèò), 1998, N 3, էջ 17.

(ավանդատուի) առաջին իսկ պահանջով կամ ավանդատուի և բանկի միջև համաձայնեցված ժամկետում:

Այնուհետև նույն հոդվածի երկրորդ մասում ավանդին տրվում է ավելի լայն բացատրություն՝ ավանդ համարելով բանկում բացված հաշվարկային, ընթացիկ, ժամկետային, խնայողական կամ նման այլ հաշիվները, նաև բանկային ավանդով հաշվարկված, բայց ավանդատուին չվճարված տոկոսներ կամ այլ հատուցում:

«Ֆիզիկական անձանց բանկային ավանդների հատուցումը երաշխավորելու մասին» օրենքի 2-րդ հոդվածի 2-րդ մասում առաջին անգամ բանկային ավանդի հասկացությունից առանձնացվում է երաշխավորված ավանդը, որի իրավական ռեժիմի անբաժան մասն են ավանդը ներդնող սուբյեկտները և ավանդի չափը: Օրենքը երաշխավորում է ավանդատուի ինչպես դրամային, այնպես էլ արտարժութային բանկային ավանդը: Ավանդների անվտանգությունը երաշխավորող նոր օրենքը ավանդատուների որոշ կատեգորիաների համար իրավունքների սահմանափակումներ է ամրագրում՝ չերաշխավորելով նրանց բանկային ավանդները: Այսպես, երաշխավորված ավանդ չի համարվում այն բանկային ավանդը,

ա) որը պատկանում է տվյալ բանկի ղեկավարին և նրա ընտանիքի անդամներին,

բ) որը պատկանում է տվյալ բանկում նշանակալից մասնակցություն ունեցող անձին և նրա ընտանիքի անդամներին,

գ) որի սեփականատերը հրաժարվել է իր մասի նկատմամբ սեփականության իրավունքից,

դ) որն օրենքով և իրավական այլ ակտերով սահմանված կարգով ճանաչվել է հանցավոր ճանապարհով ձեռք բերված դրամական միջոց, քանի դեռ դրա սեփականատերը հակառակը չի ապացուցել,

ե) որը տվյալ բանկում ներդրվել է բանկային ավանդի ներդրման պահին տվյալ բանկի կողմից հրապարակային պայմանագիր կնքելու առաջարկով նախատեսված նմանատիպ բանկային ավանդների տոկոսադրույքը առնվազը 1,5 անգամ գերազանցող տոկոսադրույքով:



Օրենքի 3-րդ հոդվածում ի լուր ավանդատուների հստակեցված են երաշխավորված ավանդի չափերը: Օրինակ՝

ա) եթե ավանդատուն անվճարունակ բանկում ունի միայն դրամային բանկային ավանդ, ապա երաշխավորված ավանդի չափը երկու միլիոն հայկական դրամ է,

բ) եթե ավանդատուն անվճարունակ բանկում ունի միայն արտարժութային բանկային ավանդ, ապա երաշխավորված ավանդի չափը մեկ միլիոն հայկական դրամ է,

գ) եթե ավանդատուն անվճարունակ բանկում ունի դրամային և արտարժութային բանկային ավանդներ և դրամային բանկային ավանդի գումարը մեկ միլիոն հայկական դրամից ավելի է, ապա երաշխավորվում է միայն դրամային ավանդը մինչև երկու միլիոն հայկական դրամով,

դ) եթե ավանդատուն անվճարունակ բանկում ունի դրամային և արտարժութային բանկային ավանդներ և նրա դրամային բանկային ավանդի գումարը պակաս է մեկ միլիոն դրամից, ապա երաշխավորվում է դրամային բանկային ավանդն ամբողջությամբ և արտարժութային բանկային ավանդը՝ մեկ միլիոն դրամի և հատուցված դրամային բանկային ավանդի տարբերության չափով:

Ավանդատուի նույն բանկում ունեցած ինչպես դրամային, այնպես էլ արտարժութային ավանդները համարվում են մեկ ավանդ:

Օրենքը ավանդների հատուցումը երաշխավորում է միայն հատուցման դեպքի առկայությամբ, որը ոչնչով չի տարբերվում հայտնի ապահովագրական դեպքից, և ըստ էության իրավաբանական փաստ է, որ բանկային իրավահարաբերությունների ընթացքում նպաստում է ավանդատուների շահերի պաշտպանությանը[1]:

Ավանդների հատուցման երաշխավորողը ՀՀ Կենտրոնական բանկի կողմից ձևավորված՝ ավանդների հատուցումը երաշխավորող հիմնադրամն է, որը շահույթ ստանալու նպատակ չի հետապնդում:

[1] Տես ՀՀ ԱԺ 2004թ. նոյեմբերի 24-ին ընդունած օրենքը «Ֆիզիկական անձանց բանկային ավանդների հատուցումը երաշխավորելու մասին», Ե., 2005թ.:

## §2. Բանկային ավանդների տեսակները և իրավական կարգավորման առանձնահատկությունները

Բնակչության խնայողությունների և իրավաբանական անձանց ավանդների իրավական կարգավորումը սահմանված են նաև ՀՀ քաղաքացիական օրենսդրությամբ: Այսպես, ՀՀ քաղաքացիական օրենսգրքի 902-րդ հոդվածում ասված է, որ բանկային ավանդի (դեպոզիտի) պայմանագրով մի կողմը (բանկը) ընդունելով մյուս կողմից (ավանդատուից) ստացված կամ վերջինիս համար ստացված դրամական գումարը (ավանդը)՝ պարտավորվում է ավանդատուին վերադարձնել ավանդի գումարը և պայմանագրով նախատեսված պայմաններով ու կարգով տոկոսներ վճարել:

Անձը, որի անվամբ ձևակերպում են ավանդը և նրան տալիս են բանկային կամ հաշվարկային գրքույկ, հանդիսանում է բանկի ավանդատու: Ավանդատուներ կարող են լինել ինչպես ՀՀ չափահաս և անչափահաս քաղաքացիները, օտարերկրյա քաղաքացիները, այնպես էլ իրավաբանական անձինք: Ավանդ կարելի է պահել ուրիշի անունով, որն այդ դեպքում համարվում է ավանդատու: Մեկ անձը կարող է ձևակերպել մի քանի ավանդներ: Ավանդների պահման ժամկետը չի սահմանափակվում: Ավանդը լրիվ կամ մասնակիորեն վերադարձվում է ավանդատուին նրա առաջին իսկ պահանջով[1]:

Բանկերի ավանդների տեսակները մեր հանրապետությունում սահմանված են քաղաքացիական օրենսգրքի 905-րդ հոդվածում, ըստ որի ավանդները լինում են ցպահանջ և ժամկետային: Ավանդատուն իրավունք ունի ընտրելու դրանցից որևէ մեկը:

[1] Տե՛ս մանրամասն Ñèäîðîâà Â.Í., Äîãîâîð äåíåæíîãî âêëàäà ãðàæäàí â êðåäèòíîì ó÷ðåæäåíèè ñáåðåãàòåëüíîãî áàíêà ÑÑÑÐ (Ïðàâîâåäåíèå), 1990, N 4, էջ 31. Åôèìîâà Ë. Ã., Î ïðàâîâîé ïðèðîäå äîãîâîðà áàíêîâñêîãî ñ÷åòà è áàíêîâñêîãî âêëàäà ,,(Ãîñóäàðñòâî è ïðàâî)", 1992, N, էջ 43.



Ցպահանջ ավանդները բնորոշ են նրանով, որ պահման ժամկետ նախօրոք չի սահմանվում: Ավանդը կարելի է ստանալ ցանկացած ժամանակ: Չի նախատեսվում նաև ոչ մի հատուկ պայման ավանդը վերադարձնելու համար: Այդպիսի ավանդների համար բանկերը վճարում են պայմանագրային տոկոս: Ցպահանջ ավանդը՝ ձևակերպված որոշակի անձի անունով, կոչվում է անվանական ավանդ, իսկ առանց անձի ձևակերպվածը՝ ըստ ներկայացնողի ավանդ: Այս ավանդի տեր կարող է լինել յուրաքանչյուր անձ, որը ներկայացնում է ավանդագրքույկ, այս փաստաթղթի կորստի դեպքում ավանդատուն կարող է վերականգնել իր իրավունքները միայն դատական կարգով:

Ժամկետային ավանդները դրամական միջոցներ են, որոնք ընդունվում են խնայդրամարկղների կողմից որոշակի ժամանակով: Ավանդը համարվում է շտապ, երբ նրա ժամկետը անցել է: Քանի որ ավանդները բանկերի տրամադրության տակ մնում են ավելի երկար ժամանակ, ապա դրանց համար վճարվում է ավելի բարձր եկամուտ: Եթե ավանդատուն ավանդը հանձնելու ժամանակ բանկին գրավոր ցուցում չի տվել, որ դրամը դրվում է ժամկետային ավանդի ձևով, ապա այդ ավանդը համարվում է ցպահանջ և նրա եկամուտը վճարվում է ցպահանջ ավանդի տոկոսադրույքով՝ անկախ նրա պահման ժամանակից:

Ավանդատուն իրավունք ունի ժամկետային ավանդի դրամը ստանալ ժամկետը չլրացած, բայց այդ դեպքում նրան վճարվում է ցածր տոկոս եկամուտ ավանդի պահման ողջ ժամանակաշրջանի համար: Ժամկետային ավանդների ժամանակ լրացուցիչ մուտքում չի կատարվում: Դրա հետ մեկտեղ այդ ավանդների համար կարող են տրվել տոկոսներ՝ հաշվարկված որոշակի ժամանակաշրջանի համար:

Գործող բանկային օրենսդրությամբ քաղաքացիները և իրավաբանական անձինք կարող են իրենց խնայողությունները պահել պայմանական, ընթացիկ հաշվային և այլ ավանդատեսակներով, որոնք կարգավորվում են ինչպես կողմերի միջև կնքված պայմանագրով, այնպես էլ գործող քաղաքացիական ու ֆինան-

սական օրենսդրությամբ: Այսպես, պայմանական ավանդները առանձնանում են նրանով, որ ավանդատուն կարող է տնօրինել ավանդը միայն որոշակի պայմաններ կատարելուց հետո (դպրոցը, ԲՈՒՀ-ը ավարտելուց հետո): Պայմանը նշվում է ավանդատուի կողմից, որը գրվում է ավանդատուի դիմային հաշվի մեջ և ավանդագրքույկում: Պայմանները չպետք է պարունակեն օրենքին հակասող և այլ անհասկանալի պահանջներ, որոնք դժվարացնեն ավանդը վերադարձնելը: Ավանդատուն իրավունք ունի տնօրինել պայմանական ավանդը այն բանից հետո, երբ ներկայացնելով փաստաթուղթ՝ ապացուցում է, որ պայմանը կատարված է (դպրոցի ավարտման վկայական, ԲՈՒՀ-ի դիպլոմ և այլն): Պայմանական ավանդի տերը դա կարող է տնօրինել նաև նախքան պայման կատարելը, երբ դրա համար կա ավանդը պահող անձի թույլտվությունը:

Անչափահասի անունով դրված ավանդը, մինչև պայմանի կատարումը, իրավունք ունի տնօրինել այն անձը, որն ավանդը պահել է, բայց անչափահաս ավանդատուի ծնողների գրավոր համաձայնությամբ: Ըստ պայմանական ավանդների եկամուտը տարեկան սահմանվում է պայմանագրերով, ինչպես ցպահանջ ավանդներինը:

Բանկային ավանդի պայմանագրով կողմերը կարող են սահմանել ընթացիկ հաշվարկային ավանդ:

Ընթացիկ հաշվարկային ավանդը ցպահանջ ավանդներից տարբերվում է առաջին հերթին նրանով, որ ավանդատուին բանկային գրքույկի փոխարեն տրվում է երկու փաստաթուղթ՝ հաշվարկային և չեկային գրքույկներ: Դրամն այդ ավանդով տրվում է չեկի համաձայն, որը ստորագրում է ավանդատուն: Հաշվարկային գրքույկում բանկը գրանցում է միայն մուծումները, որոնք ստացվում են ընթացիկ հաշվով, իսկ ծախսվող գործառնությունների գումարները գրանցվում են ավանդատուի կողմից: Ընթացիկ հաշվի առավելությունն այն է, որ ավանդատուն կարող է լրացնել չեկը ամեն անձի անունով, նաև ըստ ներկայացնողի: Բացի այդ, ավանդատուն հնարավորություն ունի անկանխիկ



մուծումներ կատարել: Այս դեպքում ավանդի տերը չեկի վրա «հաշվարկային» սղում է կատարում և գրում ավանդը ստացողի հաշվի համարը, բանկի, հիմնարկության անվանումը, որտեղ գտնվում է չեկը: Հաշվարկային հաշվով դրամ ստանալու համար, կամ գումարն այլ անձի կամ հիմնարկության անունով դուրս գրելու համար անհրաժեշտ է բանկին ներկայացնել համապատասխան չեկը: Ավանդատուն կարող է կազմել անվանական և ներկայացուցչական չեկեր: Անվանական չեկով գումարն ստացողը ներկայացնում է նաև իր անձնագիրը, իսկ ներկայացուցչական չեկով գումար վճարելիս խնայդրամարկղը ներկայացնողից անձնագիր չի պահանջում: Չեկերը ուժի մեջ են տաս օր՝ գրման օրվանից: Այս ավանդի ստացման համար վերանում է ավանդատուի՝ խնայողական բանկ ներկայանալու պահանջը, կարիք չի առաջանում լիազորագիր տալ և խնայողական գրքույկ ներկայացնել: Եկամուտները վճարվում են տարեկան տոկոսադրույքով՝ ըստ պայմանագրում նշված չափի:

Հանրապետության առևտրային բանկերի ավանդների ընդունման իրավա-կազմակերպական գործունեությունըցույց է տալիս, որ այսօր ֆիզիկական և իրավաբանական անձանց խնայողությունների կենտրոնացման, փոխանցումների և հաշվարկների արդյունավետության բարձրացման ուղղությամբ գործնականում բանկերը սկսել են կիրառել միասնական խնայողական գրքույկներ ավանդի ձևը:

Միասնական խնայողական գրքույկներով ավանդներ կարելի է ստանալ տվյալ մարզի կամ հանրապետության բոլոր խնայողական դրամարկղերում: Խնայողական գրքույկի հետ տրվում է նաև համապատասխան բանկի վերահսկիչ թերթ: Դրամը ստանալիս ավանդատուն ներկայացնում է խնայողական գրքույկը, վերահսկիչ թերթը և իր անձնագիրը: Եկամուտը հաշվարկվում է ԿԲ կողմից սահմանված տոկոսի չափով: Այս ավանդի առավելությունն այն է, որ ավանդատուն հնարավորություն է ունենում մարզի կամ հանրապետության այլ բնակավայրերում էլ գումար-

ներն անմիջապես ստանալ[1]:

Շուկայական տնտեսության պայմաններում, հատկապես բնակչության խնայողությունների կենտրոնացումը խրախուսելու և ներդրումներ կատարելու շահագրգռվածությունը բարձրացնելու նպատակով, կարծում ենք, անհրաժեշտություն է զգացվում բանկային գործունեության ոլորտում մեծ թափ հաղորդել միջազգային պրակտիկայում որպես ավանդի տեսակ լայնորեն օգտագործվող շահող ավանդների արմատավորմանը:

Շահող ավանդներ ունեցողներին, որպես կանոն, կայուն տոկոսներ չեն վճարվում: Այդ ավանդների համար եկամուտ են ստանում միայն նրանք, ովքեր շահում են խաղարկության ժամանակ[2]: Խաղարկությունները կայանում են տարեկան երկու անգամ: Շահող ավանդների խաղարկության ժամանակ խաղարկվում են շահող ավանդների հաշիվների համարները, այլ խոսքով՝ խնայողական գրքույկների համարները:

Ավանդներ ընդունող բանկերը շահող ավանդներ մուծող ֆիզիկական և իրավաբանական անձանց տալիս են միասնական ավանդագրքույկներ, որոնց համարները սահմանում են իրենք՝ աճող հերթականությամբ (Ա -1, Ա -2, Ա -3 և այլն): Յուրաքանչյուր 1000 հաշվից խաղարկությունների ժամանակ շահում է 25 հաշիվ՝ բարձրից ցածր տոկոսային հարաբերությամբ, որ սահմանում է համապատասխան բանկը:

Շահող հաշվի շահման բացարձակ գումարը պետք է որոշել՝ ելնելով ավանդի վեց ամսվա միջին մնացորդից: Շահման դեպքում ավանդի գումարը ավելանում է մեկ քառորդից մինչև կրկնակի անգամ: Շահող ավանդը ռեալ հնարավորություն է ընձեռում ավանդատերերին՝ հավասար իրավունքներով մասնակցել խաղարկություններին և շահել:

[1] Տե՛ս մանրամասն Âàëëåð Ë., Ïðàâîâûå îòíîøåíèÿ ñáåðåãàòåëüíûõ êàññ ñ âêëàä÷èêàìè ,,(Äåíãè è êðåäèò)", 1970, N 6, էջ 18.
[2] Տե՛ս Ôèíàíñîâîå è áàíêîâñêîå ïðàâî, ñëîâàðü - ñïðàâî÷íèê, Ì., ''Öûôðà- Ì'', 1997, էջ 51, 1997.



Շահող ավանդ ունեցողը առանց որևէ սահմանափակման իր հաշվին կարող է գումարներ մուծել կամ ցանկացած ժամանակ գումար վերցնել: Դա չի խանգարում, որ նա մասնակցի խաղարկություններին:

Շահող ավանդի հիմնական առանձնահատկությունն այն է, որ վեց ամսվա ընթացքում ստացած գումարները նույնպես հաշվի են առնվում միջին ավանդի գումարը որոշելիս և ավանդատուի վերցրած ու ծախսած գումարների համար նույնպես հաշվում են շահում: Խաղարկություններին չեն մասնակցում միայն այն հաշիվները, որոնք փակվում են մինչև խաղարկության օրը:

Ավանդատուն նույն խնայողական բանկում կարող է բացել շահող ավանդի մի քանի հաշիվ:

Հայաստանի Հանրապետությունը մեծ հոգատարություն է ցուցաբերում ավանդատուների իրավունքների պաշտպանության, նրանց անձնական խնայողությունների մեծացման ուղղությամբ:

Բանկային հիմնարկներում գտնվող դրամական միջոցները և այլ արժեքներ երաշխավորված են Հայաստանի Հանրապետության Կենտրոնական բանկի կողմից: Հանրապետության բանկային օրենսդրությունը նախատեսում է ավանդների գաղտնիություն, դրանց պաշտպանվածություն և վերադարձում առաջին իսկ պահանջով: Բանկերում եղած ավանդների մասին տեղեկություններ տրվում է միայն ավանդատուին կամ նրա օրինական ներկայացուցչին: Այսպիսի տեղեկություններ կարող են տրվել նաև դատարաններին, հետաքննության և նախաքննության մարմիններին այն ավանդների վերաբերյալ, որոնց կապակցությամբ քրեական գործ է հարուցված, կամ ըստ գործի նախատեսվում է գույքի բռնագրավում, որոշ քաղաքացիական գործերով, որոնք բխել են քրեական գործերից և կապված են ալիմենտի բռնագանձման հետ, նաև ամուսինների կողմից համատեղ ձեռք բերված գույքի բաժանման հետ: Ավանդների մասին տեղեկանքը տալիս են բանկային մարմինները: Քաղաքացիների ավանդների վրա կարող է դրվել կալանք՝ վերը նշված մարմինների կողմից

կայացված որոշման հիման վրա, կարող է բռնագանձվել դատարանի դատավճռով կամ նրա որոշմամբ[1]:

Բանկերը ավանդատուին դրամը տալիս են նրա առաջին իսկ պահանջով: Ավանդատուն իրավունք ունի տնօրինել ավանդը ինքը կամ իր վստահված անձի միջոցով: Ավանդների տնօրինման հատուկ կարգ է սահմանված անչափահաս ավանդատուների համար: Անչափահասը տնօրինում է ավանդը ինքնուրույն ընդհանուր հիմունքներով, եթե ավանդը ինքն է դրել: Սակայն անչափահասը իրավունք չունի կտակային կարգադրություններ անելու ավանդների վերաբերյալ[2]: Եթե անչափահասի անունով ավանդը պահված է մի այլ անձի կողմից, ապա այդ ավանդը տնօրինում են նրա ծնողները կամ ավանդատուի այլ օրինական ներկայացուցիչներ: 14 տարին լրանալուց հետո ավանդը տնօրինում է ինքը` անչափահասը, ծնողների կամ խնամակալների համաձայնությամբ:

Մեծ առավելություններ են տրված ավանդատուներին` ավանդը վերցնելու, երաշխավորագրեր տալու և կտակներ կազմելու: Ամբողջ ավանդը կամ նրա մի մասը վճարելու երաշխավորագիրը պարտադիր չէ հաստատել նոտարական գրասենյակում: Ավանդատուն դա կարող է գրել իր դիմային հաշվում, որը բացված է իրեն սպասարկող բանկում: Այդպիսի երաշխավորագիրը հաստատվում է ավանդատուի ստորագրությամբ և բանկի հսկիչի կողմից:

Ավանդատուն իրավունք ունի երաշխավորագիր կազմելու խնայդրամարկղից դուրս: Այս դեպքում այն հաստատվում է կա՛մ նոտարական գրասենյակում, կա՛մ ավանդատուի բնակվայրի տեղական ինքնակառավարման մարմինների, կա՛մ այն հիմնարկության, ձեռնարկության կողմից, որտեղ աշխատում է ավանդատուն: Ավանդի տնօրինման լիազորագիր թույլատրվում է ձևա-

[1] Տե'ս մանրամասն ՀՀ օրենքը «Բանկային գաղտնիքի մասին», հոդ. 10-րդ, 11-րդ (ՀՀ գործող օրենքների ժողովածու, 1995- 1999թթ., գիրք «Ա»), Ե, 1999:
[2] Տե՛ս մանրամասն Çàùèòà áàíêîâñêèõ âêëàä÷èêîâ: Ðîññèéñêèå ïðîáëåìû â ñâåòå ìèðîâîãî îïûòà. Ì., 1997, էջ 87:



կերպել մեկ կամ մի քանի անձանց վրա, որի ժամանակ ավանդատուն նշում է լիազորագրի ժամկետը, բայց ոչ ավելի 3 տարուց: Այդ ժամկետը լրանալուց հետո կարող է կնքվել նոր լիազորագիր: Լիազորագիրը առանց ժամկետի նշման կարող է գործել մեկ տարի: Եթե լիազորագիրը տրվում է անգրագետ ավանդատուի կողմից, ապա դա կարող է ստորագրվել այլ անձի կողմից: Այդպիսի լիազորագիրը բանկերը չեն գրանցում դիմային հաշվի կտրոններում:

Ավանդատուն իրավունք ունի իր ավանդը կտակել մեկ կամ մի քանի անձի, անկախ նրանից, թե նրանք նրա օրինական ժառանգներն են, թե` ոչ: Ավանդը կարելի է նաև կտակել իրավաբանական անձանց: Ավանդատուն կտակի կարգադրությունը գրանցում է դիմային հաշվի կտրոնում, խնայողական կամ հաշվարկային գրքույկում, առանձին թղթի վրա: Կտակ անող ավանդատուն պահպանում է կտակի տնօրինման իրավունքը: Ավանդատուի նոր կտակը փոխում է նախորդը: Եթե ավանդը կտակված չէ, ապա ավանդատուի մահվան դեպքում ավանդն անցնում է նրա օրինական ժառանգներին:

Բանկային ավանդները և դրանց եկամուտները ենթակա են հարկման: Եթե ավանդատուի մահից հետո չկան օրինական ժառանգներ, և ավանդը կտակված չի եղել, ապա այն ճանաչվում է տիրազուրկ և ֆինանսական մարմինների գրավոր պահանջի հիման վրա գրանցվում է որպես պետական եկամուտ[1]:

Բանկային համակարգի բոլոր այն մարմինները, որոնք ՀՀ Կենտրոնական բանկի թույլտվությամբ (լիցենզիա) կարող են իրականացնել խնայողական գործունեության կազմակերպում, որպես իրավաբանական անձինք քաղաքացիների և տնտեսական կազմակերպությունների հանձնարարությամբ կարող են իրականացնել ավանդների հետ կապված վճարա-հաշվարկային գործառնություններ: Ավանդատուների հանձնարարությամբ բանկերը կատարում են բնակարանի վարձի, կոմունալ ծառայու-

[1] Տե'ս ՀՀ օրենքը «Եկամուտների մասին»` ընդունված 1997թ. դեկտեմբերի 27-ին ԱԺ կողմից, հոդ. 6-րդ «Գ» կետ, Ե, 1998:

թյունների համար գումարների դուրս գրում: Ոչ կանխիկ հաշվարկները ավանդատուների համար ստեղծում են նշանակալի հարմարավետություններ: Նման հաշվարկների ներդրմամբ բարձրանում է բանկերի հեղինակությունը: Դրա հետ միաժամանակ մեծանում է ավանդատուների թիվը, աճում է ավանդների հոսքը: Ոչ կանխիկ հաշվարկների ձևերի զարգացումը և օգտագործումը հիմնված է կամավորության սկզբունքի վրա:

Ոչ կանխիկ հաշվարկման կարգով ավանդատուների դիմումի հիման վրա կարող են ընդունվել բանվորների և ծառայողների աշխատավարձը, պարգևատրման գումարները, գյուղատնտեսական ապրանքների համար գումարները, վճարվել են պետական նախապատրաստող կազմակերպություններին, հեղինակային հոնորարը, թոշակները, ալիմենտները և այլն[1]:

Աշխատավորների սպասարկման հեղինակային ձևերից է բանվորների և ծառայողների աշխատավարձի վճարումը բանկերի միջոցով: Այդ միջոցառումն ունի կարևոր նշանակություն: Դա կազմակերպությունների համար ստեղծում է գործունեության որոշակի արդյունավետ պայմաններ, որն արտահայտվում է նրանում, որ աշխատավարձն անմիջականորեն կազմակերպություններում բաժանելիս վերացվում են աշխատաժամանակի ավելորդ կորուստները: Ինչպես ցույց է տալիս փորձը, աշխատավարձի նոր հաշվարկի կիրառումը մի շարք կազմակերպություններում կրճատում է ուշացումների և պարապուրդների քանակը:

Կազմակերպություններում աշխատաժամանակի ռեզերվ է առաջացնում նաև արտահաստիքային գանձապահների ծառայությունից հրաժարվելը, որոնք աշխատավարձի օրերին զբաղվում էին աշխատավարձի բաժանմամբ: Այսպիսով, աշխատավարձի վճարման նոր ձևը նպաստում է աշխատանքի արտադրողականության աճին, ավանդատուների թվի մեծացմանը, կան-

[1] Տե՛ս Àðòåìîâ Í.Ì., Ñîâåðøåíñòâîâàíèå ïðàâîâîãî ðåãóëèðîâàíèÿ ñáåðåãàòåëüíîãî äåëà â ÑÑÑÐ êàê ñîñòàâíîãî çâåíà ôèíàíñîâîé ñèñòåìû (Òåîðåòè÷åñêèå âîïðîñû àäìèíèñòðàòèâíîãî è ôèíàíñîâîãî ïðàâà) Ì., 1986, էջ 52.



խիկ դրամական շրջանառության կազմակերպման կատարելագործմանը:

Բանկային մարմիններն ավանդատուների հանձնարարությամբ կատարում են անկանխիկ հաշվարկներ, կազմակերպությունների և հիմնարկությունների մատուցած ծառայությունների դիմաց նրանց են փոխանցում, օրինակ, բնակարանի, էլեկտրաէներգիայի, գազի, ջրի, հեռախոսի, ձեռք բերած ապրանքների համար վճարումներ: Ավանդատուն կարող է նաև հանձնարարել բանկին՝ վճարել հարկը անկանխիկ հաշվարկների՝ փոխանցել կյանքի ապահովագրության վճարները, բնակարանային շինարարական կոոպերատիվների վճարները, մանկական հիմնարկությունների վարձը և այլն: Ավանդատուները բանկերին այդպիսի հանձնարարություններ տալիս են մեկ անգամ երկարատև ժամկետով: Անկանխիկ հաշվարկների գործառությունները գրանցվում են ավանդատուի գրքույկում:

Հանրապետության տարածքում գործող «Արդշինինվեստ» և «ՀՀ խնայողական» բանկերի գործնական աշխատանքները վկայում են, որ առևտրային բանկերը ավանդատուի պատվերով կարող են կատարել նաև այլ գործառություններ: Յուրաքանչյուր ավանդատու իրավունք ունի հանձնարարել բանկին փոխանցել իր ողջ ավանդը կամ նրա մի մասը ուրիշ բանկ՝ իր անվամբ կամ այլ անձի անունով: Բացի այդ, ավանդը թույլատրվում է փոխանցել այլ խնայբանկի միջոցով՝ կանխիկ դրամով հանձնելու այլ անձի: Յուրաքանչյուր բանկ կանխիկ դրամ է ընդունում փոխանցման միջոցով և այն գրանցում է ավանդատուի հաշվին, որը բացվում է այլ բանկում: Փոխանցման գործառնությունները ձևակերպվում են՝ այլ բանկ ուղարկելով փոխանցման բլանկ: Մի բանկից այլ բանկ ուրիշ անձի անունով ավանդի փոխանցման ծառայության համար վարձ է գանձվում, որը հաշվվում է սահմանված տարիֆով: Պետք է նկատել, որ մի բանկից մյուսը ավանդ փոխանցելու համար՝ նույն ավանդատուի անունով, նրանից վարձ չի գանձվում: Ավանդատուն չի վճարում իր անունով ավանդի փոխանցման վարձը (անկախ գումարից և պահպանման

ժամանակից) նաև հետևյալ դեպքերում, երբ փոխանցման գործառությունները կատարվում են տվյալ վարչատերիտորիալ միավորի շրջանակներում:

Երբ ավանդատուն կատարում է լրացուցիչ վճարում իր հաշվին, որը բացված է ուրիշ բանկում, դրանով միաժամանակ ներկայացնում է ավանդագրքույկը: Քանի որ ավանդների փոխանցումը կատարվում է առանց կանխիկ դրամի, այդ իսկ պատճառով բանկերի այդպիսի գործառությունները կրճատում են կանխիկ դրամի շրջանառությունը:

Բանկերի գործունեության մեջ լայն տարածում ունեն նաև ակրեդիտիվային գործառությունները:

Բանկային ակրեդիտիվը անվանական փաստաթուղթ է, ըստ որի տվյալ քաղաքի կամ համայնքի բանկում պահված դրամը տրվում է ցանկացած քաղաքի կամ համայնքի բանկին: Բանկերը տալիս են ակրեդիտիվ ըստ ներկայացման, ինչպես նաև հիմնարկ-կազմակերպությունների անունով: Ակրեդիտիվը գործում է սահմանված ժամկետով՝ հաշված տրված օրից: Ժամկետանց ակրեդիտիվը կարող է վճարվել հետագա երեք տարիների ընթացքում:

Ակրեդիտիվի տերը դրած գումարի համար եկամուտ չի ստանում: Ակրեդիտիվներ տալիս են բանկային համակարգի մարմինները: Ակրեդիտիվները վճարվում են բոլոր բանկերի կողմից: Դրամը ըստ ակրեդիտիվի վճարվում է նրա տիրոջը, երբ ներկայացվում է ակրեդիտիվը, դրան կից հսկիչ կտրոնը և անձնագիրը կամ փոխարինող որևէ փաստաթուղթ:

Դրամը ըստ ակրեդիտիվի կարելի է տալ լիազորագրով այլ անձանց: Լիազորագրում ակրեդիտիվի տերը պետք է նշի ակրեդիտիվի համարը և սերիան, նաև՝ ակրեդիտիվ վճարման գումարի չափը: Ակրեդիտիվի տիրոջ ստորագրությունը հաստատում է նոտարական մարմինը: Հիվանդանոցներում, զինվորական մասերում գտնվող անձանց լիազորագրերը հաստատում են այդ հիմնարկությունների ղեկավարները:



Ակրեդիտիվային գործառությունները հանդիսանում են բնակչության դրամական գումարների կենտրոնացման և սպասարկման ձևերից մեկը: Ակրեդիտիվները քաղաքացիներին կարող են տրվել ծառայողական գործուղումների, շրջագայությունների, նաև առողջարաններ և հանգստյան տներ մեկնելու համար:

Ակրեդիտիվային գործառություններն ունեն կարևոր տնտեսական նշանակություն, քանի որ կրճատում են կանխիկ դրամի հոսքը:

## ԳԼՈՒԽ VIII

# ԱՐԺՈՒԹԱՅԻՆ ԵՎ ԱՐՏԱՐԺՈՒԹԱՅԻՆ ԲԱՆԿԱՅԻՆ ԳՈՐԾԱՌՈՒՅԹՆԵՐԻ ԻՐԱՎԱԿԱՆ ԿԱՐԳԱՎՈՐՈՒՄԸ

## §1. Արժութային կարգավորման հասկացությունը, դրա իրավական բովանդակությունը

Բանկային գործունեության իրավական կարգավորման համակարգի անբաժան մասն են կազմում արժութային գործառնությունները և այդ գործընթացում իրականացվող բանկային վերահսկողությունը, որ օրենսդրությամբ կատարելագործելու կարիք ունեն:

Արժութային գործառնությունները և նրա նկատմամբ վերահսկողությունը գործող բանկային օրենսդրությամբ վերապահված է Կենտրոնական բանկին:

«Արժույթ» տերմինը տնտեսագիտական և ֆինանսաիրավական գրականության մեջ ընկալվում է երկու իմաստով: Առաջին` որպես պետության դրամական միավոր, երկրորդ` որպես արտասահմանյան պետությունների դրամանիշ, որը կիրառվում է միջազգային հաշվարկներում, կարող է արտահայտվել նաև վարկային և հաշվարկային փաստաթղթերում որպես արտասահմանյան դրամական միավոր[1]: Գործնական կյանքում արժույթը մեծամասամբ օգտագործվում է երկրորդ իմաստով:

Պետությունների ներքին և արտասահմանյան արժույթների փոխհարաբերություններում կիրառվում են «փոխանակելի» և «ոչ փոխանակելի» արժույթ հասկացությունները, որոնցից երկրորդը օգտագործվում է մեկ պետության շրջանակներում, իսկ փոխանակային արժույթը ազատորեն փոխանակվում է արտա-

[1] Տե'ս Ôèíàíñîâîå è áàíêîâñêîå ïðàâî, ñëîâàðü- ñïðàâî÷íèê, Ì,, ''Öûôðà- Ì'', 1997, ñòð. 38, Ëèñåâñêèé Â.È., Âàëþòíûå ïðàâîîòíîøåíèÿ â ñèñòåìå ãîñóäàðñòâåííûõ ýêîíîìè÷åñêèõ îòíîøåíèé, Ì., 1990, էջ 92.



սահմանյան պետությունների արժույթով և միջազգային շուկայում հանդես է գալիս որպես վճարամիջոց[1]: Արժութային գործառնությունները և արժույթի նկատմամբ վերահսկողությունը Հայաստանի Հանրապետությունում ենթակա է իրավական կարգավորման: Արժութային գործառնությունների իրականացման ընդհանուր սկզբունքները, արժութային վերահսկողություն իրականացնող մարմինների իրավասությունները, իրավաբանական և ֆիզիկական անձանց իրավունքները և պարտականությունները արժութային արժեքների հետ կապված գործառնություններում, նաև նրանց պատասխանատվությունը արժութային օրենսդրության խախտման համար սահմանված է «Արժութային կարգավորման և արժութային վերահսկողության մասին» ՀՀ Ազգային ժողովի 2004թ. նոյեմբերի 24-ի օրենքով:

Ֆինանսաիրավական այս օրենքը սահմանում է Հայաստանի Հանրապետության արժույթի հասկացությունը, նրա կազմը, արժութային արժեքները, արտարժույթը, արժութային արժեքներով գործարքների իրականացումը, արժութային վերահսկողությունը, ինչպես նաև` արժութային օրենսդրության խախտումների համար պատասխանատվությունը:

«Արժութային կարգավորման և արժութային վերահսկողության մասին» օրենքի 3-րդ հոդվածի 2-րդ կետի համաձայն Հայաստանի Հանրապետության արժույթ է.

ա) Շրջանառության մեջ գտնվող և շրջանառությունից հանված կամ հանվող, սակայն փոխանակման ենթակա ՀՀ օրինական վճարամիջոցը` ՀՀ Կենտրոնական բանկի թողարկած թղթադրամների և մետաղադրամների տեսքով, մետաղադրամներն են (լումա) ու գանձատան տոմսերը:

բ) ՀՀ բանկերի, ՀՀ տարածքից դուրս գտնվող դրանց մասնաճյուղերի բանկային հաշիվներում և ավանդներում առկա միջոցները արտահայտված ՀՀ դրամով:

[1] Տե'ս Ôèíàíñîâîå è áàíêîâñêîå ïðàâî, ñëîâàðü-ñïðàâî÷íèê, նշ. աշխ. էջ 30 և 102:

գ) ՀՀ արժույթը որպես վճարման օրինական միջոց օգտագործելու մասին ՀՀ կառավարության և ՀՀ Կենտրոնական բանկի կողմից օտարերկրյա պետության համապատասխան մարմինների հետ կնքված համաձայնագրերի հիման վրա տվյալ պետության տարածքում գտնվող բանկերի և ֆինանսավարկային այլ կազմակերպությունների հաշիվներում առկա միջոցները՝ արտահայտված ՀՀ դրամով:

դ) ՀՀ դրամով վճարելիք վճարային փաստաթղթերը:

«Արժութային կարգավորման և արժութային վերահսկողության մասին» օրենքով նորովի սահմանվեց նաև արտարժույթի հասկացությունը:

Հայաստանի Հանրապետությունում արտարժույթ են համարվում՝

1. Օտարերկրյա մեկ կամ մի քանի պետությունների տարածքում շրջանառության մեջ գտնվող, նաև գործառնությունից հանված կամ հանվող, բայց փոխանակման ենթակա օրինական վճարամիջոց կապիտալը, թղթադրամներն ու մետաղադրամները:

2. Բանկային հաշիվներում և ավանդներում գտնվող օտարերկրյա պետությունների դրամական միավորներով և միջազգային դրամական միավորներով արտահայտված միջոցները և վճարման վճարային փաստաթղթերը:

Օրենքը անհասկանալիորեն շրջանցում է արժութային կուրս հասկացությունը, առանց որի գործնականում անհնար է արժույթի և արտարժույթի համեմատական փոխանակությունը: Բանկային իրավական գրականության մեջ արժութային կուրս հասկացությունը այսօր էլ տեղիք է տալիս բանավեճերի:

Արժութային կուրսը երկու և ավելի երկրների արժույթների կապվածության դրսևորում լինելուց բացի, կարծում եմ, որևէ երկրի, նրա կազմակերպությունների և քաղաքացիների արժութային փոխհարաբերություններն են այլ երկրի քաղաքացիների և կազմակերպությունների հետ: Արժութային կուրսը որոշվում է արժութային շուկայում եղած առաջարկի և պահանջարկի հիման վրա, սակայն այն կարող է հաստատագրվել պետության կողմից



միակողմանիորեն: Այս առումով արժութային կուրսը լինում է լողացող և հաստատագրված: Արժույթները լինում են ազատ (լրիվ փոխարկելի, օր.՝ ԱՄՆ-ի դոլարը, գերմանական մարկը և այլն), մասնակի (ներքին) փոխարկվող (օր.՝ՀՀ դրամը) և չփոխարկվող[1]:

Զարգացած մի շարք պետությունների արժութային կարգավորմանը և վերահսկողությանն ուղղված օրենսդրությունը, բացի ավանդական իրավական կատեգորիաներից, այսօր սահմանում է նաև արժութային ռիսկի հասկացությունը, որը չի լուսաբանվել մեր հանրապետության «Արժութային կարգավորման և արժութային վերահսկողության մասին» օրենքում: Կարծում ենք՝ պետությունների միջազգային ֆինանսաբանկային համագործակցության պահանջներից ելնելով՝ անհրաժեշտ է օրենքում կատարել արժութային ռիսկի լրացում այն համամասնությամբ, որ այն անմիջապես բխի արժույթի կուրսի բովանդակությունից և իրականում արտահայտի միջպետական ֆինանսական իրավահարաբերություններում արժութի կուրսին սպառնացող վտանգները: Այս իմաստով առաջարկում ենք արժութային ռիսկ ասելով հասկանալ արժութային կուրսի փոփոխությանը վտանգող հնարավոր կորուստները, որոնց հիմքը կազմում են դրամական պարտավորությունների ռեալ արժեքների փոփոխությունները:

Հանրապետության առևտրային բանկերի գործունեությունը ուսումնասիրելով՝ դժվար չէ նկատել, որ արժութային ռիսկերը այսօր առաջին հերթին պայմանավորված են բանկային գործառույթների ինտերնացիոնալացման և ապազգային բանկային միությունների ստեղծման հետ[2], որոնք, իրենց հերթին, օբյեկտիվ անհրաժեշտություն են ստեղծում վերանայելու և ժամանակի ոգուն համապատասխան մշակելու ազգային արժութի առանձնահատկություններն արտացոլող իրավական ակտեր:

---

[1] Տե՛ս Ôèíàíñîâîå è áàíêîâñêîå ïðàâî, ñëîâàðü-ñïðàâî÷íèê, Ýß. ³ßË. ¿ç 45-46, Ìàëîêîòèí Ë.Ñ., Ïîíÿòèå âàëþòíûõ öåííîñòåé â ñîâåòñêîì ôèíàíñîâîì ïðàâå (ìàòåðèàëû êîíôåðåíöèè ïî èòîãàì ÍÈÐ çà 1968ã.), Ñâåðäëîâñê, 1969, էջ 47.

[2] Տե՛ս Âàëþòíîå çàêîíîäàòåëüñòâî çàðóáåæíûõ ñòðàí, Ñá. “Íîðìàòèâíûõ àêòîâ”, Ì., 1991, էջ 74.

Օրենքի 3-րդ հոդվածի 8-րդ կետում սպառիչ թվարկված են արժութային գործառնությունները: Արժութային են այն գործառնություններն են, որոնք կապված են՝

ա) արժութային արժեքների սեփականության իրավունքի և գույքային այլ իրավունքների փոխանցման, որպես վճարման միջոց արտարժույթով վճարային փաստաթղթերի օգտագործման հետ,

բ) որպես վճարման միջոց՝ արտարժույթի, ինչպես նաև արտաքին տնտեսական գործունեություն իրականացնելիս Հայաստանի Հանրապետության արժույթի օգտագործման հետ,

գ) արժութային արժեքների՝ օտարերկրյա պետություններից ՀՀ-ի տարածք փոխադրման, ներմուծման և առաքման, ՀՀ տարածքից դրանց փոխադրման, արտահանման և առաքման հետ:



## §2. Արժութային վերահսկողության իրավական կարգավորումը

«Արժույթ» հասկացության անբաժան մասն է կազմում ***արժութային կարգավորումը,*** որը պատշաճ ուշադրության չի արժանացել գործող օրենքում, այն դեպքում, երբ օրենքը կրում է «Արժութային կարգավորում և արժութային վերահսկողություն» վերտառությունը: Մեր կարծիքով արժութային կարգավորումը պետական մարմինների գործունեությունն է՝ ուղղված արժութային գործառնությունների կանոնակարգմանը:

Հանրապետության արժութային հարաբերությունների կարգավորումն իրականացվում է երկու եղանակով՝ նորմատիվ և անհատական: Նորմատիվ իրավական կարգավորում իրականացվում է իրավական նորմերի միջոցով: Դրանք կարգավորում են արժույթի հետ կապված հասարակական հարաբերությունները: Անհատական կարգավորումը իրավական նորմերի կիրառումն է կոնկրետ հանգամանքների նկատմամբ, որոնք առաջացնում են կոնկրետ արժութային հարաբերությունների ծագում, փոփոխում և դադարեցում[1]:

«Արժութային կարգավորման և արժութային վերահսկողության մասին» օրենքով կարգավորված են արժութային հարաբերությունները: Ըստ այս օրենքի, արժութային իրավահարաբերության սուբյեկտներն են՝ իրավաբանական անձը, իրավաբանական անձի կարգավիճակ չունեցող ձեռնարկությունները և կազմակերպությունները, քաղաքացիները: Օրենքը հիշյալ սուբյեկտներին բաժանում է ռեզիդենտների և ոչ ռեզիդենտների:

Ռեզիդենտներ են համարվում՝

ա) ֆիզիկական անձինք (բացառությամբ անհատ ձեռնարկատերերի), որոնք հունվարի 1-ից մինչև դեկտեմբերի 31-ը ներառյալ տասներկուամյա ցանկացած ժամանակահատվածում

---

[1] Տե'ս մանրամասն Ս. Մուրադյան, Ֆինանսական իրավունք (ուսումնական ձեռնարկ), Ե, 2003, էջ 277: Ôèíàíñîâîå ïðàâî, ó÷, ïîä ðåä, Í,È, Õèìè÷åâà, Èçä. ÁÅÊ, 1996, էջ 456.

գտնվել են ՀՀ-ում 183 օր և ավելի կամ որոնց կենսական շահերի կենտրոնը գտնվում է ՀՀ-ում, ինչպես նաև՝ ՀՀ պետական ու տեղական ինքնակառավարման մարմիններում աշխատող, և ժամանակավորապես ՀՀ տարածքից դուրս գտնվող ֆիզիկական անձինք,

բ) ՀՀ պետական գրանցում ստացած, հաշվառված կազմակերպությունները և անհատ ձեռնարկատերը,

գ) օտարերկրյա պետություններում ՀՀ-ի դեսպանությունները, հյուպատոսական հիմնարկները, զորքերը,

դ) միջազգային կազմակերպություններում ՀՀ-ի մշտական ներկայացուցիչները:

Ոչ ռեզիդենտներ են.

ա) ռեզիդենտ չհամարվող ֆիզիկական անձինք, այդ թվում օտարերկրյա պետության պետական ծառայության մեջ գտնվող ՀՀ-ում ժամանակավորապես աշխատող ֆիզիկական անձինք,

բ) օտարերկրյա պետություններում գործող կազմակերպությունները, որոնք ստեղծված են օտարերկրյա պետությունների օրենսդրությանը համապատասխան և գտնվում են ՀՀ սահմաններից դուրս, սրանց մասնաճյուղերն ու ներկայացուցիչները, որոնք գտնվում են ՀՀ –ում,

գ) ՀՀ տարածքում գտնվող օտարերկրյա պետությունների դեսպանությունները, հյուպատոսական հիմնարկները և միջազգային կազմակերպությունները, զորքերը և այլ աշխատակիցներ, նրանց ընտանիքների անդամները,

դ) ոչ ռեզիդենտների մասնաճյուղերն ու ներկայացուցչությունները, որ գտնվում են ՀՀ –ում[1]:

Կապիտալ շարժման հետ կապված՝ արժութային գործառնությունները ռեզիդենտների կողմից իրականացվում են ՀՀ Կենտրոնական բանկի սահմանած կարգով: Ռեզիդենտներն իրավունք ունեն առանց սահմանափակումների արժութային արժեքներ փոխադրել, առաքել և ներմուծել՝ պահպանելով ՀՀ մաքսային օրենսդրությունը:

[1] Տե՛ս ՀՀ օրենքը «Արժութային կարգավորման և արժութային վերահսկողության մասին», հոդ. 3-րդ, ենթակետ 5-րդ և 6-րդ:



Ռեզիդենտներին պատկանող արտարժույթի և դրանով արտահայտված արժեթղթերը ՀՀ փոխադրելու, առաքելու և ներմուծելու կարգը սահմանում է ՀՀ Կենտրոնական բանկը, իսկ ռեզիդենտներին պատկանող թանկարժեք մետաղները, բնական թանկարժեք քարերը, գեղարվեստական և պատմական արժեք ներկայացնող արվեստի գործերն ու իրերը ՀՀ փոխադրելու, առաքելու և ներմուծելու կարգը՝ ՀՀ կառավարությունը:

Ռեզիդենտներն իրավունք ունեն ՀՀ ներքին արժութային շուկայում արտարժույթ վաճառել օրենքով սահմանված կարգով: Ֆիզիկական անձ հանդիսացող ռեզիդենտներն իրավունք ունեն (պահպանելով ՀՀ մաքսային օրենսդրությունը) հանրապետությունից փոխադրել, առաքել, արտահանել նախկինում հանրապետություն ներմուծված, փոխադրված կամ առաքված արժութային արժեքներ՝ դրանց ներմուծումը, փոխադրումը և առաքումը հաստատող հայտարարագրերում կամ այլ փաստաթղթերում նշված կարգով: Ոչ ռեզիդենտներն իրավունք ունեն լիազոր բանկերում արտարժույթով և ՀՀ արժույթով հաշիվներ ունենալ[1]:

Լիազոր բանկերի կողմից արտարժույթով և ՀՀ արժույթով հաշիվներ բացելու և վարելու կարգը սահմանում է ՀՀ Կենտրոնական բանկը: Ոչ ռեզիդենտներն իրավունք ունեն առանց սահմանափակումների ՀՀ փոխադրել, առաքել և ներմուծել արժութային արժեքներ՝ պահպանելով ՀՀ մաքսային օրենսդրությունը: Ոչ ռեզիդենտներն իրավունք ունեն ՀՀ Կենտրոնական բանկի կողմից սահմանված կարգով ՀՀ արժույթով արտարժույթ գնել կամ վաճառել: Ոչ ռեզիդենտները նաև իրավունք ունեն (պահպանելով ՀՀ մաքսային օրենսդրությունը) հանրապետությունից փոխադրել, առաքել և արտահանել արժութային արժեքներ, եթե դրանք ավելի վաղ փոխադրվել, առաքվել և ներմուծվել են ՀՀ կամ

[1] Տե՛ս մանրամասն Áàðàíîâà Ò.Ì., Áóäàíîâ Ä.À., Î ðåãóëèðîâàíèè îïåðàöèé ïðåçèäåíòîâ íà ðîññèéñêîì ôèíàíñîâîì ðûíêå (“Äåíüãè è êðåäèò”), 1998, N 1, էջ 28.

հանրապետությունում ծեռք են բերվել ՀՀ օրենսդրությանը համապատասխան:

Հայաստանի Հանրապետությունում արժութային կարգավորման և վերահսկողության բացառիկ լիազորություններ ունի Կենտրոնական բանկը, որը «ՀՀ Կենտրոնական բանկի մասին» օրենքի 48-րդ հոդվածով սահմանված կարգով հանդիսանում է ՀՀ արժութային գործակալը և լիազորված է իրականացնելու արժութային քաղաքականությունը: Արժութային կարգավորման ոլորտում Կենտրոնական բանկը իրականացնում է արժութային գործառնությունների, արժույթի նկատմամբ հայկական դրամի փոխարժեքի որոշման, արտարժույթի առք ու վաճառքի գործառնությունների լիցենզավորման կարգը: «Կենտրոնական բանկի մասին» օրենքի 49-րդ հոդվածում տրված են նրա լիազորությունները արժութային կարգավորման գործընթացում: Կենտրոնական բանկը սահմանում է արժութային գործառնությունների իրականացման կարգը և պայմանները, ընդունում է արժութային գործառնությունները կարգավորող որոշումներ և կանոններ, հսկողություն է իրականացնում և կարգավորում է արժութային գործառնություններ կատարող դիլերների, ներառյալ բանկերի գործունեությունը, սահմանում է արժույթների, դիլերների, բանկերի արժութային տնօրինման նորմատիվները, ճշգրտում հայկական դրամի փոխարժեքի որոշման մեթոդները:

Կենտրոնական բանկի մասին օրենքի 48 և 49-րդ հոդվածները սահմանում են նրա, որպես ՀՀ արժութային գործակալի և արտարժութային կարգավորողի վերահսկողական լիազորությունները: Իրավական այս ակտում ուղղակի ասված է, որ Կենտրոնական բանկը իրավունք ունի հսկել և կարգավորել արժութային գործառնություններ իրականացնող դիլերների, ներառյալ բանկերի գործունեությունը: Իրավական այս նորմը ունի կտրական բնույթ: Հետևաբար, ՀՀ Կենտրոնական բանկը դրամաշրջանառության գործընթացում իրականացնելով օրենքով իրեն վերապահված հսկողության լիազորությունները այս հարաբերություններում հանդես է գալիս երկակի կարգավիճակով՝ որպես պետական մարմին և որպես քաղաքացիական շրջանառության մասնակից՝ իրավաբանական անձի կարգավիճակով: Որպես վերահսկողություն իրականացնող պետական մարմին, իրեն վերապահված լիազորությունների շրջանակներում հաշվարկային խախտումներ հայտնաբերելիս միակողմանիորեն կարող է փոփոխություններ մտցնել կազմակերպությունների հաշվարկային փոխհարաբերություններում, բանկային համակարգի այս կամ այն մարմնի միջոցով կասեցնել կամ դադարեցնել հաշվարկների իրականացումը[1]:



Արժութային գործառնությունների իրավական կարգավորման անբաժանելի մասն է կազմում արժութային վերահսկողությունը:

Արժութային վերահսկողության իրավական կարգավորումը սահմանված է ինչպես «Արժութային կարգավորման և արժութային վերահսկողության մասին», «ՀՀ Կենտրոնական բանկի մասին» օրենքներով, այնպես էլ ՀՀ գործող վարչական, քրեական, մաքսային և քաղաքացիական օրենսդրությամբ: Արժութային վերահսկողության նպատակն է ապահովել արժութային օրենսդրության պահպանումը արժութային արժեքներով գործառնություններ իրականացնելիս:

Արժութային վերահսկողության հիմնական ուղղություններն են՝ ա) գործող օրենսդրությանը արժութային գործառնությունների համապատասխանության և դրանց համար անհրաժեշտ արտոնագրերի (լիցենզիաների) առկայության ստուգումը, բ) պետության հանդեպ ռեզիդենտների պարտականությունների, նաև ՀՀ ներքին արժութային շուկայում արտարժույթի, թանկարժեք մետաղների, բնական թանկարժեք քարերի, գեղարվեստական և պատմական արժեք ներկայացնող արվեստի գործերի ու իրերի վաճառքի գծով պարտավորությունների կատարման ստուգումը, գ) արտարժույթով վճարումների օրինականության ստուգումը, դ) արտարժութային գործառնությունների և ՀՀ արժույթով (դրամով)

[1] Տե՛ս մանրամասն Ìåëüíèêîâ Â.Í., Âîïðîñû âàëþòíîãî ðåãóëèðîâàíèÿ è âàëþòíîãî êîíòðîëÿ â ïåðèîä ôèíàíñîâîãî êðèçèñà (“Äåíãè è êðåäèò”), 1998, N 12, էջ 37.

արտահայտված արժեթղթերով ոչ ռեզիդենտների հաշվառման և հաշվետվության լրիվության ստուգումը[1]:

«ՀՀ արժութային կարգավորման և արժութային վերահսկողության մասին» օրենքի 9-րդ հոդվածում վերահսկողության մարմիններ են ճանաչված Կենտրոնական բանկը, ՀՀ կառավարությունը և պետական ֆինանսների կառավարման լիազոր մարմինը: Արժութային վերահսկողություն են իրականացնում նաև գործակալները, որոնց լիազորությունները սահմանվում են արժութային վերահսկողության մարմինների կողմից: Արժութային վերահսկողության գործակալներ են ՀՀ Կենտրոնական բանկի կողմից լիազորված բանկային մարմինները, որոնք իրենց գործունեության համար հաշվետու և պատասխանատու են Կենտրոնական բանկին: Արժութային վերահսկողության գործակալները օրենքով սահմանված կարգով Կենտրոնական բանկին, կառավարությանը և պետական ֆինանսական կառավարման մարմիններին պարբերաբար հաշվետվություններ են ներկայացնում իրենց կողմից իրականացված գործառնությունների, այդ թվում՝ արտարժույթի տնօրինման չափի գծով: Արժութային վերահսկողության մարմինները իրենց վերապահված լիազորությունների շրջանակներում ընդունում են իրավական ակտեր, որոնց կատարումը պարտադիր է արժութային իրավահարաբերությունների սուբյեկտների համար:

Արժութային հարաբերությունները կարգավորող իրավական ակտերի պահանջները ընդհանրացնելիս դժվար չէ նկատել, որ արժութային վերահսկողությունը իրականացվում է.

ա) հանրապետությունում ռեզիդենտների և ոչ ռեզիդենտների կողմից կատարվող արժութային գործառնությունների, ՀՀ օրենսդրությանը այդ գործառնությունների համապատասխանության.

բ) ՀՀ-ում ռեզիդենտների և ոչ ռեզիդենտների արժութային գործառնությունների օրինականության.

[1] Տե՛ս մանրամասն Áàíêîâñêîå ïðàâî Ðîññèéñêîé ôåäåðàöèè (îñîáåííàÿ ÷àñòü), ïîä ðåä. Ïðîô. Ã.À. Òîñóíÿíà, òîì 2, Ì., “Þðèñòü”, 2002, էջ 388-389.



գ) ռեզիդենտների և ոչ ռեզիդենտների կողմից իրականացվող արժութային գործառնությունների հաշվառման, հաշվետվության և փաստաթղթերի լրացման կարգի ու ձևերի նկատմամբ[1]:

Արժութային հարաբերությունները հանրապետության բանկային գործունեության մի մասն են, որոնք դրսևորվում են դրամական հարաբերությունների տեսքով, ձևավորվում են ինչպես ներպետական, այնպես էլ պետության միջազգային բանկային գործունեության ոլորտում:

Արժութային բոլոր հարաբերություններին ներհատուկ է բանկային իրավական կարգավորումը, որի հետևանքով դրամական հարաբերությունների այս խումբը վեր է ածվում բանկային հարաբերությունների:

Որպես իրավական հարաբերությունների տարատեսակ արժութային իրավահարաբերությունները, նրանց հասցեագրումները ապահովում են պետական հարկադրանքի ուժով: Արժութային իրավահարաբերությունները կարգավորող ցանկացած իրավական ակտի խախտումը, ելնելով հասարակական վտանգավորության աստիճանից, կարող է առաջ բերել կարգապահական, նյութական, վարչական, ինչպես նաև քրեական հարկադրանքի ներգործության միջոցներ:

Այսօր արժութային օրենսդրության խախտումների պատասխանատվությունը սահմանված է ինչպես 2004թ. նոյեմբերի 24-ի «Արժութային կարգավորման և արժութային վերահսկողության մասին» այնպես էլ «ՀՀ Կենտրոնական բանկի մասին» 1996թ. հունիսի 30-ին ընդունված օրենքներով:

Այս իրավական ակտերում սահմանված են արժութային այն գործառնությունները, որոնց իրականացման համար արժութային վերահսկողության մարմինները իրավունք ունեն կիրառելու նյութական, վարչական պատասխանատվության միջոցներ կամ համապատասխան հայցերի միջոցով պահանջել վեճերի դատական լուծում: Այսպես, «Արժութային կարգավորման և արժութա-

[1] Տե՛ս մանրամասն Áàíêîâñêîå ïðàâî Ðîññèéñêîé ôåäåðàöèè (îñîáåííàÿ ÷àñòü), òîì 2, նշ. աշխ. էջ 389:

յին վերահսկողության մասին» օրենքի 10-րդ հոդվածում սահմանված են արժութային գործառնությունների խախտման օբյեկտները, որոնց համար սահմանված է պատասխանատվություն: Արժութային գործառնությունների խախտումների գործնական ուսումնասիրության հիման վրա, կարծում ենք, պայմանականորեն կարելի է արժութային իրավախախտումները դասակարգել ըստ օբյեկտների: Արժութային իրավահարաբերության օբյեկտներ են`

ա)ՀՀ տարածքում ոչ ռեզիդենտների կողմից ՀՀ արժույթ ձեռք բերելու և օգտագործելու կարգը խախտելը,

բ) ռեզիդենտների և ոչ ռեզիդենտների կողմից ՀՀ արժույթով ու դրամով արտահայտված արժեթղթերը արտահանման փոխադրելը և առաքման կարգը խախտելը,

գ) ռեզիդենտների և ոչ ռեզիդենտների կողմից ՀՀ ներքին շուկայում արտարժույթ գնելու և վաճառելու կարգը խախտելը,

դ) ՀՀ արտարժույթի առուծախի կարգը խախտելը,

ե) ռեզիդենտներ հանդիսացող ձեռնարկությունների, կազմակերպությունների կողմից ստացվող օտարերկրյա արժույթը ՀՀ տարածքում գտնվող լիազոր բանկերում ունեցած նրանց հաշիվներում չհաշվեգրելը,

զ) ռեզիդենտների` օտարերկրյա բանկերում արտարժույթով հաշիվներ ունենալու` ՀՀ Կենտրոնական բանկի սահմանած կարգը խախտելը,

է) ռեզիդենտների կողմից կապիտալի շարժման հետ կապված արժութային գործառնությունները խախտելը:

Արժութային կարգավորման օրենսդրությունը լիազոր բանկերի և ռեզիդենտների թույլ տված խախտումների համար սահմանում է հետևյալ պատժամիջոցները: Մասնագիտացած անձանց կողմից արժութային հարաբերությունները կարգավորող օրենքների ու դրանց հիման վրա ընդունված իրավական ակտերի պահանջները առաջին անգամ խախտելու դեպքում Կենտրոնական բանկը տալիս է նախազգուշացում խախտումը վերացնելու համար, կամ նշանակում է տուգանք նվազագույն աշխատավարձի



հիսնապատիկի չափով: Երկրորդ անգամ խախտելու դեպքում կասեցնում է այդ անձանց գործունեության լիցենզիան կամ նշանակում է տուգանք խախտման գումարի չափով: Գումարի բացակայության դեպքում նշանակում է տուգանք նվազագույն աշխատավարձի հարյուրապատիկի չափով: Արժութային հարաբերությունները կարգավորող օրենքների և այլ իրավական ակտերի պահանջները երեք և ավելի անգամ խախտելու համար Կենտրոնական բանկը նշանակում է տուգանք նվազագույն աշխատավարձի հինգհարյուրապատիկի չափով կամ ուժը կորցրած է ճանաչում գործունեության լիցենզիան:

Ինչ վերաբերում է արժութային վերահսկողություն իրականացնող պետական ֆինանսների լիազոր մարմնին, ապա վերը հիշատակված խախտումների դեպքում որպես պատասխանատվություն կիրառող սուբյեկտ հանդես է գալիս այդ մարմինը:

Օրենսդրությունը կարգավորում է նաև ռեզիդենտ և ոչ ռեզիդենտ անձանց պատասխանատվության կանչելու կարգը, որոնք դուրս են ՀՀ Կենտրոնական բանկի և պետական ֆինանսների լիազոր մարմնի իրավասությունից: Օրենքի 10-րդ հոդվածի 5-րդ կետում նշված է, որ ռեզիդենտ և ոչ ռեզիդենտ անձանց կողմից հիշյալ իրավական ակտերի պահանջների խախտման համար կառավարության լիազոր մարմինը կիրառում է Վարչական իրավախախտների վերաբերյալ ՀՀ օրենսգրքով սահմանված պատասխանատվության միջոցները:

# ԳԼՈՒԽ IX

## ԲԱՆԿԱՅԻՆ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԱՅԼ ԳՈՐԾԱՌՈՒՅԹՆԵՐԻ ԻՐԱՎԱԿԱՆ ԿԱՐԳԱՎՈՐՈՒՄԸ

### §1. Ֆինանսական լիզինգի հասկացությունը, դրա քաղաքացիական և ֆինանսա-իրավական կարգավորումը

Հայաստանի Հանրապետությունում շուկայական տնտեսության ու սեփականության տարբեր ձևերի արմատավորումը, տնտեսվարման պայմանների արմատական փոփոխությունները, նաև ՀՀ փորձերը՝ ինտեգրվելու համաշխարհային տնտեսությանը անհրաժեշտություն են առաջացնում վերանայել ընդլայնված վերարտադրության ընդհանուր հայեցակարգը և ՀՀ տնտեսությունում ներդնել տնտեսավարման ոչ ավանդական մեթոդներ:

Տնտեսագիտական և իրավաբանական գրականության մեջ բազմիցս նշվել է, որ դրությունից ելք գտնելու տարբերակներից մեկը տնտեսավարող սուբյեկտների հիմնական միջոցների նորացման ու բարեփոխման, առաջավոր տեխնոլոգիաների արմատավորման նպատակով ներդրումների ներգրավումն է: Նման ներդրումների շարքում յուրահատուկ տեղ է գրավում ֆինանսական վարձակալությունը, որը մեր հանրապետությունում կյանքի է կոչվում առևտրային բանկերի գործունեության շնորհիվ: Լիզինգային հարաբերությունները ծագում են ֆինանսական վարձակալության պայմանագրի հիման վրա, որը համարվում է երկարատև օգտագործման գույքը ժամանակավոր տիրապետման ու օգտագործման հանձնելու եղանակ և որը կարելի է դասել ժամանակակից բանկային գործառնությունների թվին:

Լիզինգը նորություն չէ հասարակական արտադրության կազմակերպման գործընթացում: Մարդկության պատմության վաղ անցյալում այն լայնորեն կիրառվել է Արևելքի և Անտիկ աշխարհի զարգացած երկրներում: Գույքի վարձակալության, ապա հետագայում ֆինանսական լիզինգի ծագման ու զարգացման պատմության հետ ծանոթանում ենք «Եվրոպական լիզինգի դպրոց» գրքում, որտեղ ամենայն մանրամասնությամբ բացահայտված են լիզինգի ծագման պատճառները և ընդգծված, որ 2000 տարի մ.թ.ա. շումերները գյուղատնտեսական արտադրության կազմակերպման համար լայնորեն օգտագործել են գյուղատնտեսական արտադրության միջոցների՝ գործիքների, հողի, ջրային ռեսուրսների, արոտավայրերի ձեռք բերման վարձակալության պայմանագիրը:



Լիզինգը, որպես իրավական կատեգորիա կիրառման դրույթներ է պարունակում Համուրապի օրենքներում, որոնք արտացոլում են հասարակության տնտեսական կապերը մ.թ.ա. 1775-1750 թվականներին սահմանելով վարձակալության բոլոր հնարավոր տեսակները, վարձավճարի չափերը, նաև գրավի միջոցով վարձակալության պայմանագրի կնքման կարգը:

Հռոմեական իրավունքը, անդրադառնալով գույքի վարձակալության ինստիտուտին, որպես սկզբունք արձանագրում է վարձակալությունը առանց սեփականության իրավունքի: Ժամանակին Արիստոտելը, ելնելով այս սկզբունքի էությունից, գրում է, որ հարստությունը ոչ թե գույքի տիրապետումն է սեփականության իրավունքով, այլ նրա օգտագործումը[1]:

Հետագայում՝ հասարակության զարգացման տնտեսական և պետական կացութաձևերին համապատասխան՝ էական փոփոխությունների ենթարկվեցին գույքի վարձակալության պայմանագրային հարաբերությունները, երևան եկան ոչ միայն ներպետական, այլև միջազգային իրավական ձևեր, որոնց կիրառումը այսօր ահռելի չափերի է հասել՝ հատկապես կապված բանկային գործունեության կազմակերպման գործույթների հետ:

Լիզինգը, որ բավականին լայն տարածում է գտել զարգացած շուկայական տնտեսության երկրներում, ՀՀ համար որակապես նոր տնտեսաիրավական հասկացություն է: «Լիզինգ» բառը անգլերեն

[1] Տե՛ս մանրամասն Í.Ä. Ýðíàøâèëè, նշ. աշխ. էջ 420-421:

ծագում ունի: Հասկացության հիմքում ընկած է անգլերեն «to lease» բառը, որը նշանակում է «վարձակալել», կամ «վարձակալության հանձնել»[1]:

Լիզինգը ֆինանսավարկային, ապրանքադրամական հարաբերությունների համալիր է, ձեռնարկատիրական գործունեության տեսակ, արտադրական գործունեության ֆինանսավորման եղանակ, ներդրումների իրականացման պայմանագրային ձև, որն ունի բարդ կառուցվածք: Այն միաժամանակ պարունակում է վարկային - ինվեստիցիոն, առևտրական և վարձակալական հարաբերությունների էական հատկանիշներ, որոնք փոխթափանցելով` կազմում են բանկային գործունեության կազմակերպաիրավական որակապես նոր ձև, որի դեպքում տնտեսավարող մեկ սուբյեկտը (լիզինգատուն) որոշակի վաճառողից մեկ այլ սուբյեկտի (լիզինգառուի) համար ի սեփականություն ձեռք է բերում վերջինիս կողմից մատնանշված սարքավորումը կամ ձեռնարկատիրական գործունեության իրականացման համար անհրաժեշտ այլ գույք և պահպանելով սեփականության իրավունքն այդ գույքի նկատմամբ` առանձին պայմանագրի հիման վրա այն հանձնում է լիզինգառուի ժամանակավոր տիրապետմանն ու տնտեսական նպատակներով օգտագործմանը` նրանից պարբերաբար ստանալով պայմանագրով նախատեսված որոշակի վճարներ: Ընդ որում, պայմանագրի գինը որոշվում է այնպես, որ օգտագործման հանձնված գույքի լրիվ արժեքը հետ վերադարձվի նշված պարբերական վճարումների միջոցով: Այդ հարաբերությունների վերջնական փուլում օգտագործման հանձնված գույքը, որպես կանոն, դառնում է այն օգտագործող անձի սեփականությունը` նախապես որոշված գումարը վճարելու պայմանով: Ընդ որում, լիզինգառուի կողմից գույքը ձեռք բերելիս հաշվի են առնվում արդեն վճարված պարբերական մուծումները:

Ֆինանսական վարձակալության նշանակությունը մեծ է շուկայական տնտեսության պայմաններում: Ձեռնարկատիրական գործունեությամբ զբաղվող անձինք կարող են առանց զգալի միջոցների ներդրման, առանց վարկեր հայթայթելու և հետագայում դրանք վերադարձնելու հետ կապված ֆինանսական լարվածության հնարավորություն ստանալ ավելացնել, նորացնել իրենց արտադրական հզորությունները: Լիզինգը էական խթան է նաև ՀՀ-ում փոքր և միջին բիզնեսի զարգացման համար, քանի որ ֆինանսական զգալի միջոցների չտիրապետող անձինք լիզինգի միջոցով կարող են ձեռք բերել սարքավորումներ և առևտրական գործունեության իրականացման համար անհրաժեշտ այլ գույք:

[1] Տե'ս ծ.ժ. ՆՐՎՈՔԶՈսՌ, նշ. աշխ. էջ 423:



Հայաստանի Հանրապետության նախկին քաղաքացիական օրենսդրության մեջ չկային լիզինգային հարաբերությունները կարգավորող հատուկ իրավական նորմեր: Լիզինգային գործարքներ կարող էին կնքվել որպես պայմանագրեր, որոնք թեև նախատեսված չէին քաղաքացիական օրենսդրությամբ, սակայն չէին հակասում նրան: Հայկական ԽՍՀ քաղաքացիական օրենսգրքի` գույքային վարձակալությանը վերաբերող հոդվածները, որոնք կարող էին լիզինգային հարաբերությունների նկատմամբ կիրառվել համեմատությամբ, չէին ապահովում ֆինանսական վարձակալության պայմանագրի կողմերի փոխհարաբերության լիարժեք կարգավորումը: Թերևս դա է պատճառներից մեկը, որ լիզինգի` համաշխարհային բանկային պրակտիկայում լայնորեն կիրառվող ինստիտուտը, ՀՀ –ում ընդհանրապես չէր գործում:

Լիզինգային պայմանագրային հարաբերությունները ՀՀ-ում առաջին անգամ քաղաքացիաիրավական կարգավորում ստացան 1998թ. մայիսի 5-ին ընդունված ՀՀ քաղաքացիական օրենսգրքում: Հայաստանի Հանրապետությունը միացել էր 1998թ. նոյեմբերի 25-ին Մոսկվայում ԱՊՀ երկրների միջև կնքված «Միջպետական լիզինգի մասին» կոնվենցիային: Վերջինիս դրույթները լիովին համապատասխանում են 1988թ. Օտավայում ստորագրված «Միջազգային ֆինանսական լիզինգի մասին» կոնվենցիային, որին ՀՀ-ն, ի տարբերություն ԱՊՀ-ի մի շարք երկրների, չի միացել:

Լիզինգային հարաբերությունները ծագում են ֆինանսական վարձակալության պայմանագրի հիման վրա, որը դասվում է գույքը ժամանակավոր հատուցելի օգտագործման հանձնելու` վարձակա-

լության պայմանագրերի թվին: Միաժամանակ ֆինանսական վարձակալության պայմանագիրը համարվում է գույքը ժամանակավոր օգտագործման հանձնելու պարտավորության ինքնուրույն տեսակ:

Քաղ. օր. 677-րդ հոդվածի համաձայն «Ֆինանսական վարձակալության պայմանագրով՝ վարձատուն պարտավորվում է վարձակալի նշած գույքը սեփականության իրավունքով ձեռք բերել վարձակալի կողմից որոշված վաճառողից և վճարով հանձնել վարձակալի ժամանակավոր տիրապետմանը՝ ձեռնարկատիրական նպատակներով օգտագործելու համար»: Ֆինանսական վարձակալության ապայմանագիրը կարգավորվում է ՀՀ քաղաքացիական օրենսգրքի 677- 684-րդ հոդվածներով, ինչպես նաև՝ վարձակալության, պարտավորությունների և հատկապես պայմանագրերից բխող պարտավորությունների մասին քաղաքացիական օրենսգրքի ընդհանուր դրույթներով:

ՀՀ քաղաքացիական օրենսգրքում ֆինանսական վարձակալության պայմանագրին տրված բնորոշման մեջ ամրագրվել են ֆինանսական վարձակալության պայմանագրի այնպիսի էական հատկանիշներ, որոնց համաձայն լիզինգի պայմանագիրը հատուցելի պայմանագիր է: Օրենքն ուղղակի ընդգծում է, որ վարձատուն պարտավորվում է վճարի դիմաց վարձակալի տիրապետմանը հանձնել գույքը՝ օգտագործելու համար: Լիզինգի պայմանագիրը օրենքով պահանջվող ձևով ամրագրել է կողմերի իրավունքները և պարտականությունները գույքը վարձակալին ժամանակավոր օգտագործման հանձնելու: Ինչ մնում է կողմերի միջև իրավունքների և պարտականությունների բաշխմանը, ապա լիզինգի պայմանագիրը դասվում է փոխադարձ պայմանագրերի թվին, որոնց վրա տարածվում են բանկային կանոնները: Ձեռնարկատիրական գործունեության ոլորտում մեկ սուբյեկտի ստանձնած պարտականությունը՝ կատարել գույքային բնույթի որոշակի գործողություն, հատուկ նշանակություն ունի նրա կողմից կատարված առաջարկության հիման վրա նրա հետ հարաբերությունների մեջ մտնելու նպատակ ունեցող սուբյեկտների համար: Ձեռք բերված համաձայնության խախտումը կարող է երկու կողմերի համար էլ անցանկալի



հետևանքներ առաջացնել: Այդ իսկ պատճառով ձեռնարկատիրական գործունեության ոլորտում գույքային հարաբերությունները կարգավորող պայմանագրերով, որպես կանոն, պարտավորություններ են առաջանում պայմանագրի բոլոր էական կետերի շուրջ համաձայնության գալու պահից: Լիզինգի պայմանագիրը կնքված է համարվում պայմանագրի էական պայմանների շուրջ կողմերի համաձայնության կայացման պահից: Որպես իրավաբանական փաստ, դա լիզինգային իրավահարաբերության ծագման հիմք է հանդիսանում՝ կնքման պահից: Լիզինգը նպատակաուղղված և ձեռնարկատիրական պայմանագիր է: Վարձատուն ի սեփականություն ձեռք է բերում վարձակալի նշած գույքը՝ վերջինիս ժամանակավոր տիրապետմանը և օգտագործմանը հանձնելու նպատակով: Ժամանակավոր օգտագործման հանձնված գույքը պետք է ծառայի միայն ձեռնարկատիրական նպատակների: Պայմանագրերի այս տեսակի առանձնահատկությունըայն է, որ վարձատուն նպատակ ունի ֆինանսավորել վարձակալին գույք ձեռք բերելու գործում դրամական ներդրումներ կատարելու միջոցով, որպիսի գործընթացը մեծամասամբ ունի ֆինանսաիրավական կարգավորում:

Լիզինգի պայմանագրում վարաձատուի առևտրային ռիսկը սահմանափակ է: Նյութական կորստի կամ վնասի մասին խոսք չի կարող լինել, քանի որ վարձակալության տրված օբյեկտները մնում են վարձատուի սեփականություն, ինչն էլ նրան հնարավորություն է տալիս կոնտրագենտի կողմից իր պարտականությունները չկատարելու կամ ոչ պատշաճ կատարելու դեպքում ցանկացած ժամանակ հետ պահանջել պայմանագրի առարկան:

Լիզինգի պայմանագիրը տարբերվում է քաղաքացիաիրավական՝ գույքային վարձակալության, առուծախի, հանձնարարության, փոխառության և վարկային պայմանագրերից, քանի որ այստեղ հարաբերությունները մեծամասամբ կարգավորվում են բանկային իրավունքի կանոններով:

Լիզինգի պայմանագրի մեկ կողմը՝ բանկը, վարձակալի ժամանակավոր օգտագործմանն է հանձնում հատուկ այդ նպատակով ձեռք բերված, այլ ոչ թե արդեն օգտագործման մեջ եղած գույք: Այս

առանձնահատկությունը հիմք է տալիս սահմանազատել լիզինգը գույքային վարձակալության պայմանագրից և դիտել այն որպես գույքը ժամանակավոր օգտագործման հանձնելու պայմանագրերի ինքնուրույն տեսակ: Լիզինգի ֆինանսաիրավական առանձնահատկությունների մասին ճիշտ պատկերացում կազմելու համար անհրաժեշտ է լիզինգային գործընթացը բաժանել առանձին փուլերի:

Քաղ. օր. 677-րդ հոդվածում ամրագրված բնորոշումից երևում է, որ լիզինգը ենթադրում է 3 սուբյեկտների՝ վարձատուի (լիզինգատուի), վարձակալի (լիզինգառուի) և վաճառողի մասնակցություն: Լիզինգային գործարքի կնքման առաջին փուլում ապագա լիզինգառուն դիմում է բանկին՝ ֆինանսական վարձակալության պայմանագիր կնքելու առաջարկով՝ նշելով իրեն անհրաժեշտ սարքավորումը, այն վաճառող սուբյեկտին, նաև ներկայացնելով համապատասխան առևտրային պլան: Փոխադարձ համաձայնության գալու դեպքում կնքվում է լիզինգի մասին պայմանագիր, որի հիման վրա լիզինգառուն գնում է պայմանագրում նշված գույքը նշված վաճառողից: Առևտրային բանկը դառնալով ձեռք բերված գույքի սեփականատեր՝ այդ գույքը տրամադրում է լիզինգառուին՝ օգտագործման:

Քաղաքացիական օրենսդրության և ֆինանսական լիզինգը կարգավորող իրավանորմերի վերլուծությունից պարզ երևում է, որ լիզինգ կամ «լիզինգային գործառնություն» հասկացությունն ավելի լայն է, քան «լիզինգի պայմանագիր» հասկացությունը: Լիզինգի պայմանագիրը «լիզինգ» տնտեսական կատեգորայի մի մասն է: Գործնականում ֆինանսական լիզինգին վերաբերող բանկային գործառնությունները հիմնականում իրականացնում են բանկերը միանձնյա, առանց լիզինգառուի կամքը հաշվի առնելու, որը սահմանված է բանկային գործող օրենսդրությամբ:

Պետք է նկատել, որ բանկը վճարելով վաճառողից ձեռք բերվող գույքի համար և ըստ էության չմասնակցելով առուծախի պայմանագրի կատարմանը՝ իրականացնում է միայն իր և լիզինգառուի ապագա վարձակալական հարաբերությունների ֆինանսավորումը:



Այստեղից էլ վարձակալության այս տեսակի անվանումը՝ ֆինանսական: Ֆինանսական վարձակալությունը փաստորեն վարձատուի կողմից վարձակալին ծառայություն մատուցելու իրավական եղանակ է[1]: Գործարքի ֆինանսական բնույթի մասին է վկայում նաև այն փաստը, որ ձեռք բերվող գույքը լիզինգատուին ըստ էության պետք չէ այն ձեռք է բերվում միայն լիզինգառուին փոխանցելու նպատակով:

Վերլուծելով լիզինգային իրավահարաբերության սուբյեկտների կազմը՝ անհրաժեշտ է ուշադրություն դարձնել այն հանգամանքի վրա, որ լիզինգի առանձնահատկությունը տնտեսական առումով առաջացնում է լիզինգի առանձնահատկություն նաև իրավական առումով, մասնավորապես լիզինգային իրավահարաբերության սուբյեկտների սուբյեկտիվ իրավունքների ու պարտականությունների հարցում, որտեղ հիմնականում գերիշխում է լիզինգառու բանկի կամքը: Նրանց միջև իրավունքների ու պարտականությունների բաշխումն այնպիսին է, որ կասկած է առաջանում լիզինգի պայմանագիրը իբրև երկկողմ գործարք դիտելու հարցում[2]: Դրա մասին է վկայում նաև այն հանգամանքը, որ Քաղ. օր.-ի 677-րդ հոդվածի համաձայն լիզինգի պայմանագրով կարող է նախատեսվել, որ վաճառողի և ձեռք բերվող գույքի ընտրությունը կատարում է վարձատուն (լիզինգատուն): Ուրեմն, լիզինգի պայմանագրի կնքման պահին վաճառողը կարող է ուղղակի հայտնի չլինել, կամ շատ հաճախ նրա կամքը հաշվի չի առնվում:

Լիզինգատուի դերում կարող է հանդես գալ որպես անհատ ձեռներեց գրանցված ցանկացած ֆիզիկական անձ կամ առևտրային կազմակերպություն, որն իր հիմնադրման փաստաթղթերի համաձայն ունի գույքը լիզինգի կանոններով վարձակալության տալու իրավունք, այսինքն՝ իրականացնելու լիզինգային գործունեություն: ՀՀ-ում լիզինգային գործունեություն իրականացնում են մի-

[1] Տե՛ս Գ.Ղարախանյան, Ֆինանսական վարձակալության պայմանագիր (լիզինգ)/ «Պետություն և իրավունք», թիվ 3(6), 1999, էջ 9-10:
[2] Տես Ãðàæäàíñêîå ïðàâî. Â 2-õ òîìàõ, ïîä ðåä. Å.À.Ñóõàíîâà, ò 2, Ì., 1994, էջ 143:

այն առևտրային բանկերը: Համաշխարհային պրակտիկայում լիզինգատուի դերում հանդես են գալիս ոչ միայն բանկերը, այլ նաև զուտ լիզինգային գործունեություն իրականացնելու նպատակով ստեղծված լիզինգային ընկերությունները, ինչպես նաև վարկային այլ հիմնարկներ կամ նրանց կողմից ստեղծված կազմակերպություններ, որոնք հնարավորություն են ստանում շրջանառության մեջ դնել իրենց դրամական միջոցները:

Գործող բանկային օրենսդրության համաձայն լիզինգառու կարող է լինել ձեռնարկատիրական գործունեություն իրականացնող ցանկացած իրավաբանական անձ կամ անհատ ձեռներեց: Ֆինանսական վարձակալության պայմանագրով կողմեր չեն կարող լինել անհատ քաղաքացիները: Ինչ վերաբերում է ոչ առևտրային կազմակերպություններին, ապա նրանք լիզինգի պայմանագրով կարող են հանդես գալ որպես լիզինգատու կամ լիզինգառու այնքանով, որքանով կարող են զբաղվել ձեռնարկատիրական գործունեությամբ:

Քաղաքացիական օրենքսգրքի 680-րդ հոդվածի համաձայն ֆինանսական վարձակալության պայմանագրի առարկա կարող է լինել ձեռնարկատիրական գործունեության համար օգտագործվող ցանկացած չսպառվող գույք: Այսինքն պայմանագրի առարկա կարող է լինել ինչպես շարժական, այնպես էլ անշարժ գույքը: Անշարժ գույք են համարվում հողամասերը, ընդերքը, մեկուսի ջրային օբյեկտները, անտառները, բազմամյա տնկիները, շենքերը, շինությունները և հողին ամրակայված այլ օբյեկտներ, որոնք անհնար է հողից անջատել՝ առանց այդ գույքին վնաս պատճառելու:

Ֆինանսական վարձակալության իրավահարաբերության կողմերի իրավունքներն ու պարտականությունները յուրահատուկ բնույթ ունեն, ինչը հնարավորություն է տալիս դիտելու լիզինգը որպես գույքը ժամանակավոր օգտագործման հանձնելու պայմանագրերի հատուկ և ինքնուրույն տեսակ: Այսպես, առևտրային բանկը պարտավոր է առուծախի պայմանագրով որպես սեփականություն ձեռք բերել այն գույքը, որը կընտրի և ցույց կտա լիզինգառուն: Ընդ որում վարձակալի համար գույք ձեռք բերելիս նա պետք է վաճառողին ծանուցի, որ գույքը նախատեսված է որոշակի անձի վարձակալության հանձնելու համար: Լիզինգի, որպես բանկային գործառույթի հիմնական առանձնահատկությունն այն է, որ գույքի և նրա վաճառողի ընտրությունը կատարում է բանկը:

Լիզինգատուն պարտավոր է ապահովել վարձակալած գույքը պայմանագրի պայմաններին, գույքի նշանակությանը համապատասխան, ու դրան վերաբերվող փաստաթղթերով հանձնել լիզինգառուին: Ընդ որում եթե այլ բան նախատեսված չէ ֆինանսական վարձակալության պայմանագրով, ապա պայմանագրի առարկան վաճառողի կողմից հանձնվում է անմիջապես լիզինգառուին՝ վերջինիս գտնվելու վայրում:

Քանի որ գույք վաճառողն այն ոչ թե հանձնում է գնորդին, այլ բանկին, ուստի դա հիմք է տալիս եզրակացնելու, որ ֆինանսական վարձակալության պայմանագիրը կարելի է համարել առուծախի պայմանագիր երրորդ անձի օգտին: Վաճառողի կողմից այդ պարտականությունը չկատարելու դեպքում գույքը պահանջելու իրավունք է ձեռք բերում առևտրային բանկը:

Ֆինանասկան վարձակալության պայմանագրով բանկը ձեռք է բերում լրացուցիչ իրավունքներ ու պարտականություններ, որոնք յուրահատուկ են բանկային օրենսդրությանը: Այսպես, բանկը իրավունք ունի վարձակալության վերցված գույքի որակը և ամբողջությունը, դրա մատակարարման ժամկետները խախտելու և վաճառողի կողմից պայմանագիրը ոչ պատշաճ կատարելու դեպքում անմիջականորեն վաճառողին ներկայացնելու նրա և լիզինգատուի միջև կնքված առուծախի պայմանագրից բխող պահանջներ:

Գույքի փոխանցումը և ընդունումը, որպես կանոն, բանկը ձևակերպում է փոխանցման - ընդունման ակտով, որը հաստատում է գույքի քանակը, որակը, նրա համապատասխանությունը լիզինգի պայմանագրով սահմանված տնտեսական ու տեխնիկական ցուցանիշներին: Գործնականում փոխանցման-ընդունման ակտը ստորագրվում է լիզինգային գործառնությանը մասնակցող երեք սյուբեկտների՝ բանկի, լիզինգառուի և վաճառողի ներկայացուցիչների կողմից: Բանկը պատասխանատվություն է կրում վարձակալության

հանձնված գույքի օգտագործմանը լրիվ կամ մասնակի խոչընդոտող թերությունների համար, եթե նույնիսկ չի իմացել այդ թերությունների մասին: Ընդունման ժամանակ բանկը հայտնաբերված թերությունները գրանցում է ակտի մեջ: Նման դեպքում լիզինգառուն պարտավոր է վաճառողից պահանջել անհատույց վերացնել գույքի թերությունները՝ նշանակելով կատարման ժամկետ: Այդպիսի իրավունքը առևտրային բանկերին վերապահված է բանկային օրենսդրությամբ: Չվերացվող թերությունների, նաև այնպիսի թերությունների հայտնաբերման դեպքում, որոնք չեն կարող վերացվել առանց սիստեմատիկ ծախսերի կամ ժամանակի կորստի, բանկը իրավունք ունի պահանջել վաճառողից՝ փոխարինելու անորակ ապրանքը: Գործող բանկային կանոններով նման պահանջ ներկայացնելու իրավունք ունի նաև լիզինգառուն: Հայտնաբերված թերությունների պատճառով վաճառողի կողմից փոխանցվող գույքն ընդունելուց հրաժարվելու դեպքում լիզինգառուն պարտավոր է գրավոր ձևով այդ մասին տեղյակ պահել լիզիգատուին: Սույն գործողությունը հնարավորություն է տալիս լիզինգատուին միակողմանիորեն դադարեցնելու կամ լուծելու առուծախի պայմանագիրը, որը վկայում է բանկային օրենսդրության առանձնահատկության մասին:

Գործնականում առևտրային բանկերը Կենտրոնական բանկի պահանջով պարտավոր են լիզինգառուին տեղյակ պահել վարձակալության հանձնվող գույքի նկատմամբ երրորդ անձանց բոլոր իրավունքների մասին (գրավի իրավունք, օգտագործման իրավունք, սերվիտուտ և այլն): Բանկի կողմից այդ պարտականությունը չկատարելը իրավունք է տալիս լիզինգառուին պահանջել նվազեցնելու վարձավճարը, որպիսի կարգը սահմանված է քաղաքացիական օրենսդրությամբ:

Լիզինգառուն պարտավոր է վարձակալած գույքն օգտագործել գույքի նշանակությանը համապատասխան: Լիզինգառուն պարտավոր է գույքը պահպանել պատշաճ վիճակում, իր հաշվին կատարել ընթացիկ վերանորոգումը և կրել գույքը պահպանելու ծախսերը:



Լիզինգառուն պարտավոր է բանկի կողմից սահմանված ժամկետում մուծել լիզինգային վարձավճարները: Նա կարող է պահանջել նվազեցնել վարձավճարը, եթե հանգամանքների բերումով ֆինանսական վարձակալության տրված գույքի օգտագործման պայմանները կամ գույքի վիճակը վատթարացել են: Եթե այլ բան նախատեսված չէ պայմանագրով, լիզինգառուի կողմից վարձը վճարելու ժամկետների էական խախտման դեպքում բանկը իրավունք ունի նրանից պահանջել վաղաժամկետ մուծել վարձավճարը, հակառակ դեպքում կարող է միակողմանիորեն դադարեցնել պայմանագիրը:

Առևտրային բանկը, ղեկավարվելով քաղաքացիական օրենսգրքի 677-րդ հոդվածի 3-րդ կետի պահանջներով, կարող է թույլատրել լիզինգառուին՝ վճարել գույքի լրիվ արժեքը և սեփականացնել այն: Այս մասին կարող է համաձայնություն կայացվել ինչպես պայմանագիրը կնքելիս, այնպես էլ կողմերի միջև հետագայում կայացած լրացուցիչ համաձայնությամբ: Ընդ որում կողմերը կարող են պայմանավորվել նախապես վճարված վարձավճարների ամբողջ գումարը գնի մեջ հաշվարկելու մասին:

Ֆինանսական վարձակալության բանկային գործելակերպի առանձնահատկություններից մեկն այն է, որ պայմանագրի գործողության ընթացքում բանկը, հանդիսանալով վարձակալության տրված գույքի սեփականատեր, չի կրում այդ գույքի պատահական կորստի կամ պատահական վնասվածքի ռիսկը: Այս հանգամանքը ավելի է բարձրացնում բանկի կատարած ներդրումների ապահովվածությունը: Դա կարևոր հանգամանք է, որով ֆինանասական վարձակալությունը տարբերվում է սովորական վարձակալությունից, երբ վարձակալաված գույքի պատահական ոչնչացման կամ պատահական վնասվածքի ռիսկը մնում է վարձատուի վրա:

Օրենքը ֆինանսական լիզինգի առարկայի պարտադիր ապահովագրման պահանջ չի ներկայացնում: Պայմանագրի առարկայի ապահովագրման հարցը լուծում են կողմերը: Քանի որ լիզինգի պայմանագրով լիզինգատուն, որպես կանոն, կատարում է խոշոր դրամական ներդրումներ պայմանագրի առարկան ձեռք բերելու, այն շահագործման մեջ դնելու կապակցությամբ, և դա, բնականա-

բար, կապված է լինում առևտրային զգալի ռիսկի հետ, ուստի ֆինանսական վարձակալության պայմանագրի մեջ մտցվում են մի շարք կետեր, որոնք ստեղծում են լրացուցիչ երաշխիքներ լիզինգատուի համար: Մասնավորապես լիզինգատուն հնարավորություն է ստանամում վերահսկել պայամանգրի առարկայի վիճակը, նրա օգտագործման իրավունքը: Առանց լիզինգատուի գրավոր համաձայնության լիզինգառուն իրավունք չունի պայմանագրի առարկան տեղափոխել պայմանագրով նախատեսված վայրից:

Ինչպես ցույց է տալիս առևտրային բանկերի գործնական առօրյան, այդ բանկերը իրավունք ունեն ստուգումներ անցկացնել` պարզելու համար` արդյո՞ք լիզինգառուն պատշաճորեն է կատարում պայմանագրի պայմանները, թե ոչ: Ստուգման նպատակը և կարգը սահմանվում են բանկային կանոններով: Լիզինգառուն պարտավոր է ապահովել լիզինգատուի կողմից գործուղված հսկիչների անարգել ու անխոչընդոտ հնարավորությունը` ծանոթանալու պայմանագրի առարկայի վիճակին, շահագործման պայմաններին, ֆինանասկան ու տեխնիկանան անհրաժեշտ փաստաթղթերին, իր հաշվին ապահովելու նրանց անվտանգությունը նորմատիվային միջոցներով ու ստուգիչ սարքավորումներով:

Պայմանագրով կարող է լիզինգատուին իրավունք տրվել` հսկելու և կառավարելու լիզինգառուի ֆինանսական գործունեությունը այն մասով, որը վերաբերում է լիզինգի առարկայի օգտագործմանը և պայմանագրով լիզինգառուի վրա դրված պարտականությունների կատարմանը: Նման դեպքերում պայմանագրում սահմավում են նաև ֆինանսական հսկողության և կառավարման նպատակն ու իրականացման կարգը: Լիզինգատուն իրավունք է ստանում գրավոր հարցումներ անել լիզինգառուին ֆինանսական հսկողության և կառավարման իրականացման համար անհրաժեշտ տեղեկատվություն ստանալու նպատակով:

Ֆինանսական վարձակալության պայմանգրում կարող են նախատեսվել նաև այն դեպքերը, երբ լիզինգառուն խախտում է իր դրամային պարտավորությունները (չի վճարում կամ ժամանակին չի վճարում վարձավճարը): Նման խախտումների պատճառները պարզելու և դրանք հետագայում կանխելու նպատակով լիզինգա-



տուն իրավունք ունի նշանակել լիզինգառուի ֆինանսական դրության անկախ աուդիտորական ստուգումներ, ինչպես նաև առանց ձայնի իրավունքի մասնակցել լիզինգառուի կառավարման մարմինների ու հիմնադիրների ընդհանուր ժողովներում, արտահայտել իր պահանջներն ու առարկությունները [1]:

Ֆինանսական վարձակալության պայմանագրով բանկային պատասխանատվությունը ունի որոշակի առանձնահատկություն:

Ուսումնասիրությունները պարզում են, որ լիզինգի պայմանագիրը իր բնույթով ձեռնարկատիրական պայմանագիր է: Նրա կողմերը ձեռնարկատիրական գործունեություն իրականացնող սուբյեկտներ են, որոնց նկատմամբ կիրառվում է «առանց մեղքի» պատասխանատվության կանոնները: Այլ խոսքով ձեռնարկատիրական գործունեություն իրականացնելիս պարտավորությունը չկատարած անձը պատասխանատվություն է կրում, եթե չապացուցի, որ պարտականություն կատարելը անհնար է եղել տվյալ պայմաններում արտակարգ կամ անկանխատեսելի հանգամանքների հետևանքով:

Ֆինանսական վարձակալության պայմանագրով առևտրային բանկը գտնվում է այլ կարգավիճակում, քան վարձատուն սովորական գույքային վարձակալության պայմանագրով: Մասնավորապես, ընդհանուր կանոնի համաձայն, լիզինգատուն գույքն ինքը չի հանձնում վարձակալության, ինքը չի ընտրում ո'չ գույքը, ո'չ էլ նրա վաճառողին: Դրա համար էլ նրա պատասխանատվությունը ֆինանսական վարձակալության պայմանագրով զգալիորեն տարբերվում է սովորական գույքային վարձակալության պայմանագրով վարձատուի պատասխանատվությունից:

Բոլոր դեպքերում քաղաքացիական օրենսդրությունը բանկային կանոններից դուրս սահմանում է նաև առևտրային բանկերի պատասխանատվությունը: Համաձայն Քաղ. օր. 682-րդ հոդվածի 2-րդ կետի, լիզինգատուն պատասխանատվություն է կրում լիզինգառուի առջև, եթե ֆինանսական վարձակալության պայմանագրի առարկան վարձակալին չի հանձնվել պայմանագրում նշված ժամկե-

[1] Տե'ս Ì.È. Áðàãèíñêèé, Â.Â. Âèòðÿíñêàÿ, Äîãîâîðíîå ïðàâî, êíèãà âòîðàÿ /Äîãîâîðû î ïåðåäà÷å èìóùåñòâà/ Ì., 2000, էջ 553:

տում, իսկ եթե պայմանագրում ժամկետ նշված չլինելը՝ ողջամիտ ժամկետում, և եթե կետանցը թույլ է տրվել այնպիսի հանգամանքներում, որոնց համար պատասխանատու է լիզինգատուն:

Ինչ վերաբերում է լիզինգատուի և լիզինգառուի առօրյա փոխհարաբերություններին (օրինակ, վարձակալված գույքի հիմնական և ընթացիկ վերանորոգում, օգտագործում, ապահովագրում, վարձավճարների մուծում և այլն), ապա պարտավորությունները չկատարելու կամ ոչ պատշաճ կատարելու համար կողմերի պատասխանատվությունը կարգավորվում է ինչպես Կենտրոնական բանկի կողմից սահմանված կանոններով, այնպես էլ վարձակալության պայմանագրերի համար ընդհանուր հիմունքներով:

Ֆինանսական վարձակալության պայմանագիրը **դադարում** է ոչ միայն պայմանագրով նախատեսված ժամկետը լրանալով: Պայմանագիրը կարող է դադարել նաև վաղաժամկետ՝ քաղաքացիական օրենսդրությամբ սահմանված կարգով: Պայմանագիրը կարող է վաղաժամկետ դադարել կողմերի համաձայնությամբ, կամ դատարանի վճռով՝ մեկ կողմի նախաձեռնությամբ: Առևտրային բանկի նախաձեռնությամբ ֆինանսական վարձակալության պայմանագիրը կարող է լուծվել գույքի վարձակալության պայմանագրի համար գործող հիմքերով: Այսպես, Քաղ. օր. 622-րդ հոդվածի պահանջով ֆինանսական վարձակալության պայմանագիրը կարող է լուծել դատարանը, երբ լիզինգառուն՝

ա) վարձակալված գույքն օգտագործել է պայմանագրի պայմանների կամ գույքի նշանակության էական կամ բազմակի խախտումներով,

բ) էականորեն վատթարացել է գույքի վիճակը,

գ) պայմանագրով սահմանված վճարման ժամկետը լրանալուց հետո երկու անգամից ավելի չի մուծել վարձավճարը,

դ) պայմանագրում սահմանված ժամկետներում, իսկ պայմանագրում նման ժամկետների բացակայության դեպքում՝ ողջամիտ ժամկետում չի կատարել գույքի հիմնական վերանորոգում, երբ պայմանագրին համապատասխան՝ հիմնական վերանորոգում կատարելը նրա պարտականությունն է:



# ԳԼՈՒԽ X

## ՊԱՏԱՍԽԱՆԱՏՎՈՒԹՅՈՒՆԸ ԲԱՆԿԱՅԻՆ ՕՐԵՆՍԴՐՈՒԹՅԱՆ ԽԱԽՏՈՒՄՆԵՐԻ ՀԱՄԱՐ

### §1. Բանկային հարկադրանքի և պատասխանատվության հասկացությունը, առանձնահատկությունները

ՀՀ բանկային համակարգի կայացման, նրա գործունեության կատարելագործման իրավական ասպեկտների մասին այսօր իրավաբանական գրականության մեջ դեռևս հիմնավոր խոսք չի ասված:

Բանկային առօրյա գործունեության կատարելագործման անբաժան մասն են կազմում հարկադրանքի և պատասխանատվության կիրառման տեսական մշակումները և դրանց օրենսդրական ձևակերպումը:

Գործող բանկային օրենսդրությունը մասամբ կարգավորում է բանկային իրավախախտումների վերաբերյալ նյութերի ընթացքը, սակայն չի կարելի ասել, որ մեր օրենսդրությամբ լուծված են բանկային իրավախախտումների համար կիրառվող պատժամիջոցներին վերաբերող բոլոր հարցերը: Տեսականորեն լուծված չեն բանկային հարկադրանքի և պատասխանատվության հիմնահարցերը՝ չնայած բազմաթիվ փորձեր են կատարվում ֆինանսական իրավունքից առանձնացնել բանկային իրավունքը, որպես ինքնուրույն իրավունքի ճյուղ՝ սահմանելով նրա կարգավորման առարկան և մեթոդը: Այնուամենայնիվ, գործնականում համակարգված չէ բանկային օրենսդրությունը, բացակայում է բանկային օրենսգիրքը, մշակման կարիք ունեն բանկերի իրավասության, վերահսկողական գործառույթների, բանկային հարկադրանքի և պատասխանատվության կենսագործման վարույթին վերաբերող հարցերը:

Անհրաժեշտությունից ելնելով նպատակահարմար է լուսաբանել բանկային հարկադրանքի և պատասխանատվության, դրանց կիրառման համար հիմք հանդիսացող բանկային իրավախախտումների և պատժամիջոցների մասին հասկացությունը, որոնք բանկային գործունեության էական կողմն են կազմում, քանի որ շուկայական հարաբերությունները մշտապես տեղիք են տալիս գույքային-դրամական հարաբերություններում տարբեր բնույթի տարաձայնությունների ու բանկային վեճերի, որոնց ճիշտ որակումից է կախված բանկային գործունեության նկատմամբ ժողովրդի հավատի ձևավորումը:

Բանկային հարկադրանքը պետական հարկադրանքի տեսակներից մեկն է և, պետական հարկադրանքի մյուս ձևերի հետ միասին, իրավախախտների դեմ պայքարելու բանկային հատուկ միջոց, որին բնորոշ են որոշ առանձնահատկություններ:

Բանկային հարկադրանքի կիրառումը հիմնականում բանկային մարմինների գործունեության միջոցներից մեկն է: Այն առանձնահատուկ է նրանով, որ վերաբերում է գործադիր իշխանության ոլորտում բանկային ու վարկային մարմիններին: Այն գործադրվում է բանկային-իրավական խախտումներ կատարողներին պատասխանատվության ենթարկելու կամ այդպիսի խախտումները կանխելու ու նախազգուշական միջոցներ կիրառելու համար:

Բանկային հարկադրանքի հիմնական և տարբերիչ առանձնահատկությունը վարչական հարկադրանքից այն է, որ կիրառվում է անմիջական ենթակայության և ծառայական սկզբունքներով, որը նորույթ է պետական հարկադրանքի իրականացման բնագավառում: Բանկային հարկադրանքի մյուս առանձնահատկությունը այն է, որ, ի տարբերություն վարչական հարկադրանքի, կիրառվում է միայն Կենտրոնական բանկի կողմից, իսկ բանկային օրենսդրությամբ նախատեսված հատուկ դեպքերում, Կենտրոնական բանկի հայցի հիման վրա, դատարանի կողմից:

Հիշյալ առանձնահատկությունները ընդհանրացնելով՝ կարելի է ասել, որ բանկային հարկադրանքը Կենտրոնական բանկի



կամ առանձին դեպքերում բանկային մարմինների ու նրանց ներկայացուցիչների, ինչպես նաև օրենքով սահմանված դեպքերում դատարանների կողմից բանկային գործառույթների խախտումները կանխելու, այդպիսի խախտումներ թույլ տված անձանց պատասխանատվության ենթարկելու նպատակով բանկային օրենսդրությամբ սահմանված պատժամիջոցների համակցություն է: Հիմք ընդունելով իրավաբանական գրականության մեջ եղած նախկին և նոր կարծիքները՝ բանկային հարկադրանքի միջոցները ըստ կիրառման նպատակների կարելի է դասակարգել տույժերի, նախազգուշական և խափանիչ միջոցների:

Իրավաբանական գրականության մեջ բանկային նախազգուշական և խափանիչ միջոցները երբեմն նույնացվում են: Ինչպես վկայում են «ՀՀ բանկերի և բանկային գործունեության մասին» օրենքում թվարկված պատժամիջոցները, դրանցից յուրաքանչյուրը՝ առանձին վերցրած, որոշակի նպատակ է հետապնդում, որ ակնհայտ է դարձնում նախազգուշական և խափանիչ միջոցների տարբերությունը: Այս միջոցները չի կարելի նույնացնել, քանի որ խափանիչ միջոցը կոչված է դադարեցնելու բանկային կանոնների խախտումը, երբ առկա է մեղքը, մինչդեռ բանկային հարկադրանքի նախազգուշական միջոցները, հատկապես երբ բանկային իրավահարաբերությունների մեծ մասը ունեն պայմանագրային բնույթ, կարող են կիրառվել նաև մեղքի ու ընդհանրապես իրավախախտման բացակայության դեպքում: Հետևաբար, անտեսել բանկային խափանիչ և նախազգուշական միջոցների տարբերությունը, նշանակում է նույնացնել առկա խախտումը որոշակի պայմաններում սպասվելիք հնարավոր խախտումների հետ:

Բանկային գործունեության օրըստօրե աճող ծավալները օբյեկտիվ և սուբյեկտիվ հանգամանքների բերումով գործնականում տեղիք են տալիս բանկային գործառնությունների ամենատարբեր բնույթի խախտումների, որոնք ըստ էության բանկային իրավանորմերի խախտումներ են, հետևաբար կյանքի են կոչում բանկային պատասխանատվություն:

Ավանդաբար մարդկային հարաբերություններին հայտնի են քրեական, վարչական, կարգապահական և քաղաքացիական պատասխանատվության ձևերը: Այսօր առանձին պետությունների օրենսդրության մեջ, առանձին դեպքերում նաև իրավաբան գիտնականների աշխատություններում հանդիպում ենք բնույթով նոր՝ ֆինանսական պատասխանատվություն հասկացությանը, որը լայն առումով իր մեջ ներառում է բանկային պատասխանատվությունը[1]:

Բանկային իրավախախտման համար սանկցիա կիրառելու դեպքում պատասխանատվության ենթարկվողի համար առաջանում են աննպաստ հետևանքներ, որոնք արտահայտվում են իրավախախտողին Կենտրոնական բանկի կողմից որոշակի պատժամիջոցների ենթարկելու մեջ:

Ինչպես իրավական ցանկացած պատասխանատվություն, այնպես էլ բանկային պատասխանատվությունը ևս ունի օբյեկտիվ և սուբյեկտիվ հիմք: Պատասխանատվությունը կիրառվում է հակաիրավական գործողության կամ անգործության համար: Օրինակ, փոխանցումներ չկատարելը, հաշվապահական հաշվետվություն չներկայացնելը, որոնք կատարվել են խախտողի մեղքով:

Այս վերլուծությունների հիման վրա կարելի է ասել, որ բանկային պատասխանատվությունը օրենքով սահմանված բանկային օրենսդրության և պայմանագրերի խախտումների դեպքում ՀՀ Կենտրոնական բանկի կողմից կիրառվող հարկադրանք է: Բանկային պատասխանատվության բովանդակությունը կարելի է պարզաբանել հետևյալ կերպ.

ա) Բանկային պատասխանատվության ենթարկելու հիմքը բանկային գործունեության և գործառնությունների խախտումն է:

---

[1] Տե՛ս մանրամասն Óêàç ïðåçèäåíòà ÐÔ “Îá îñóùåñòâëåíèè êîìïëåêñíûõ ìåð ïî ñâîåâðåìåííîìó è ïîëíîìó âíåñåíèþ â áþäæåò íàëîãîâ è èíûõ îáÿçàòåëüíûõ ïëàòåæåé îò 23 ìàÿ 1994ã. (ñ. 3 ÐÔ, 1994 N 5, ñò. 396). Þ.Í. Ñòàðèëîâ, Îòâåòñòâåííîñòü çà íàðóøåíèÿ íàëîãîâîãî çàêîíîäàòåëüñòâà (ó÷åáíîå ïîñîáèå), ÁÅÊ, Ì., 1996.



բ) Բանկային պատասխանատվություն կիրառվում է միայն Կենտրոնական բանկի մասին օրենքով սահմանված բանկային որոշ իրավանորմերի խմբի միջոցով, իսկ պայմանագրերի առկայության դեպքում, եթե այդպիսիք կողմերի համաձայնությամբ սահմանված են, պայմանագրով:

գ) Բանկային պատասխանատվությունը միշտ էլ ենթադրում է իրավական նորմի սանկցիայում ձևակերպված բանկային հարկադրանքի միջոցի կիրառում բանկային օրենսդրությունից, կանոններից, նաև պայմանագրերից բխող պարտավորությունները չկատարելու համար:

դ) Բանկային պատասխանատվության բովանդակությունը հանգում է բանկային օրենսդրությամբ սահմանված պարտավորությունները չկատարած ֆիզիկական և իրավաբանական անձանց նկատմամբ իրավանորմի սանկցիայում պարունակվող ճնշամիջոցներ կիրառելուն:

Գործող բանկային օրենսդրությամբ սահմանված պատասխանատվության ձևերը էապես տարբերվում են պատասխանատվության մյուս տեսակներից: Հիմնական տարբերիչ առանձնահատկությունն այն է, որ բանկային պատասխանատվությունը միավորում է վարչական, կարգապահական, քաղաքացիա-իրավական պատասխանատվությանը ներհատուկ պատժամիջոցներ, ինչպիսիք են՝ նախազգուշացումը և խախտումները վերացնելու հանձնարարականը, լիցենզիան ուժը կորցրած ճանաչելը, բանկի ղեկավարներին որակավորման վկայականից զրկելը և տուգանքը:

Բանկային պատասխանատվությունը լայն առումով իր մեջ ընդգրկում է «բանկային պատժամիջոցներ» հասկացությունը, որ կարող է արտահայտվել

ա) ոչ ֆինանսական պատժամիջոցներով (նախազգուշացում և խախտումները վերացնելու հանձնարարական),

բ) ֆինանսական պատժամիջոցով (տուգանք, որ գանձվում է հայցի միջոցով),

գ) իրավախախտողին հատուկ իրավունքներից զրկելով (լիցենզիայի դադարեցում),

դ) հասարակական-բարոյական ներգործության բնույթի պատժամիջոցներով (բանկի ղեկավարներին որակավորման վկայականից զրկելը):

Բանկային պատասխանատվության կարելի է ենթարկել այն դեպքերում, երբ ֆիզիկական կամ իրավաբանական անձը խախտում է իր բանկային-իրավական այն պարտականությունները, որոնք իրենց ամրապնդումն են ստացել բանկային իրավանորմերի մեջ: Այլ խոսքով՝ բանկային պատասխանատվության և պատժամիջոցների կիրառման հիմքը մեղքի առկայությամբ կատարված իրավախախտումն է: Մեղքը կարող է դրսևորվել ինչպես դիտավորությամբ, այնպես էլ անզգուշորեն: Բանկային գործունեության մեջ մեծ մասամբ զգացնել են տալիս գործելակերպի անփութության և ինքնավստահության բացասական հետևանքները, որոնց պատճառով խախտվում են բանկային իրավանորմերը:

Որպեսզի գործնականում բանկային պատասխանատվությունը ճիշտ իրականացվի, անհրաժեշտ է ճիշտ հասկանալ բանկային իրավախախտման էությունը, այն սահմանազատել վարչական, կարգապահական խախտումից:



## §2. Բանկային վեճերի և բանկային իրավախախտումների հասկացությունը և դրանց իրավական կարգավորումը

Բանկային գործունեության ոլորտում օրինականության պահպանման սկզբունքից ելնելով՝ Կենտրոնական բանկից պահանջվում է յուրաքանչյուր դեպքում պարզել խախտման բնույթը և բանկային գործող օրենսդրությանը համապատասխան՝ ճիշտ որակել իրավախախտումը:

Բանկային իրավունքի տեսության մեջ բանկային իրավախախտում հասկացությունը դեռևս պարզաբանված չէ:

Բանկային իրավախախտումը ուղղված է բանկային համակարգի գործունեության դեմ, հետևաբար, կարծում ենք, այն պետք է դիտարկել որպես դրամաշրջանառության, արժույթի և արտարժույթի, վճարահաշվարկային, ավանդների, նաև վարկավորման նորմալ գործընթացների դեմ ուղղված հանրության համար վտանգավոր արարք: Բանկային իրավախախտման վտանգավորության աստիճանը և կիրառվող պատժամիջոցները այս կամ այն իրավախախտման շարքին դասելու հարցի որոշումը, կարծում եմ, կախված է բանկային իրավանորմերով պահպանվող օբյեկտների կարևորությունից և բնույթից: Պատահական չէ, որ «Բանկերի և բանկային գործունեության մասին» օրենքի 60-րդ հոդվածում ամրագրված ութ իրավախախտումներից յուրաքանչյուրը ուղղված է որոշակի օբյեկտի, որպես բանկային համակարգի միասնական պաշտպանության, օրինակ՝ հաշվապահական հաշվառում վարելու կանոնները կամ բանկային ավանդների երաշխիքային վճարումները չվճարելը և այլն:

Բանկային իրավակարգավորման օբյեկտներն են այն բանկային հարաբերությունները, որոնք ծագում են բանկային մարմինների գործառնությունների իրականացման գործընթացում: Կենտրոնական բանկը պահանջում է հետևել բանկային օրենսդրությամբ սահմանված կոնկրետ պարտավորությունների կատար-

մանը, այլ կերպ ասած՝ հետևել, որ Կենտրոնական բանկի սահմանած պարտականությունները անմիջականորեն կատարվեն:

Ուսումնասիրությունները վկայում են, որ ի տարբերություն մյուս իրավախախտումների, բանկային իրավախախտների օբյեկտները իրավունքով կարգավորվող այնպիսի բանկային հարաբերություններ են, որոնք ըստ էության առևտրային բանկերի պարտականություններ են պետության հանդեպ՝ հանձին Կենտրոնական բանկի: Դրանք դուրս են աշխատանքային ենթակայության հարաբերություններից:

Բանկային պատասխանատվություն և պատժամիջոցներ սահմանող իրավական ակտերը ինչպես երևում է, ժամանակին մշակվել են պատասխանատվության ենթակա սուբյեկտների կարգավիճակի առանձնահատկությունների անտեսմամբ: Այսպես, աշխարհի զարգացած շատ երկրների օրենսդրությամբ իրավաբանական անձանց նկատմամբ վարչական կամ բանկային պատասխանատվություն չի նախատեսվում[1]:

ՀՀ «Բանկերի և բանկային գործունեության մասին» օրենքի 63-րդ հոդվածը, որտեղ սահմանված է բանկային տուգանքների կիրառման և գանձման կարգը, գրեթե բոլոր կետերում կտրուկ շեշտվում է, որ տուգանքի է ենթարկվում բանկը: Խոսքը, իհարկե, առևտրային բանկերի մասին է, որոնք իրավաբանական անձինք են: Կարծում եմ՝ իրավական այս նորմում ամրագրված խախտումները, ինչպիսիք են տնտեսական նորմատիվները, իրենց բնույթով բանկային գործունեության համար հասարակական մեծ վտանգ են ներկայացնում և մյուս իրավախախտումներից սահմանազատվում են վտանգավորության աստիճանով: Իրավախախտման վտանգը նկատի ունենալով է, որ օրենսդիրը շրջանցելով իրավական պատասխանատվության տեսակների կիրառման սկզբունքները՝ հավասարության նշան է դրել ֆիզիկական և

[1] Տե՛ս մանրամասն Êîììåíòàðèè ê êîäåêñó ÐÔ îá àäìèíèñòðàòèâíûõ ïðàâîíàðóøåíèÿõ (ïîä ðåä. È.È.Âåðåìåíêî, Í.Ã.Ñàëèùåâîé, Ì.Ñ.Ñòóäåíèêèíîé), “Ïðîñïåêò”, 1997; ՀՀ վարչական իրավախախտումների վերաբերյալ օրենսգիրք, հոդված 26-րդ, Ե; «Մխիթար Գոշ», 1997.



իրավաբանական անձանց միջև, որը արդարացված չէ և մոլորվածության արդյունք չէ, քանի որ նույն հոդվածի 5-րդ կետում, երբ խոսքը գնում է բանկի պաշտոնատար անձանց տուգանքի ենթարկելու մասին ուղղակի նշվում է, որ տուգանքները գանձվում են բանկի ղեկավարների անձնական միջոցներից՝ հօգուտ պետական բյուջեի:

«Բանկերի և բանկային գործունեության մասին» օրենքի «Օրենսդրության խախտումները և դրանց համար կիրառվող պատժամիջոցները» գլուխը կարիք ունի արմատական վերամշակման, քանի որ իրավական այս ինստիտուտում անտեսված և աղավաղված են բանկային հարկադրանքի, պատասխանատվության և նրա տեսակների, նաև իրավախախտմանը ներհատուկ հատկանիշները, հատկապես անհասկանալի է պատժամիջոցների համակարգի հիմնավորումը: Լուսաբանված չեն բանկային պատժամիջոցների էությունը, դրանց տարբերությունը վարչական կամ կարգապահականա կարգով կիրառվող համանման պատժամիջոցներից:

Բանկային գործունեության անբաժան մասը կազմող իրավական պատասխանատվության հիմնախնդիրների թվում շարունակում են մնալ բանկային պատասխանատվության և պատժամիջոցների կիրառման գործընթացները և վարույթի հարցերը, որոնք ընդհանրապես լուսաբանված չեն բանկային իրավունքի ճյուղում, հետևաբար տեղ չեն գտել նաև բանկային գործող օրենսդրության մեջ:

Գործնականում հաճախ են զգացնել տալիս բանկային օրենսդրության խախտումները, որոնց քննարկման կարգը հատկապես իրավական հաստատագրման կարիք ունի: Հանրապետության բանկային օրենսդրության իրականացման փորձը վկայում է, որ բանկային պատժամիջոցների նշանակման, դրանց չկատարման, նաև բողոքարկման վարույթին վերաբերող հիմնահարցերը ինչպիսի դատավարական լուծումներ են պահանջում, և երբ Կենտրոնական բանկը կարող է հանդես գալ որպես վեճեր լուծող մարմին, եթե այս ոլորտին վերաբերող բոլոր պարտականություն-

ները համարենք գույքային բնույթի քաղաքացիա-իրավական հարաբերություններ և այն թողնենք դատական քննության: Նման հարցադրումները, բանկային օրենսդրության խախտումների քննարկումը կամ գործընթացը Կենտրոնական բանկի իրավատնօրինությանը թողնելը, կարծում ենք, (մասնագիտական խնդիրների և հաճախորդների բողոքների քննարկման՝ թե՛ ժամկետների և թե՛ արդյունավետության իմաստով) կարող է բանկային արդարադատության բարձր ցուցանիշներ ապահովել:

Ներկայումս տնտեսավարման նոր մեթոդները և շուկայական հարաբերությունները, ելնելով հասարակության և պետության սեփականության տարբեր ձևերի վրա հիմնված տնտեսական կազմակերպությունների ու քաղաքացիների շահերից, պահանջ են առաջադրում պաշտպանել պետության ֆինանսական գործունեության ոլորտում ծագող բանկային իրավահարաբերությունները: Իսկ բանկային հարաբերությունների պաշտպանությունը պետության կողմից նշանակում է ապահովել դրանց մասնակիցների այնպիսի վարվելակերպ, որը համապատասխանի բանկային նորմերի պահանջներին:

Բանկային իրավական նորմերի պահանջների կատարումը հասարակական կյանքում իրագործվում է հիմնականում համոզման մեթոդի հիման վրա: Ֆինանսավարկային մարմինները, նրանց պաշտոնատար անձինք, կազմակերպությունները, նաև քաղաքացիները երկրի սոցիալ-տնտեսական զարգացման ծրագրերը և ֆինանսական հիմնական պլանի պահանջները կատարում են կամավոր, առանց հարկադրանքի, քանի որ դրանք արտահայտում են իրենց կամքը, բխում են իրենց շահերից: Սակայն միշտ չէ, որ բանկային իրավական հարաբերությունների սուբյեկտները գործում են իրավանորմերի պահանջներով. առանձին դեպքերում հարաբերությունների մասնակիցները թույլ են տալիս խախտումներ: Այսպիսի դեպքերում չի բացառվում բանկային իրավական հարաբերությունների մասնակիցների շահերի պաշտպանությունը հարկադրանքի միջոցով: Բանկային իրավական հարաբերությունների մասնակիցների կողմից ֆինանսա-



իրավական նորմերի պահանջների խախտման դեպքում այդ հարաբերությունների պաշտպանությունը, որպես կանոն, կատարում է ՀՀ Կենտրոնական բանկը՝ բանկային հարկադրանքի միջոցների կիրառմամբ: Հարկադրանքի կիրառումը նպատակ ունի կանխելու և վերացնելու նորմի պահանջների անօրինական խախտումը: Հարկադրանքի կիրառմամբ վերականգնվում է պետության, բանկային կազմակերպությունների և քաղաքացիների խախտված իրավունքները:

Ներկայումս, բանկային իրավական հարաբերությունների սուբյեկտների բազմազանությունը նկատի ունենալով, օրենսդիրը տարբերակված մոտեցում է ցուցաբերում բանկային վեճերի լուծման հարցում: Իրավահարաբերությունները այսօր պաշտպանվում են վարչական և դատական կարգով: Չնայած գործող բանկային օրենսդրությունը սահմանում և երաշխավորում է իրավական հարաբերությունների մասնակիցների իրավունքների և օրինական շահերի պաշտպանության կարգն ու եղանակները, այնուամենայնիվ դեռևս բանկային իրավական գրականության մեջ հստակեցված չէ «բանկային վեճի», հակասության, նրա ծավալի ու բովանդակության, նաև «տնտեսական վեճերից» նրա սահմանազատման հարցը:

Բանկային վեճը իրավական բարդ կատեգորիա է, և հավաքական բնույթ ունի: Կարող է քննարկվել ոչ միայն իրավական, այլ նաև տնտեսական տեսակետից: Այս վեճի հիմքում ընկած են սեփականության տարբեր ձևերը, կազմակերպությունների և քաղաքացիների նյութական շահերի համակցությունը, որտեղ ծնվում են այդ հակասությունները: Բանկային վեճ հասկացությունը իրավական տեսանկյունից քննարկելու համար հիմք կարող է ծառայել բանկային իրավահարաբերությունների սուբյեկտների իրավունքների և պարտականությունների կարգավորումը:

Բանկային վեճը իրավունքի վերաբերյալ վեճի տարատեսակ է: Բանկային վեճի առարկայի բովանդակության ճիշտ որոշումը հնարավոր է միայն հետազոտվող առարկայի բնույթին համապատասխան հետազոտական մեթոդի դեպքում: Իրավական վեճի

հետազոտման հիմքում դրված չափանիշի (նյութական կամ ձևական) հետ կապված՝ կարող է պարզվել դրա նյութական էությունը, կամ այն հատկանիշները, որոնցով պայմանավորված է դրա լուծման գործընթացային ձևը: Իրավունքի մասին վեճի իրավաբանական բնույթի հասկացության վերաբերյալ միասնական կարծիք չկա գիտության մեջ: Դա բացատրվում է նրանով, որ իրավաբան գիտնականները այդ հասկացության հետազոտման ժամանակ օգտագործում են միաժամանակ վերոհիշյալ երկու չափանիշները՝ մի շարք դեպքերում գերապատվություն տալով ձևականին:

Բանկային իրավական վեճը նեղ իմաստով դրսևորվում է որպես իրավունքի խախտում, իսկ լայն իմաստով հասկացվում է օրենքով պահպանվող շահի խախտում կամ վիճարկում: Իրավահարբերության մեջ մի կողմի շահը ոչ միշտ է համապատասխանում մյուս կողմի հնարավորություններին՝ չնայած դրա բավարարումը կախված է այդ հնարավորություններից, հակառակ դեպքում մի կողմի օրենքով պահպանվող շահերի բավարարումը կհանգեցներ մյուս կողմի նույնպես օրենքով պահպանվող շահերի խախտմանը: Հետևաբար, բանկային վեճը հակասություն է երկու, առանձին դեպքերում երեք վիճող կողմերի պնդումների միջև՝ նյութական իրավահարաբերության մեջ իրավունքների ու պարտականությունների մասին:

Իրավական վեճի ընդհանուր հասկացության հատկանիշները բնորոշ են դրա բոլոր տարատեսակներին, այդ թվում նաև բանկային իրավական վեճի հասկացությանը: Նման վեճերի նյութական իրավական պատկանելիությունը բանկային իրավունքի ճյուղին պայմանավորված է պետության ֆինանսական գործունեության ոլորտում բանկային իրավական նորմերով կարգավորվող հարաբերությունների բնույթով: Բանկային իրավական վեճերը ըստ էության հարաբերություններ են մի կողմից վարկային մարմինների, իսկ մյուս կողմից՝ սեփականության տարբեր ձևերի վրա գործող տնտեսական կազմակերպությունների ու քաղաքացիների միջև, որոնք ծագում են բանկային գործունեության



կենսագործման ընթացքում: Կազմակերպությունների և բանկերի միջև վեճերի ծագումը բոլոր դեպքերում այս կամ այն չափով կապված է դրանց նյութական, առևտրային շահերի հետ: Բայց ոչ բոլոր դեպքերում բանկային վեճը պետք է ընդունել և քննարկել որպես այնպիսի սուբյեկտիվ իրավիճակ, երբ մի կողմը՝ ՀՀ Կենտրոնական բանկը, պետական բյուջեի հետ իր հարաբերություններում դրսևորում է բանկային իրավական նորմի պահանջների խախտումներ՝ դրանով ոտնահարելով մյուս սուբյեկտների նյութական շահերը, իսկ պատասխանատվության դեպքում պայքարում է՝ դրանով պաշտպանելով իր նյութական շահերը: Գործող բանկային օրենսդրությունը և նրա կիրառման պրակտիկան այսօր բացառում են Կենտրոնական բանկի կողմից կամայականությունների դրսևորման փաստերը:

Բանկային վեճերը կարող են ծագել նաև վիճող կողմերից օբյեկտիվորեն անկախ պատճառներով: Խոսքը արտադրանքի արտադրության, շահույթի, վարկի և հարկային քաղաքականության ոլորտում սխալների մասին է: Երբեմն նաև տնտեսավարող սուբյեկտների և բանկային մարմինների միջև մեծաքանակ վեճեր են ծագում սուբյեկտիվ պատճառներով, որոնք էական չեն և չի կարելի հանգեցնել առանձին քաղաքացիների և կազմակերպությունների անպարտաճանաչ վերաբերմունքին ու նրանց կողմից բանկային կարգապահության խախտմանը:

Բանկային իրավական գրականության մեջ բանկային վեճերի ծագման պատճառները երբեմն նույնացվում են դրանց քանակական աճի պատճառների հետ: Բանկային վեճերի ծագումը ոչ միայն տնտեսավարող սուբյեկտների և քաղաքացիների բանկերի փոխհարաբերություններում հակասությունների շատացում է, այլ արդյունք է տնտեսության կառավարման կատարելագործման: Տնտեսական կազմակերպությունների և առևտրային բանկերի հարաբերություններում բանկային կարգապահությունը նկատելիորեն ամրապնդվում է: Ինչպես վկայում են բանկային գործունեության փաստերը, բանկային մարմինների կողմից լուծվող վեճերի քանակը աճում է նույնիսկ կար-

գապահության ամրապնդման պայմաններում: Բանն այն է, որ պետությունը նշանակալիորեն բարձրացրել է քաղաքացիների և կազմակերպությունների բանկային պատասխանատվության չափերը բանկային գործառնությունների առանձին տեսակների համար: Տնտեսական վեճերից բանկային վեճի սահմանազատման միակ հիմնավոր սկզբունքը պայմանավորված է ֆինանսական իրավունքի որպես ինքնուրույն իրավունքի ճյուղի կողմից կարգավորվող հասարակական հարաբերությունների առանձնահատկություններով: Ավելի ստույգ, ֆինանսական պետք է համարել այն բոլոր տարաձայնությունները, որոնք տնտեսությունում, սոցիալ-մշակութային և վարչաքաղաքական կյանքում առաջանում են պետության ֆինանսական գործունեության ընթացքում և կապված են դրամական միջոցների հավաքման, բաշխման և օգտագործման գործառնությունների հետ:

Այս տեսակետից, այսօր անբավարար պետք է համարել բանկային իրավական վեճերի տեսակների և դրանց դատական պաշտպանության խիստ սահմանափակ գործընթացը, որն ըստ էության ճիշտ չի արտահայտում բանկային իրավական հարաբերությունների սուբյեկտների՝ առևտրային բանկերի հետ ունեցած փոխհարաբերություններից ծագող բանկային վեճերի բնույթը:

Մյուս կողմից, տնտեսական կազմակերպությունների ու քաղաքացիների բանկային իրավահարաբերություններից բխող իրավունքների և օրինական շահերի դատաիրավական պաշտպանությունը համարելով հանրապետության ժողովրդավարության և տնտեսավարող սուբյեկտների շահերի պաշտպանության ամենամեծ նվաճումը՝ կարծում եմ՝ անցման շրջանի համար արդյունավետ պետք է համարել բանկային իրավական վեճերի լուծման դատական կարգը: Նախապատվությունը վեճերի լուծման արդյունավետության և օպերատիվության իմաստով, պետք է տալ բանկային կարգին:

Իրավագիտության մեջ մինչև այժմ բավարար ուշադրություն չի դարձվել բանկային վեճերի լուծման ասպարեզում բանկային



կարգի հիմնահարցերին: Գրականության մեջ այդ հարցերը լուսաբանվել են որպես դատական իրավասությունից կատարվող բացառություններ: Գործող ֆինանսական օրենսդրության մեջ ևս չկա վարչական կարգով քննարկվող ֆինանսական վեճերի վարույթի կարգը: Մինչդեռ վարչական կարգով ֆինանսական վեճերի լուծումը նշանակալի գիտական և գործնական հետաքրքրություն է ներկայացնում:

Բանկային մարմնի իրավատնօրինությունը բանկային գործառնությունից ծագող վեճերի լուծման բնագավառում կախված չէ վիճող կողմերի ենթակայությունից, այլ մշտապես որոշվում է վեճի առարկայով (բնույթով): Հետևաբար, անհիմն տեսական վեճերից խուսափելու նպատակով, առավել ևս երբ հանրապետության բանկային օրենսդրությունը Կենտրոնական բանկի իրավասությանն է թողնում բանկային իրավախախտումներից բխող պատժամիջոցների տեսակների սահմանման և կիրառման կարգը, օրենսդրության կատարելագործմանը նպաստելու իմաստով նպատակահարմար ենք համարում լուսաբանել իրավախախտների և պատժամիջոցների գործնական կիրառման ընթացակարգը արտացոլող բանկային «պրոցեսի» և «վարույթի» հասկացությունները, որոնց ամրապնդումը բանկային իրավանորմերում մեծապես կօգնի բանկային պատժամիջոցների կիրառման ընթացքում օրինականության ապահովմանը և բանկային գործունեության ընթացքում սոցիալական ու իրավական արդարության պաշտպանությանը (որպես տնտեսավարող սուբյեկտների շահերի երաշխավորված պաշտպանություն):

Բանկային օրենսդրության մեջ գործընթացային իրավանորմերի բացակայությունը լուրջ դժվարություններ է առաջացնում բանկային իրավախախտումների համար պատասխանատվության ենթարկելու հարցերը լուծելիս: Այդ հարցերը ընդհանրապես չեն արժանացել բանկային իրավունքի մասնագետների ուշադրությանը: Մինչև այժմ ինչպես ֆինանսական, այնպես էլ բանկային իրավունքի տեսության բնագավառում բաց է մնացել

այն հարցը, թե պատասխանատվություն կիրառելիս որ դեպքում է առկա բանկային գործընթաց և որ դեպքում բանկային վարույթ:

Լայն առումով բանկային գործընթաց ասելով պետք է հասկանալ բանկային նյութական իրավունքի կիրառում: Հետևաբար, բանկային պատասխանատվության գործընթաց առկա է բոլոր այն դեպքերում, երբ կիրառվում է նյութական բանկային իրավունքի նորմերը: Եթե նյութական բանկային իրավունքի նորմերը որոշում են բանկային գործունեության և գործառույթների իրականացման ոլորտի հարաբերությունների մասնակիցների իրավունքների ու պարտականությունների բովանդակությունը, ապա բանկային պրոցեսուալ նորմերը պետք է որոշեն դրանց իրագործման կարգը ու գործընթացը:

Բանկային գործընթաց ասելով պետք է հասկանալ բանկային համակարգի բոլոր մարմինների գործունեությունը բանկային մատերիալ նորմերի մեջ ամրագրված պահանջների կիրառման գծով: Այդ պահանջները կարող են վերաբերել ոչ միայն բանկային պատասխանատվության ենթարկելուն, այլ տնտեսության տարբեր ճյուղերի բանկային սպասարկմանը՝ սկսած դրամական շրջանառության, վճարահաշվարկային գործունեության, արժեթղթերի բաց թողնման, վարկավորման, ընդհանուր արժույթի և արտարժույթի նկատմամբ վերահսկողության կազմակերպումից: Հետևաբար, չի կարելի համաձայնվել իրավաբանական գործունեության մեջ ժամանակին և այսօր արտահայտվող այն տեսակետի հետ, ըստ որի իրավական գործընթաց առկա է միայն այն դեպքում, երբ իրավական հարաբերություններում լուծվում են կողմերի միջև ծագած վեճերը, կամ երբ կիրառվում է պետական հարկադրանք[1]:

[1] Տե՛ս մանրամասն Í.Ã. Ñàëèùåâà, Àäìèíèñòðàòèâíûé ïðîöåññ â ÑÑÑÐ, Ì., 1964, էջ 13; Â.Ä.Ñîðîêèí, Àäìèíèñòðàòèâíî-ïðîöåññóàëüíîå ïðàâî, Ì., "Þðèäè÷åñêàÿ ëèòåðàòóðà", էջ 128; Á.Ì.Ëàçàðåâ, Àäìèíèñòðàòèâíàÿ îòâåòñòâåííîñòü, Ì., "Çíàíèå", 1976, էջ 47; Þ.À.Òèõîìèðîâ, Êóðñ àäìèíèñòðàòèâíîãî ïðàâà è ïðîöåññà, Ì., 1988, էջ 121:



Բանկային գործընթաց ընդհանրապես առկա է բանկային գործունեության և գործառույթների իրականացման ժամանակ: Գործընթաց բանկային գործունեության ձևն է, իսկ գործունեության բովանդակությունը վարույթն է:

Բանկային վարույթը Կենտրոնական բանկի կողմից օրենսդրությամբ նախատեսված համալիր գործողությունների կատարումն է, որն իրականացվում է բանկային իրավախախտումների համար պատժամիջոցների ենթարկելու կապակցությամբ և արտահայտվում է խախտման փաստը արձանագրելու, այն քննարկելու և լուծելու, նաև համապատասխան որոշում ընդունելու և կատարելու գործողություններով: Վերլուծությունների հիման վրա բանկային վարույթը կարելի է բնութագրել որպես բանկային օրենսդրությամբ կարգավորվող բանկային իրավախախտումների փաստերի արձանագրման, խախտումների վերաբերյալ նյութերի նախապատրաստման, Կենտրոնական բանկի խորհրդում քննարկման իրողություն: Բանկային պատժամիջոցների վերաբերյալ վարույթը ինքնանպատակ չէ: Նրա խնդիրն է երևան հանել իրավախախտումները, հայտնաբերել մեղավորներին ու ապահովել բանկային օրենսդրության ճիշտ կիրառումը այն հաշվով, որ յուրաքանչյուր իրավախախտող արդարացիորեն ենթարկվի բանկային պատժամիջոցների:

Այս վերլուծությունները ունեն ոչ միայն տեսական նշանակություն, որով նպաստում են բանկային իրավունքի, որպես ինքնուրույն ճյուղի ձևավորմանը և հիմնավորմանը, այլև գործնականում նպաստում են բանկային գործող օրենսդրությանը, նրա նյութական և գործընթացային իրավական նորմերի կատարելագործմանը, որոնց կիրառումը բանկային գործունեության ոլորտում ծագած իրավահարաբերությունները կարգավորելիս նպաստում է տնտեսավարման շուկայական հարաբերություններում բանկային հարաբերությունների սուբյեկտների իրավունքների և օրինական շահերի երաշխավորված պաշտպանության ճիշտ կազմակերպմանը և սոցիալական արդարության ու օրինականության ապահովմանը:

## §3. Բանկային օրենսդրության խախտումների համար Կենտրոնական բանկի կողմից կիրառվող ներգործության միջոցները և դրանց համակարգը

Հայ իրավագիտական մտքի պատմության մեջ ինչպես իրավունքի տեսության, այնպես էլ պետական հարկադրանքի և պատասխանատվության կիրառմամբ զբաղվող իրավունքի ճյուղերում (քրեական, վարչական, ուղղիչ աշխատանքային, ֆինանսական) երբևէ փորձ չի արվել լուսաբանել պետական, առավել ևս ֆինանսավարկային մարմինների իրավատնօրինության հիմնահարցերը: Հայ իրավագետները միշտ խուսափել են և շրջանցել լատիներեն «jurisdictio» իրավական կատեգորիան մեկնաբանելուց, որը հավասարապես վերաբերում է բոլոր այն պետական մարմիններին, որոնք իրենց՝ օրենքով վերապահված լիազորությունների շրջանակներում իրավունք ունեն լուծել «իրավական վեճեր» և կիրառել իրավական պատասխանատվության այս կամ այն տեսակը:

Լատիներեն լեզվում «jurisdictio»-ն լայն առումով ստուգաբանվում է որպես «դատավարություն»: Այն կազմված է “jus”, որը թարգմանվում է «իրավունք» և «dictio»-«խոսել»-թելադրել բառակապակցություններից, այսինքն «իրավունք բանեցնել»-կիրառել-թելադրել: Իրավական ընկալմամբ “jurisdictio“–ն օրենքով կամ այլ իրավական ակտերով համապատասխան պետական մարմնին վերապահված այն լիազորությունների համակցությունն է, որոնց ուժով իրավազոր մարմինները իրենց իրավասության շրջանակներում իրավունք ունեն քննարկելու և գնահատելու իրավական վեճը կամ իրավախախտումը, իրավախախտումների բնույթից ելնելով՝ իրավաբանական և ֆիզիկական անձանց նկատմամբ կիրառել համարժեք պատժամիջոցներ[1]:

Թվում է՝ պետական մարմինների իրավապահ գործունեության այս դրսևորումը հայերեն լեզվում ճիշտ կլինի արտահայ-

[1] Տե՛ս մանրամասն Þðèäè÷åñêèé ýíöèêëîïåäè÷åñêèé ñëîâàðü, Ì., “Ñîâåòñêàÿ ýíöèêëîïåäèÿ”, 1984, էջ 414.



տել «իրավատնօրինություն» տերմինով, քանի որ «jurisdictio» միայն դատական մարմինների գործունեության ձև չէ, այն հավասարապես վերաբերում է նաև պետական բոլոր մարմիններին: Իրավաբանական գրականության մեջ լայն ըմբռնմամբ օգտագործվող իրավատնօրինությունից ժամանակի ընթացքում տեսական խոր տարաձայնությունների հետևանքով առանձնացվել է «վարչական իրավատնօրինությունը», որպես պետական կառավարման մարմինների գործադիր-կարգադրիչ գործունեության իրավակիրառման ձև: Վարչական իրավատնօրինություն հասկացությունը կարելի է բնութագրել որպես գործադիր և այլ իրավազոր մարմինների իրավապահ գործունեության ձև, որն ուղղված է վարչական իրավախախտումների քննարկմանը և դրանց հետ կապված՝ օրենքով սահմանված ձևերով ու կարգով համապատասխան որոշումների ընդունմանը[1]:

Ֆինանսական և բանկային իրավունքի գիտության մեջ ուշադրության չի արժանացել ՀՀ Կենտրոնական բանկի վարչական և բանկային իրավատնօրինության հիմնահարցերը, որոնք շուկայական հարաբերությունների և հատկապես բանկային գործառնությունների իրականացման ընթացքում ապահովում են պետության և նրա ֆինանսական իշխանության գործադրմամբ երկրի սոցիալ- տնտեսական վերակառուցումը և առաջընթացը:

ԱՊՀ մի շարք պետությունների, այդ թվում ՀՀ-ի վարչական ու բանկային օրենսդրության ուսումնասիրությունները վկայում են, որ վարկային քաղաքականության ոլորտում, հատկապես «ՀՀ վարչական իրավախախտումների վերաբերյալ» օրենսգրքում Կենտրոնական բանկը, որպես վարչական հարկադրանք և պատասխանատվություն կիրառող մարմին (սուբյեկտ) չի հիշատակվում, մինչդեռ «ՀՀ Կենտրոնական բանկի» և «Բանկերի ու բանկային գործունեության մասին» 1996թ. հունիսի 30–ին ընդունած օրենքները Կենտրոնական բանկին անսահմանափակ լիազորու-

[1] Տե՛ս À.È. Øåðãèí, Àäìèíèñòðàòèâíàÿ þðèñäèêöèÿ, Ì., “Þðèäè÷åñêàÿ ëèòåðàòóðà”, էջ 45.

թյուններ են վերապահում օրենսդրության խախտումների համար բանկային պատժամիջոցներ կիրառելու:

ՀՀ Կենտրոնական բանկի իրավատնօրինության առարկան կազմող նյութական և գործընթացային գործունեության բոլոր ձևերը ունեն բնորոշ առանձնահատկություններ, որոնք բխում են բոլոր պետական մարմինների համակարգում ազգային բանակի երկակի կարգավիճակից, որը Կենտրոնական բանկին օրենքով վերապահված լիազորությունների շրջանակներում իրավունք է վերապահում ըստ անհրաժեշտության, հասարակական և պետական շահերի գերակայությունից ելնելով՝ հանդես գալ թե՛ որպես պետական իշխանություն և թե՛ տնտեսական գործունեության մարմին:

Որպես տնտեսական գործունեության մարմին նրա իրավական ռեժիմի առանձնահատկությունները ամրապնդված են «ՀՀ Կենտրոնական բանկի մասին» օրենքի առաջին հոդվածում, որտեղ ասված է, որ «ՀՀ Կենտրոնական բանկը պետական գործառույթներ իրականացնող իրավաբանական անձ է, որի միակ հիմնադիրը Հայաստանի Հանրապետությունն է»: ՀՀ Կենտրոնական բանկի, որպես իրավաբանական անձի կարգավիճակի կարևորությունը պայմանավորված է այն վիթխարի դերով, որ այսօր մեր պետության տնտեսական հիմքերի ամրապնդման և հզորացման գործում խաղում է բանկային գործունեությունը: Բանկային մարմինները Հայաստանի Հանրապետությունում ֆինանսական համակարգի առանցք են:

ՀՀ բանկերի և բանկային գործառնությունների խախտման տեսակները սահմանված են հիշյալ օրենքի 60-րդ հոդվածում, որտեղ սպառիչ թվարկված են օրենսդրության հետևյալ խախտումները՝

ա) բանկի կանոնադրական հիմնադրամը կամ ընդհանուր կապիտալի այլ տարրեր համալրվել են օրենքների և այլ իրավական ակտերի խախտումներով,



բ) խախտվել են սույն օրենքի, բանկային գործունեությունը կարգավորող այլ օրենքների, դրանց հիման վրա ընդունված այլ իրավական ակտերի պահանջները,

գ) բանկի, նրա մասնաճյուղի կանոնադրությունը փոփոխվել և լրացվել է օրենքների և այլ իրավական ակտերի խախտումներով,

դ) խախտվել են բանկի գործունեության տնտեսական հիմնական նորմատիվները կամ ըստ Կենտրոնական բանկի, բանկն իրականացրել է այնպիսի գործողություններ (գործունեություն), որոնք կարող են վտանգել ավանդատուների կամ բանկի այլ պարտատերերի շահերը,

ե) խախտվել են հաշվապահական հաշվառում վարելու կանոնները, ինչպես նաև ֆինանսական հաշվետվությունների ներկայացման և հրապարակման կարգն ու պայմանները, կամ այդ փաստաթղթերում ներկայացվել են կեղծ կամ անարժանահավատ տվյալներ,

զ) բանկը չի կատարել Կենտրոնական բանկի կողմից սույն օրենքով տրված հանձնարարականը.

է) բանկի ցուցանիշների ամփոփ գնահատականը ցածր է Կենտրոնական բանկի սահմանած՝ բանկերի ցուցանիշների ամփոփ գնահատականի չափից,

ը) բանկն օրենքներով և այլ իրավական ակտերով սահմանված կարգով չի կատարել բանկային ավանդների երաշխիքային հիմնադրամին երաշխիքային վճարների վճարում:

Կենտրոնական բանկը ֆինանսական և բանկային օրենսդրության պահանջների խախտումներ հայտնաբերելիս օրենքով սահմանված կարգով իրավունք ունի բանկերի նկատմամբ կիրառել ներգործության հետևյալ միջոցները (պատժամիջոցներ).

ա) նախազգուշացում և խախտումները վերացնելու հանձնարարական,

բ) տուգանք,

գ) բանկի ղեկավարներին զրկել որակավորման վկայականներից,

դ) լիցենզիայի ուժը ճանաչել կորցրած:

Բանկային օրենսդրությամբ սահմանված պատժամիջոցների այս համակարգը, նրա առանձին տեսակները կարող են կիրառվել ինչպես Կենտրոնական բանկի կողմից անմիջականորեն, այնպես էլ դատական կարգով:

Բանկային իրավունքի տեսությունը կշահի, եթե Կենտրոնական բանկի կողմից կիրառվող պատժամիջոցները, մեր կարծիքով, բաժանվել են երկու խմբի[1]. ա) բանկային օրենսդրության խախտման համար կիրառվող *հիմնական* և բ) *լրացուցիչ* պատժամիջոցների:

Կենտրոնական բանկի կողմից անմիջականորեն կիրառվող հիմնական պատժամիջոցների շարքում անհրաժեշտ է առանձնացնել հատկապես *լիցենզիայի* ուժը կորցրած ճանաչելը, որը որպես օրենսդրության խախտման համար կիրառվող ներգործության միջոց ըստ էության իր բնույթով ծանր պատժամիջոց է՝ իրավական բոլոր հետևանքներով: Այս պատժամիջոցի կիրառմամբ նախկին իրավաբանական անձը փաստորեն դադարում է հետագայում գոյություն ունենալուց, բանկը զրկվում է բանկային գործունեություն իրականացնելու իրավունքից՝ բացառությամբ օրենքով նախատեսված գործարքների, որոնք ուղղված են նրա ստանձնած պարտավորությունների կատարմանը, միջոցների իրացմանը և դրանց վերջնական բաշխմանը:

Իրավական հետևանքների տեսակետից որպես բանկային օրենսդրության խախտման համար կիրառվող *հիմնական պատժամիջոց* հանդես է գալիս «բանկերի սնանկ» ճանաչումը, որը կիրառվում է դատարանների ընդունած որոշումների հիման վրա:

Բանկերի սնանկության հիմնական պատճառը ժամանակին Կենտրոնական բանկի կողմից պատշաճ ֆինանսական վերահսկողության իրականացման բացակայությունն է, խնամակալությունը, բանկի տնտեսական նորմատիվների պահպանման նկատմամբ անփութությունը և մի շարք այլ սուբյեկտիվ ու օբյեկ-

[1] Տե՛ս մանրամասն Սուքիասյան Գ.Ա., Ֆինանսական իրավունք (դասագիրք), «Տնտեսագետ», Ե., 2001, էջ 322:



տիվ պատճառներ, որոնք բանկը կարող են հասցնել սնանկացման:

Կենտրոնական բանկի կողմից անմիջականորեն կիրառվող լրացուցիչ պատժամիջոցների թվին կարելի է դասել նախազգուշացումը և խախտումները վերացնելու հանձնարարականներ տալը, բանկի ղեկավարներին որակավորման վկայականից զրկելը՝ որպես կարգապահական տույժ, ինչպես նաև Կենտրոնական բանկի հայցով դատարանների որոշմամբ բանկերից գանձվող տուգանքը:

Բանկային օրենսդրությամբ որպես նվազագույն պատժամիջոց կիրառվում է նախազգուշացումը և խախտումները վերացնելու հանձնարարականը: Ըստ էության, նախազգուշացումը և խախտումները վերացնելու հանձնարարականներ տալը իրենց բնույթով օրենքի խախտման անթույլատրելիության մասին նախազգուշական միջոցներ են, որոնցից յուրաքանչյուրը ունի իր բովանդակությունը և կարող է գործադրվել որպես բանկային ինքնուրույն պատժատեսակ:

Բանկային օրենսդրության խախտման համար նախազգուշացումը և իրավախախտումը վերացնելու հանձնարարականը ըստ էության բանկային տույժի տեսակներ են, որոնք կիրառվում են բանկային օրենսդրությայն առավել փոքր խախտումներ կատարած այնպիսի իրավաբանական անձանց նկատմամբ, որոնք մինչև խախատումներ կատարելը վարկային և հաշվարկային իրավահարաբերություններում աչքի են ընկել կարգապահությամբ և դրականորեն են բնութագրվել:

Կենտրոնական բանկի կողմից կիրառվող նախազգուշացումը և խախտումները վերացնելու հանձնարարականը իրավական գնահատման առումով միշտ չէ, որ կարելի է համարել բանկային հարկադրանքի տեսակ, առավել ևս, որ օրենքով չեն կարգավորված նրա կիրառման ձևին վերաբերող հարցերը:

Գործնականում հաճախ կիրառվում է բանավոր նախազգուշացումը, որը բանկային տույժ չի կարելի համարել, քանի որ դիտվում է որպես բացատրական միջոցառում: Նախազգուշացու-

մը բանկային տույժ կարելի է համարել միայն այն դեպքում, երբ այն տրվում է գրավոր:

Նախազգուշացմամբ արձանագրվում է թույլ տրված խախտումը և իրավախախտողին բանկը տեղեկացնում է խախտման անթույլատրելիության մասին: Նախազգուշացումը, որպես բանկային տույժ, անբաժան է խախտումը վերացնելու հանձնարարականից: Կենտրոնական բանկը կիրառելով նախազգուշացումը՝ միաժամանակ սահմանում է իրավական նորմի խախտումները վերացնելու ժամկետները և գրավոր հանձնարարականով այն ուղարկում է բանկային մարմին: Հանձնարարականի կատարումը պարտադիր է նախազգուշացում ստացած բանկի համար:

Բանկային օրենսդրության խախտումների համար կիրառվող պատժամիջոցներից է *տուգանքը,* որը գանձվում է Կենտրոնական բանկի հայցով: Գումարը գանձվում է բանկի թղթակցային հաշվից՝ հօգուտ պետական բյուջեի: Բանկերի և բանկային գործունեության մասին օրենքի 63 -րդ հոդվածը սահմանում է, որ յուրաքանչյուր խախտման համար բանկից գանձվող տուգանքի չափը սահմանում է Կենտրոնական բանկը, և թվարկվում են խախտումների այնպիսի հիմքեր, ինչպիսիք են հաշվետվությունները ուշացնելը, անարժանահավատ տեղեկություններ տալը: Նման դեպքերի համար դատարանի կողմից նշանակվող տուգանքի չափերը կտրուկ ամրակայված են օրենքում:

Այսպես, հաշվետվություններն ուշացնելու համար կիրառվող տուգանքի չափը չի կարող գերազանցել Կենտրոնական բանկի կողմից սահմանված նվազագույն կանոնադրական հիմնադրամի հինգ տոկոսը:

Բանկային օրենսդրոթյան յուրաքանչյուր այլ խախտման համար բանկի նկատմամբ կիրառվող տուգանքի չափը չի կարող գերազանցել Կենտրոնական բանկի կողմից սահմանված նվազագույն կանոնադրական հիմնադրամի մեկ տոկոսը:

Տուգանք սահմանող նորմի կտրուկ բնույթից դժվար չէ ըմբռնել, որ դատարանը փաստորեն հայցադիմումը քննարկելիս տուգանք նշանակելու և առևտրային բանկերի շահերը պաշտ-



պանելու հարցում ազատ չէ: Գործի փաստական հանգամանքները քննարկելիս, որպես արդարադատության մարմին, ինքնուրույն չի կարող որոշել մեղքի չափը և կիրառել տուգանքը իբրև վարչական տույժի միջոց: Առավել ևս ինքնուրույնաբար չի կարող սահմանել տուգանքի չափերի փոփոխություն:

Իրավական գնահատման իմաստով դատարանների անօգուտ ծանրաբեռնվածությունը թեթևացնելու, բանկային հայցերի դատական քննարկումների տևական գործընթացները կրճատելու և ժամանակը խնայելու համար թվում է, անհրաժեշտ է վերանայել վարչական իրավախախտումների վերաբերյալ օրենսդրությունը. Կենտրոնական բանկը ճանաչել որպես վարչական տույժեր կիրառող մարմին և տույժերի ու տուգանքների օպերատիվ կիրառման արդյունավետությունը բարձրացնելու նպատակով խախտումների համար տույժերի կիրառման իրավունքը վերապահել Կենտրոնական բանկին:

Կենտրոնական բանկի կողմից օրենսդրության խախտումների համար կիրառվող պատժամիջոցների թվին է դասվում *բանկի ղեկավարների* որակավորման վկայականից զրկելը, որը իրականացվում է Կենտրոնական բանկի խորհրդի առաջարկությամբ: Բանկի ղեկավարը կամ ղեկավարները որակավորման վկայականից կարող են զրկվել օրենքները միտումնավոր կերպով խախտելու, անազնիվ ու անբարեխիղճ վերաբերմունք դրսևորելու, բանկի կամ բանկի հաճախորդների շահերին հակասող գործողություններ կատարելու և օրենքով նախատեսված այլ դեպքերում: Կենտրոնական բանկն այս սանկցիաները կիրառելիս ամեն մի անգամ հաշվի պետք է առնի կոնկրետ դեպքի առանձնահատկությունները:

## ՆԱԶԵԼԻ ԳԱՌՆԻԿԻ ՍՈՒՔԻԱՍՅԱՆԸ

Ծնվել է 1980թ. օգոստոսի 31-ին Երևան քաղաքում:

1986-1996թթ. սովորել է Երևանի Մ. Գորկու անվան միջնակարգ դպրոցում: 1996թ-ին ընդունվել է Երևանի պետական համալսարանի իրավաբանական ֆակուլտետը, 2001թ. գերազանցության դիպլոմով ավարտել և որպես դասախոս աշխատանքի է անցել Երևանի Ֆինանսաբորսայական համալսարանում:

2003թ. աշխատել է Եվրասիա համալսարանում որպես դասախոս, ապա իրավագիտության ամբիոնի վարիչ:

2004 թվականից ձևակերպվել է ԵՊՀ իրավաբանական ֆակուլտետի «Սահմանադրական և վարչական» իրավունքի ամբիոնի հայցորդ:

2007թ. փետրվար ամսին պաշտպանել է թեկնածուական թեզ «Բանկային գործունեության իրավական կարգավորումը Հայաստանի Հանրապետությունում» թեմայով և ստացել իրավաբանական գիտությունների թեկնածուի գիտական աստիճան:

2006թ-ից աշխատում է որպես Հայաստանի պետական տնտեսագիտական համալսարանի «Տնտեսական պատմության և իրավագիտության» ամբիոնի ասիստենտ:

Ն. Սուքիասյանը հինգ գիտական հոդվածների հեղինակ է: 2007թ. նրա համահեղինակությամբ հրատարակվել է «Ֆինանսական իրավունք» մեծածավալ ուսումնական ձեռնարկը: